# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

---

ԺԲ.

# ՍԵՒ ԾՈՎՈՒ
# ՌՈՒՍԱԿԱՆ ԵԶԵՐՔԸ




ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1895.

Tiurean, K.
Sew tsovu rusakan...

# ՍԵՒ ԾՈՎՈՒ

# ՌՈՒՍԱԿԱՆ ԵԶԵՐՔԸ

ԳՐԵՑ

Կ. ՏԻՒՐԵԱՆ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1895.

ՎԻԵՆՆԱԿԱՆ ՄԽԻԹԱՐԵԱՆ ՄԻԱԲԱՆՈՒԹԵԱՆ

**ԸՆԴՀԱՆՐԱԿԱՆ ԱԲԲԱՅ**

ԵՒ

ՍԱՂԱՄԻՆԱՑԻ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ

**ԱՐՀԻԱՊԱՏԻՒ ԳԵՐԱՊԱՏՃԱՌ**

# Հ. ԱՐՍԷՆ Վ. ԱՅՏՆԵԱՆԻ

ՔԱՀԱՆԱՅՈՒԹԵԱՆ ԵՒ ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ

ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԵԱՆ

ՅԻՍՆԱՄԵԱԿԻՆ

ԿԸՆՈՒԻՐԷ

*ԻՐ ԱՇԱԿԵՐՏ*

*ԱՇԽԱՏԱՍԻՐՈՂԸ*

# ՍԵՒ ԾՈՎՈՒ ՌՈՒՍԱԿԱՆ ԵԶԵՐՔԸ

## Ա.

## ԲԱԹՈՒՄ

Կէս գիշեր էր։ Ամսաթիւը Յունիսի 21ը թողած 22ի մէջ կը սկսէր թեւակոխել, եւ Великій Князь Алексѣй շոգենաւը դեռ հազիւ 2 ժամէն ճանապարհ պիտի ելլէր Բաթումէն դէպ ի Օդէսա, ուստի եւ ինձ շոգենաւ ուղեկցող քանի մի բարեկամներու յաջողութեան բարեմաղթութիւններն եւ հրաժեշտի ողջոյններն ընդունելէս վերջը նաւեզերքի նաւատարանին յեցած՝ անյագ կը դիտէի այն ակնահաճոյ տեսարանն որ կ՚ընծայէր Բաթումի նաւահանգիստն եւ քաղաքը։

Ծովեզերքի ամբողջ երկայնութեան վրայ եւ փողոցներուն մէջ լապտերներու լոյսը կը տարածուէր քաղաքին հարթ ու տափարակ մակերեւոյթին վրայ, որ բարձրաբերձ եւ կանաչազարդ բլուրներու կըռթնած, ծիծաղոտ դէմքով կ՚ընդունէր երկու կողմէն զինք պատող ծովուն խաղաղիկ ալիքներն, որոնց թոյլ ձայնը մերթ ընդ մերթ շոգեշարժի սուր սուլոցներու մէջ կատարելապէս անլսելի կը մնար։

Գիշերուան այս ախորժելի միայնութեան մէջ, երբ օրուան ահագին աղմուկներն ի սպառ դադարած էին, եւ քաղաքն հանգիստ կը ննջէր, — երկրորդ առաւօտ, շատ կանուխէն, դարձեալ իւր տենդոտ եւ բազմակողմանի գործունէութիւնն սկսելու համար, — բնականաբար իմ միտքս շատ դիւրութեամբ տեղի կու տար մտածութեանց անվերջանալի շարքին, որոնց սկիզբն ու ամբողջութիւնը կը կազմէր այն ահագին տարբերութիւնը դէպ

յառաջ, որ կատարած էր Բաթում Համեմատաբար կարճ ժամանակի մէջ: Կը յիշէի նախկին Բաթումն եւ այժմեանը: Ճիշդ 20 տարի յառաջ առաջին անգամ կու գայի Բաթում. եւ թէեւ այն ժամանակ դեռ եւ ոչ իսկ 10ամեայ մանուկ, սակայն որոշ կերպով մտացս մէջ տպաւորուած կը գտնեմ քաղաքին այն ժամանակի խեղճուկ դիրքն: 1547էն, երբ Տաճիկները զայն գրաւեցին Գուրիայի Վրացի իշխաններու ձեռքէն եւ հոս ամրութիւն կանգնեցին, մինչեւ 1878, երբ Ռուսաց ձեռքն անցաւ, չկարծեմ թէ զգալի փոփոխութիւն կրած լինի քաղաքը: Շուրջ 1850ին Բաթում դեռ եւս կատարելապէս աննշան գիւղ մի էր, ուր քանի մի տասնեակ խրճիթանման տներ կային, քանի մի նոյնանման ողորմելի խանութներով: Նաւահանգիստը կը յաճախէին միայն տաճկական մակոյկներ եւ առագաստաւոր նաւեր ծովու կողմէն եւ կոյեղ կոչուած (ըստ տեղացւոց, իսկ ըստ Ռուսաց կոյէ-կ = Каюкъ) նաւակներ Արդուինէն՝ Ճորոխ գետի միջոցաւ: 60ական թուականներուն էր միայն որ առաջին անգամ ռուսական Р. О. П. и Т.[1] ընկերութիւնը մտածեց իր նաւերն ուղարկել Բաթում եւ երթեւեկութիւն հաստատել, մէկ կողմէն Ռուսաստանի ու միւս կողմէն Կ. Պոլսոյ եւ Բաթումի մէջ: 1872ին համեմատաբար իր նախորդ վիճակին՝ թեթեւ կենդանութիւն մի կը տիրէր քաղաքին մէջ. խրճիթներու, տներու թիւը 500ի հասած էր եւ նա՝ իբրեւ ծովեզերեայ գլխաւոր կէտ ամբողջ **Լիվանայէ** (Արդուինի) **Լոզխոփանէ** եւ **Աջարայէ**, փոքրիկ կարեւորութիւն մ'էր սկսած առնել այն գաւառներու համար, թէեւ դարձեալ խեղճուկ, աննշան եւ աւազակաբարոյ բնակիչներով լի: Բաթում կը համարուէր Լազիստանի **սանճաքի** (سنجاق) կենդրոն, ուր կը նստէր **Մէ-Րէ-ոտրրբէքը**. իսկ Ռուսաց առեւտրական շահերը

[1] Русское Общество Пароходства и Торговли (Ռուսական ընկերութիւն նաւագնացութեան եւ առեւտրոյ):

պաշտպանելու համար ռուսական հիւպատոս էր նշանակուած։ Գլխաւոր կենդանութիւն տուողն՝ Արդուինի, Արդանուչի եւ Կարսի հայ վաճառականներն էին, որոնք Բաթումի եւ Կարսի նահանգաց բովանդակ առեւտուրն իրենց ձեռաց մէջ կեդրոնացուցած, անընդհատ անցուդարձ կ՚ընէին Բաթումէն Կ. Պոլիս եւ ետ, այստեղի միջոցաւ կը փոխադրէին դէպ ի երկրին ներսերը Կ. Պոլսէն մեծ քանակութեամբ իրենց բերած ապրանքը։ Ասիական փոքրիկ եւ անկարգ քաղաքի մ՚ամէն ծանօթ յատկութիւններն ունէր այն ժամանակ Բաթում. տեղւոյն հաստատուն բնակիչներն՝ Լազերն ու Աջարցիք էին, որոնց նեղ, աղտոտ եւ փայտաշէն փոքրիկ խանութներու յիշատակն, ուր տեղական բերքեր կը ծախուէին կամ քանի մի հայ արուեստաւորներ, ինչպէս կօշկակար, դերձակ եւայլն կը նստէին, — դեռ մինչեւ վերջին տարիներս չէր կորսուած. եւ այն խանութներու տեղը կը կոչուէր սովորաբար Աջարա չարշըսը, որ այժմ արդէն անյայտացած կամ կատարելապէս կերպարանափոխ եղած է։

1877ի պատերազմին ժամանակ Բաթումի Օսմանեան ցամաքային բանակն Օսմանեան նաւատորմղի ներկայութեամբ ոյժ առած ու անկէ հովանաւորուած՝ մեծ ընդդիմութիւն ցոյց տուած է Ռուսաց յարձակումներուն եւ երբ Բերլինի կոնգրէսը 1878ի Մայիս 15ին վերջնականապէս կնքեց խաղաղութիւնը, այն ժամանակ միայն Օսմանեան հրամանատար Դէրվիշ փաշա՝ Օգոստոսի 25ին քաղաքը յանձնեց Ռուսական վարչութեան՝ յանձին իշխ. Սվիատոպոլկ-Միրսկիի՝ որ օգնական էր կովկասեան փոխարքային։ Եւ այն 461 քառակուսի ռուսական մղոն երկրի մէջ, որ Բերլինի դաշնադրութիւնը Տաճկաստանէն առաւ եւ Ռուսաստանին միացուց, Բաթումն անշուշտ ամէնէն կարեւոր քաղաքն է։ 1878ի վերջերն էր երբ երկրորդ անգամ տեսայ ես Բաթումը՝ Կ. Պոլսէն վերադարձիս։ Քա-

ղաքը պատերազմի արհաւիրքներէն կատարելապէս ազատուած՝ նոր խաղաղութեան մէջ այժմ արդէն տենդային գործունէութիւնն առած էր. տներ եւ խանութներ միմեանց ետեւէ կը շինուէին, տեղական վաճառականութիւնը տասնապատիկ ընդարձակութիւն էր առեր, եւ ամէն կողմէն հոս թափուող զանազան երկրացիներն՝ Բաթումի գործերն եւ հողերն իրար ձեռքէ կը խլէին: Եւ այս ամենայն թէեւ դեռ շատ անկանոն, անկարգ եւ խառն ի խուռն վիճակի մէջ, բայց քաղաքի ապագային համար հաստատ հիմ կը ներկայացնէին: Այս վիճակը մեծ մղում էր առած մանաւանդ այն առթիւ, որ Բաթում՝ Բեռլինի դաշնադրութեան համեմատ ազատ նաւահանգիստ հռչակուած էր (port-franc), եւ ըստ այսմ քաղաքը կատարելապէս բաց էր եւրոպական ամէն ճիւղի արդիւնաբերութեանց առջեւ: Մէկ կողմէն այս հանգամանքն եւ միւս կողմէն երկաթուղւոյ ճիւղի կառուցումն, որով Բաթում կը կապուէր Տփղիսի եւ Բաքուի, այս նաւթային թագաւորութեան հետ, շատ ընդարձակ չափեր առնել տուին քաղաքին, որ ոչ թէ ամէն տարի այլ ամէն ամիս, ամէն օր զգալապէս յառաջ կը դիմէր: 1883ին Բաթում միացաւ երկաթեայ ճանապարհով Տփղիսին, եւ Անդրկաւկասեան երկաթուղին, որ մինչեւ այն ատեն Փոթի-Տփղիսական կը կոչուէր, այնուհետեւ Բաթում-Բաքուական եղաւ, գլուխ ունենալով Բաթումը: 1885էն Բաթում աղատ նաւահանգիստ լինելէ դադարեցաւ. բայց այս պարագայն մասամբ միայն ազդեցութիւն ունեցաւ նորա վերայ, ինկատի ունենալով կարեւոր ասպարէզն որ կը բանար քաղաքին՝ Բաքուի քարիւղի արտահանութիւնը: Բաթում էր, որ կ'ուղարկէր Եւրոպա, Ասիա եւ Ափրիկէի զանազան կողմերը Կովկասեան մեծագոյն տեղական արդիւնաբերութեան նիւթը, քարիւղը (pétrole) եւ շնորհիւ այս հանգամանաց էր ինկապէս, որ քաղաքը

կը հարստանար եւ կը յառաջադիմէր։ Շուեդացի Լուդվիգ Նոբէլէն վերջն — որ այս կարեւոր առեւտրի բուն հիմնադիրը կարող է համարուիլ, եւ որ առաջին անգամ՝ 1881ին՝ սկսաւ քարիւղ ուղարկել Եւրոպա, յատկապէս Գերմանիա, — Բաքուի մէջ գործարանատէրերն եւ Կաւկասեան քարիւղն սկսաւ ամէն տեղ մրցիլ եւ նոյն իսկ ասպարեզէն քշել Ամերիկեանը։ Այժմ, ինչպէս եւ վերջին տարիները, Բաթումէ 40էն մինչեւ 50 միլիոն պուդ քարիւղ կ՚ուղարկէ Եւրոպա, Ասիա եւ Ափրիկէ, նաեւ ծովու բոլոր եզերքները։ Բաքուէն, առանձնապէս շինուած երկաթուղային կառքերով բերուած քարիւղն, այստեղի գործարաններու մէջ կը լեցուին թիթեղեայ կրկին արկղիկներու մէջ, որոնք ապա Ռումանիայի անտառներու հայթայթած փայտեայ սնտուկներու մէջ դրուելով կ՚ուղարկուին աշխարհիս ամէն կողմը։ Բաթումին գլխաւորապէս կենդանութիւն տուողն եւ նորա յառաջադիմութեան պատճառներէն առաջինը քարիւղի արդիւնաբերութեան մէջ նորա կատարած միջնորդի կարեւոր դերն է։ Մօտ 20 փոքր եւ մեծ գործարանատէրեր 90ի չափ նաւթապահեստներու (réservoir) մէջ կը պահեն Բաքուէն իրենց ստացած քարիւղը։ Եւ բաց ի սնտուկներէ նաեւ յատուկ տակառներու մէջ, եւ կամ մասնաւորապէս պատրաստուած նաւթակիր շոգենաւերով քարիւղը կը տարուի ամէն կողմ, բայց ամէնէն աւելի Անգլիա եւ իր Ասիական գաղթականութիւններն։ Անգլիայէն ետքը Տաճկաստանն է՝ իր կիսանկախ նահանգներովն որ ամէնէն առատ կը սպառէ Կաւկասեան քարիւղը։

Բաց ի զտուած քարիւղէն Բաթումի միջոցաւ կ՚անցնին նոյնպէս մեծ քանակութեամբ նաւթային ուրիշ զանազան արդիւնքներ, ինչպէս Հում նաւթ (գլխաւորապէս Աւստրիա) մեքենական եւ այլ եղեր (գլխաւորապէս Բելգիա եւ Գաղղիա) եւ նաւթային մնացորդ (résidu) (Անգլիա եւ Բելգիա)։

Հայերն ինչպէս Բաքու նոյնպէս եւ այստեղ ի սկզբան անտարբեր գտնուեցան քարիւղի արտահանութեան եւ շատացան միայն կամ սկզբնական նաւթարդիւնաբերներ եւ կամ արտահանողներու միջնորդ հանդիսանալով։ Բայց երբ օտարներն, յատկապէս Եւրոպացիք, ընդարձակ գործերու ձեռնամուխ եղան եւ Կաւկասեան քարիւղը նորանոր հրապարակներ սկսաւ գրաւել, այն ժամանակ միայն զգաստացան եւ իրենք ալ առանձինն ոյժերով ուշադրութիւն դարձընել սկսան՝ ոչ միայն արդիւնաբերութեան տեղական ճիւղին այլեւ արտահանութեան։

Այժմ 3 հայ գործարանատէրեր կան այստեղ։ Մանթաշեան, Ծովլիանեան եւ Խաչատրեան։ Պ. Աղեքսանդր Մանթաշեան, Կաւկասիոյ մեծագոյն վաճառականը, տէր է երկու գործարանի (մին իր կանգնածն եւ միւսը նախկին Մութաֆեան-Մելքոնեանցի)։ Պ. Մանթաշեան՝ Ռօթշիլդէ եւ Նօբէլ Եղբարց անուանի տնէն յետոյ, այստեղ մեծագոյն գործն ունի այս ասպարէզի վրայ։

4 եկեղեցի կայ Բաթում. Ռուսաց, Յունաց, Հայոց եւ Հայ-կաթօլիկեայց։ Հայոց եկեղեցին ամէնէն խղճալին է։ Դրուած է նոր քարաշէն եկեղեցւոյ հիմը, բայց տարիներէ ի վեր կը մնայ կիսատ, շնորհիւ քահանայից եւ ժողովրդեան անտարբերութեան։ Իսկ Ռուսերն այժմ փառաւոր եւ հսկայ մայր եկեղեցի կը շինեն ծովեզերքի մօտ, որուն հիմնադրութեան հանդէսը կատարուած է 1888ին ներկայութեամբ նոյն ինքն Աղեքսանդր Գ. կայսեր եւ ամբողջ կայսերական գերդաստանի։

Բաթում դպրոցներու կողմէն դեռ այնքան շատ յառաջացած չէ։ Այստեղ կան արքունի երեք դպրոց, այսինքն արական սեռի տղայոց համար մէկ չորեքդասեան քաղաքային եւ մէկ ալ արուեստավարժական, իսկ իգականի համար ալ մէկ չորեք-

դասեան ուսումնարան (Маринское училище)։ Յոյներն, Հայերն եւ Հայ-կաթոլիկներն եւս ունին իրենց ծխական երկսեռ դպրոցներն, որոնց մէջ ամէնէն խղճալին վերջիններուն է։ Հայք մինչեւ հիմայ չունէին յարմար սեպհական շինութիւն դպրոցի համար, բայց այս տարի Կովկասի Հայոց Բարեգ. Ընկեր. Բաթումի ճիւղի ջանքովն եւ արդիւնքովը գեղեցիկ քարաշէն ուսումնարան մի կը կառուցուի, որ հաւանականաբար վերջացած կը լինի մինչեւ այս տողերուս տպուիլը։ Կաթոլիկ Հայերը նոյնպէս մտադիր են իրենց համար կանոնաւոր ծխական ուսումնարան ունենալ եւ պահել, բայց մինչեւ այն ժամանակ իրենց տղաք միւս Հայոց դպրոցները կը յաճախեն։ Վրացիք եւս ունին յատուկ իրենցը։ Վրացիներու մէջ գրագիտութիւն տարածելու նպատակով Տփղիս կազմուած ընկերութիւնը այստեղ դպրոց մի բացած է, որու բուն նպատակն է աղքատ տղաք եւ մանաւանդ Վրացի մահմետականաց զաւակները կրթել։ որն անշուշտ մեծապէս գովելի է, եւ սկսած է արդէն արդիւնք ցոյց տալ։[1]

Ամուր դիրք ունի դեռ եւս մահմետականութիւնն այս տեղ։ Բաթումի մէջ 3 մզկիթ կայ, որոնց գլխաւորն Աղէզիյէ Ջամիսի կը կոչուի։ Այս մզկիթին վաքֆ (وقف) հողը քաղաքին լաւագոյն մասը կը կազմէր Տաճկաց տիրապետութեան ժա-

---

[1] Վրաց այս միակ արդիւնաւոր ընկերութիւնն եւ քանի մի ազգասէր Վրացիք, որոնք առհասարակ այնքան հազուագիւտ են իրենց մէջ, մեծ ջանքեր ի գործ կը դնեն մահմետական կրօն դաւանող Վրացիներն կրթելու դաստիարակելու համար։ Եւ որովհետեւ այս վերջիններն իրենց կրօնին եւ սովորութեանց սաստիկ ջերմ կերպով են յարած, ուստի եւ այս պարագայն ալ յօգուտ նոցա կըրթութեան գործածելով, յիշեալ ազգասէրներն այժմ մահմետական կրօնի վերաբերեալ զանազան գրեանք վրացերէն թարգմանելով կը տարածեն անոնց մէջ, որ իրօք յաջողութիւն գտած է. եւ Ճորոխի շրջակայքն եւ Աջարայք գաւառին մէջ բնակող մահմետական Վրացիք այն գրեանց վրայ վրացերէն ընթերցանութիւն կը սորվին։

մանակ, եւ Ռուսաց գալէն վերջն ալ դեռ նոյն իրաւունքը կը շարունակուի կամ գէթ չի մերժուիր. եւ այս պատճառաւ ալ ծանրակշիռ հողային խնդիրներ ծագած են, որոնց լուծումը ներկայացուած է Քութայիսի, Տփղիսի եւ նոյն իսկ Պետրբուրգի բարձրագոյն իշխանութեանց. բայց որոշ վախճան չէ ունեցած, եւ քաղաքին այս Աղինձէ կոչուած հողերուն վրայ մեծ խնդիր կայ իրաւանց: Առհասարակ, այս երկու նոր գրաւուած՝ Բաթումի եւ Կարսի նահանգաց մէջ կալուածական իրաւունքն շատ անորոշ վիճակի մէջ է: Որպէս զի կարելի լինի ճշդիւ սահմանել թէ ի՞նչ ոյժ ունին ժողովրդեան ձեռքն եղած Օսմանեան կալուածատիրական թղթերն, Թափու, Քօչան եւ այլն, եւ թէ ի՞նչ կերպով պէտք է ըմբռնել Էրազիէ Էմիրիյէ եւ Էրազիէ Միրիյէ բառերն, որ գրուած են նոյն թղթերու վրայ, Ռուսական կառավարութիւնը քանի մի տարի յառաջ մասնաւորապէս Կ. Պոլիս ուղարկեց Տփղիսի "Հողային գործոց Յանձնաժողովի„ նախագահ եւ ծանօթ հնագէտ վրացի Պ. Դ. Բակրաջէն որ խնդիրը տեղն ի տեղը ուսումնասիրէ. եւ վերջերս ալ Բարձրագոյն Դռնէն ստացաւ խնդրի առարկայ դարձած Օսմանեան հողատիրական պաշտօնագրերու պատճէնները՝ բուն մատեաններէն քաղուած: Այժմ ուրեմն յոյս կայ թէ այս կարեւոր գործի քննութիւնը հաստատ շաւղի մէջ է մտած, եւ պիտի գտնէ իր լուծումը. թէ քաղաքի եւ թէ գիւղօրէից համար իրաւանց այս անորոշութիւնը փոքր կորուստի պատճառ չէ, ուստի ամէն կողմէն բաղձանք կը յայտնուի նոյնն օր յառաջ պարզուած եւ վճռուած տեսնելու:

Բաթումի կլիման թէ՛ Օսմանեան տիրապետութեան ժամանակ, երբ շրջապատուած էր ըրինձի արտերով, եւ թէ՛ անկէ ետեւ մինչեւ վերջին տարիներս, չափազանց վատառողջ էր շնորհիւ թէ՛ իր մէջի եւ թէ՛ իրեն կից ճահիճներուն: Այժմ

երբ ոչ բրինձի արտ կայ այլ եւս եւ ոչ ալ ճահիճներ, օդն արդէն զգալի փոփոխութիւն կրած է դէպի լաւը։ Բաթումի ջերմը յայտնի էր բոլոր շրջականերուն։ Իսկ հիմայ այս անառողջութիւնը մեծաւ մասամբ հարթուած է, մանաւանդ թէ Կաւկասիոյ բնակչաց համար ծովային լողարանի համբաւ ունի, եւ կուրծքի հիւանդութիւն ունեցողներուն բժիշկներու կողմէն կը յանձնարարուի Բաթում բնակիլ։ Ձմեռը սաստիկ չէ եւ Յունուար ու Փետրուար ամիսներու մէջ պայծառ եւ նոյն իսկ համեմատաբար տաք արեւը հազուագիւտ երեւոյթ չէ Բաթումի համար։ Բաթումէն մինչեւ Սուխում ամբողջ ծովեզերքի վրայ գրեթէ նոյն օդաբաժինը կը տիրէ. հաւասարաջերմը (isotherme) ձմեռուան ամենէն խիստ ժամանակ կը հասնի մինչեւ 6° զրոյէն վար։

Շատ հետաքըրքըրական տեսարան կ'ընծայէ Բաթումի տեղական ազգաբնակութիւնն իւր այլացեղ եւ այլալեզու տարերց միաւորութեամբ։ Շնորհիւ իր գրեթէ միջազգային դիրքին եւ առեւտրական ընդարձակ ասպարէզին՝ Բաթում ամէն կողմէ եկած բնակիչներ ունի իւր մէջ. 42 ցեղի վերաբերող ժողովուրդ կայ հոս, 48 լեզու կը խօսուի Բաթումի մէջ։

Երբ Ռուսերն քաղաքը գրաւեցին, այսինքն 1878ին, այն ժամանակ բնակչաց ընդհանուր թիւն այստեղ 1000 հոգին չէր անցներ, իսկ այժմ 15 տարուան մէջ, 15 անգամ աւելցած է։ 1890 Յունիս 17ին կատարուած քաղաքային միօրեայ ազգահամարին համեմատ՝ Բաթում կը բնակին 18123 հոգի, որոնց մէջ են նաեւ ցամաքային եւ ծովային զօրքն, որոնց թիւը կը հասնի 3500ի։ Հանելով թէ այս գումարն եւ թէ բանտարկեալներն (112 հոգի) եւայլն, որոնք յանուանէ չեն մտած վիճակագրութեան մէջ եւ իսկապէս բնակիչ չեն կրնար համարուիլ, ժողովրդեան կամ

քուն բնակչաց ընդհանուր թիւը կը լինի 14.674 հոգի, որոնք ըստ ազգութեան կը բաժնուին՝

| | | | | |
|---|---|---|---|---|
| Վրացի | 3526 | այսինքն | 23·48 | % |
| Հայ | 3091 | " | 20·92 | " |
| Ռուս | 2635 | " | 17·95 | " |
| Յոյն | 1995 | " | 13·59 | " |
| Թուրք | 1137 | " | 7·84 | " |
| Հրեայ | 839 | " | 5·71 | " |
| Միւս ցեղեր | 1451 | " | 10·51 | " |

Հայերն ամէն երկրէն ունին իրենց ներկայացուցիչներն այստեղ, եւ վերոյիշեալ 3091ի հոգւոյ պատկառելի մի մասը բանուոր դասակարգը կը կազմէ, որ հաւաքուած է հոս, թէ տաճկական եւ թէ այլ հայաբնակ գաւառներէ։ Այս հանգամանաց շնորհիւ է որ արանց թիւն զգալապէս աւելի է կանանց թուէն։ Այդ 3091ին 2446ը այր են եւ 645ը միայն կին։

Իսկ Եւրոպացիք այստեղ մօտ 500 հոգի են, մեծ մասը Գերմանացիք, յետոյ կու գան Իտալացիք եւ Գաղղիացիք։

Խօսելով Բաթումի բնակիչներուն վրայ չեմ կարող մէկ կէտ չյիշել, որ արձագանգ է տուած նաեւ եւրոպական լրագիրներուն։ Ինչպէս վերեւ Հայոց վրայ տուած տեղեկութենէս ալ կ'երեւայ, այստեղ արական սեռի բնակչաց թիւն իգական սեռի բնակիչներէ մեծ առաւելութիւն ունի. այսինքն՝ 10.736 այր եւ 3938 կին. որով 100 բնակիչներէ 73ը այր մարդ է, եւ 27ը՝ կին, կամ թէ 100 մարդու վրայ 36 կին միայն կը հասնի։ (Տփղիսի մէջ 100 մարդուն 75 կը հասնի կանանց թիւը։) Այս հանգամանքի գլխաւոր պատճառն այն է որ այստեղ թէ պաշտօնատարներու եւ թէ մանաւանդ բանուորներու մեծագոյն մասն ամուրի են կամ առանց ընտանիքի են հոս եկած։ Ամուրիներու թիւը՝ որոնք 20էն մինչեւ 30 տարիք ունին՝ 3000ը

կ'անցնի։ Բարեբախտաբար ընտանեկան կենաց պակասութիւնն ամէնէն քիչն է Հայոց մէջ։ Այս մասին առաջին տեղին կը բռնեն Թուրքերն, յետոյ Վրացիք, եւ ապա Հայերը։ Վասն զի Թուրքաց մեծագոյն մասը բանուոր են, իսկ Վրաց մէջ ալ ծառաները մեծ խումբ կը կազմեն։ Իսկ ամէնէն յաջող պայմանաց մէջ կը գտնուին Ռուսները, վասն զի առնք մեծաւ մասամբ պաշտօնատարներ լինելով, իրենց ընտանիքն ալ բերած են իրենց հետ։

Բաթում հետաքրքրական տեսարան կ'ընծայէ նաեւ իր կրօններու բազմութեամբը։ Տիրող գլխաւոր կրօններն են՝ նախ՝ օրթոտօքսներն կամ գրէգօրեաններն (յունադաւան), որ գրեթէ քաղաքին կէսը կը բռնեն, ունենալով իրենց մէջ Ռուսերն, Վրացիները, Յոյներն եւայլն։ Յունադաւաններէն վերջ կու գան Հայերն, երրորդն են մահմետականները Թուրք եւ Պարսիկ, չորրորդ՝ կաթոլիկներն հայ եւ հռոմէական եւ ապա Հրեայք եւ այլն։ Հայք ըստ կրօնական դաւանութեան կը բաժնուին՝ Էջմիածնական 2259, կաթոլիկ 508, կան նաեւ քանի մի հոգի Բողոքականներ։

Այստեղ կաթողիկեայց ընդհանուր գումարն է 1659, որոնց 508ը հայ եւ 1151ը այլազգի։ Սակայն մենք իրաւունք ունինք կասկածելու թէ այս հաշիւը ճիշդ չէ. վասն զի իբրեւ հռոմէական կաթոլիկ արձանագրուած են նաեւ այնպիսիք որոնց նախնիքը հայ էին, եւ ապա իրենք զիրենք հռչակեցին վրացի-կաթոլիկ. եւ որովհետեւ Տէրութիւնը չ'ընդունիր վրացի-կաթոլիկաց գոյութիւնն, ուստի եւ այս կարգի անձինք՝ à tout prix հայ չհամարուելու համար, իրենք զիրենք ազգաւ վրացի եւ դաւանութեամբ ոչ թէ հայ-կաթոլիկ՝ այլ հռոմէական կամ լատին-կաթոլիկ են արձանագրել տուած։ Ուստի եւ եթէ ազգը չշահուէր ոչ այնքան թուական ցամաք գումարի առաւելութենէ՝ որքան ազգային զգացմունքէ, — անշուշտ կարող կը լինէինք

վերոյիշեալ 1151 հռոմէականներէն գոնէ 500ը հանել եւ աւելցնել հայ-կաթոլիկներու գումարի վրայ, որով եւ Վրաց ընդհանուր 3526 թուէն ալ 500ը հանելով Հայոց 3091 թուոյն կցել։

Բաթում՝ իբրեւ Կովկասիոյ նշանաւոր քաղաքներէն մին, մանաւանդ թէ կարեւորագոյն արտահանող նաւահանգիստը՝ միւս գլխաւոր քաղաքաց նման ինքն եւս այժմ ունի ինքնավարութիւն (autonomie), որ կը սկսի 1888 Հոկտեմբերի 1էն։ Կայսերական Հրամանագրի համեմատ՝ Բաթումի քաղաքագլուխը առաջին շրջանի այսինքն 4 տարուայ համար ոչ թէ ինքը դուման (дума) այսինքն քաղաքային խրատատուներու ժողովը այլ Կովկասեան բարձրագոյն կառավարութիւնը պիտի ընտրէր. ըստ այսմ Բաթումի առաջին քաղաքագլուխը Նախկին կառավարչապետ իշխ. Դոնդուկով-Կորսակովն է ընտրած, որ Ռուս պաշտօնակալ մի է (Կ. Դ. Գավրոնսկի)։ Բայց այս շրջանն արդէն վերջացած լինելով նոր քաղաքագլուխն այլ եւս ոչ թէ կառավարութեան այլ քաղաքային ժողովի կողմէն պիտի ընտրուի։ Այժմ այս ժողովը 36 խրատատու անդամ ունի, որոնք 8 ազգութեան կը վերաբերին. անդամոց մէջ ամէնէն բազմաթիւը Հայերն են՝ 10 հատ, ասոնցմէ վերջը կու գան Ռուսները, յետոյ Վրացիք եւ ապա Տաճիկները (4 հոգի)։ Քաղաքային վարչութիւնը բաց ի քաղաքագլխէ, 2 անդամ ունի, եւ այս անդամներն կ'ընտրուին խրատատուներու ժողովէն։ Այս անդամներէն մէկը Ռուս է եւ միւսն Հայ։ Վրացիք մեծ ջանքեր ի գործ դրին որ Հայու տեղ Վրացի ընտրուի, բայց չկրցան յաջողցնել։ Քաղաքն իր տարեկան մուտքովն ալ հետզհետէ կը ծաղկի. իր ընդհանուր մուտքն այժմ տարեկան 250.000 րուբլին կ'անցնի. այս մուտքի գլխաւոր աղբիւրը Բաթումի նաւահանգիստը մտնող եւ ելլող ապրանքէն առնուած տուրքն է, որ կը հասնի տարեկան 120.000 րուբլիի։

Իբրեւ նաւահանգիստ՝ Բաթում ունի մեծ տեղական առաւելութիւններ որոնց վրայ աւելցած է արուեստականը։ Որով եւ Սեւ ծովու Կովկասեան եզերքի ամբողջ տարածութեան վրայ, որ մօտաւորապէս 650 քիլոմէտր է, Տամանիէն (Тамани) մինչեւ Ճորոխ գետի բերանը, Բաթում ծովային քաղաքն է դարձած. իբր նաւահանգիստ Սեւ ծովու Ռուսական եզերքի մէջ ամենէն աւելի յարմարութիւններ ունի։ Նախկին բնական ծովեզերքն արդէն մեծաւ մասամբ քարափի է փոխուած եւ երկայն ու կիսաբոլոր քարաշէն հաստատուն նաւամատոյցն որ կը յառաջանայ ծովի մէջ, մեծ դիւրութիւններ կու տայ նաւերու բարձման։ Նաւահանգըստի այս շինութիւնն սկսած է 1885ին եւ վերջին ժամանակներն մեծ եռանդով յառաջ կը տարուի, եւ այժմ կը մօտենայ արդէն իր վախճանին։ Գիշեր ժամանակ կիսաբոլոր նաւամատոյցին վրայի ծովային լապտերն աղօտ լուսով կը լուսաւորէ այս հիմնաւոր եւ գեղեցիկ շինութիւնը, որ քարիւղ բառնալու համար նաւահանգիստ մտած ամէն կարգի եւ բազմաթիւ առագաստաւոր եւ շոգեշարժ նաւերու համար ամէն յարմարութիւններ եւս ունի իր վրայ։ Նաւամատոյցի ամբողջ երկարութիւնը ծածկուած է երկաթուղւով եւ հեռագրով կապուած քաղաքին եւ գործարաններուն, իսկ այս վերջիններն ալ հեռախօսով (téléphone) են կապուած քաղաքին։ Բուն նաւթային նաւահանգիստը, ուր նաւերը կը մօտենան նաւամատոյցին եւ բեռ կ՚առնեն, 24 ոտք խորութեան վրայ 45.000 քառակուսի սաժէն (մօտ 400.000$^2$ մէտր) տարածութիւն ունի, ուր 20 մեծ նաւեր կարող են ազատօրէն մօտենալ եւ բեռցուիլ։ Բայց այնչափով չբաւականանալով՝ նաւահանգստի խորութիւնը պիտի հասցուի մինչեւ 26 ոտքի ու տարածութիւնն ալ պիտի աւելնայ, որպէս զի 30ի չափ նաւեր կարողանան անարգել մուտք եւ գործ ունենալ այնտեղ։

Նաւթը՝ ինչպէս յիշեցինք վերեւ՝ իւր զանազան արդիւնքներովն — ինչպէս քարիւղ, մեքենայի իւղ եւայլն. — Թէեւ գլխաւոր արտահանութեան առարկայն է, բայց բարեբախտաբար միակը չէ։ Իբրեւ արտահանութեան առարկաներ աննշան տեղ չեն գրաւեր՝ Կովկասեան ցորենն եւ այլ հատիկները, Երեւանի բամբակն, Արդուինի թարմ պտուղներն, Ճորոխի հանքերու արդիւնքն եւ Կովկասեան ու Պարսկական զանազան ապրանք, փայտեղէն (ընկուզենի թէ բուն եւ թէ կոճղ (loupes) տօսախ եւայլն,) բուրդ, մետաքս, բրինձ եւայլն։ Իսկ ներմուծուած ապրանքներն են՝ թիթեղ եւ տախտակ քարիւղի սնտուկներու համար, մեքենայներ, զանազան Եւրոպական եւ Ռուսական գործուածք, երկաթ, անագ, շինուածոյ նիւթեր եւայլն։ Ամբողջ Կովկասի եւ մասամբ Անդրկասպեան նահանգի համար գրեթէ ամբողջ ներածութիւնը Բաթումի միջոցով կը կատարուի։ Ամբողջ ծովեզերքի վրայ առաւօտէ մինչեւ երեկոյ մրջնանման գործունէութիւն կը տիրէ, որու մասնակից են թէ Եւրոպացիք, թէ Ռուսերն եւ թէ տեղացի ազգեր։

Բաթում այս վերջին ժամանակ, տարին 40 միլիոն ֆրանքէ աւելի արտահանութիւն (exportation) եւ մօտ 15 միլիոն ֆրանքի ներածութիւն (importation) ունի, որ դեռ նոր ծաղկող քաղաքի համար ահագին յառաջադիմութիւն է։ Բաթումի նաւահանգստի մէջ տարին մօտ 1500 նաւ կը մտնէ, որոնց մեծ մասն Եւրոպական են։ Յիշենք այստեղ, որ այս ամէն ազգի նաւերու մէջ, հայ նաւատէրերու նաւեր եւ շոգենաւեր ալ կը յաճախեն, այսինքն Տփղիսի վաճառական Պ. Աղ. Մանթաշեանի եւ Կ. Պոլսոյ Ունճեան եւ Եսայեան ընկերութեան շոգենաւերն, որոնց մէջ Պ. Մանթաշեանի շոգենաւերն՝ "Գառն Աստուծոյ" նշանի հետ Անգղիական դրօշակ կը կրեն, իսկ երկրորդներն Օսմանեան դրօշի տակ են։

Բայց ի երկու գլխաւոր հաղորդակցութեան միջոցներէն, այսինքն ծովէ եւ երկաթուղիէ, Բաթում ցամաքային ճանապարհներով ալ միացած է մի կողմէ Արդուինի եւ Արտահանի եւ միւս կողմէն Ախալցխայի հետ։ Արտահանի ճանապարհը կ՚անցնի Արդուինէն 6 քիլոմէթր հեռու եւ Արտանուջ գիւղաքաղաքին մօտ, Եալանուզ-չամ լեռան վրայէն (8442 ոտք), որ իր դիրքովը Կաւկասիոյ 2 մեծ գետերուն Ճորոխի եւ Կուրի աւազաններուն մէջտեղը կը գտնուի։

Շնորհիւ իր մօտիկ անցելոյն եւ զարգացման պարագաներուն՝ Բաթում իր տեսակին մէջ շատ հետաքրքրական քաղաքի տեսարան կ՚ընծայէ. նա ըստ ինքեան ոչ դեռ բոլորովին թողած է իր ասիական քաղաքի նշաններն եւ ոչ ալ կատարեալ Ռուսական կրնայ համարուիլ։ Բաթում այժմ միջին կամ փոխանցող վիճակի մէջ է ուր ընդհանուր Եւրոպական, բուն Ռուսական եւ հին Օսմանեան կարգերն ու դիրքերը միմեանց միացած, երփներանգ եւ միմեանց բոլորովին օտար տարրերու խառնուրդ մը կը կազմեն։

Եւրոպական առեւտրական կամ գործարանական տանքով, տաճկական ձեւի սրճարաններ են կանգնած, որոնց թէեւ շէնքը նոր, բայց ձեւերն, կարգերն եւ այցելուներն հին Բաթումը կը յիշեցընեն։ Ռուսական պաշտօնական հիմնարկութեանց մէջ դեռ եւս շատ յաճախ կը լսուի Թրքական լեզուն, եւ թէ՛ Եւրոպական եւ Ռուսական շոգենաւերու վրայ, թէ՛ գործարանաց մէջ, թէ՛ նաւահանգստի շուրջը, թէ՛ նաւամատոյցներու վրայ մեծաւ մասամբ հայ, յոյն, թուրք բազմաթիւ բանուորներն են գործող, որոնք իրենց ազգային լեզուն կը հնչեցնեն ամէն տեղ եւ որոնք քաղաքին ամենալաւ մասերու մէջ ալ իրենց տեղական այլազան տարազներովն հակապատկեր կը կազմեն Եւրոպական վերջին նորաձեւութեամբ կարած հագուստներու։

Ծովեզերքի բազմաթիւ սրճարաններուն մէջ ամէն ազգի եւ դասակարգի անձինք կը յաճախեն։ Հայերէնի, վրացերէնի, յունարէնի եւ տաճկերէնի հետ կը լսուի նաեւ ռուսերէն, անգլիերէն, գերմաներէն, գաղղիերէն, իտալերէն եւ այլն, որոնց կը խառնուի նոյն իսկ լազերէնը, որ նոյնպէս բազմաթիւ ներկայացուցիչներ ունի Բաթումի մէջ։ Եւրոպական ձեւով կազմուած պանդոկներէն[1] ոչ շատ հեռու կանգուն կը մնան եւ կը գործեն թրքական ճաշարանները։ Փուռերու սեղաններու վրայ երկաթեայ օճնէներու մէջ ի տես դրուած տաճկական քօղաշա, փաթլաճա եւ այլ բուն ասիական կերակուրներն ալ իրենց երկրպագուներու ընդարձակ շրջանն ունին դեռ։ Եւրոպական ձեւի վաճառատներու հաւասար ասիական գործուածոց խանութներն ալ յաճախորդ կը գտնեն իրենց։

Եւ ինչպէս որ Տաճկական կահվէխանէներու մէջ Տաճկաստան մեծցած Թուրքը, Հայը կամ Յոյնը Նարգիլէի կամ դամայի տախտակի առջեւ նստած շարունակաբար իրենց խահուէն կը խմեն եւ նարգիլէն կը ծխեն, այնպէս ալ կովկասա-ռուսական պօդվալներն (подвалъ) հանգստութեան եւ զուարճութեան վայրեր կը հանդիսանան կովկասցի հասարակ դասակարգի համար, ուր մասամբ Հայը բայց առաւելապէս վրացին իւր կախէթի գինին ճաշակելու մէջ բնաւ խնայողութիւն եւ չափաւորութիւն չի ցոյց տար, ընկերացնելով նոյնը միշտ վրական կոկորդային եւ միօրինակ (monotone) երգերու անվերջանալի աղաղակներուն։ Բաթումին անծանօթ չեն մնացած նաեւ ռուսական ձեւի քապակներն (кабакъ), ուր եկւոր ռուս մուժիկներն, քարիւղի գործարաններու ռուս տակառագործները

[1] Բաթումի առաջնակարգ պանդոկներն են Hôtel de France եւ Impérial. Այնուհետեւ կու գան, Լօնտօն, Hôtel Central, Hôtel d'Europe եւ այլն, որոնք մեծ թուով կը գտնուին այստեղ։ Գները աժան կարելի չէ համարել։

կամ, այլ՝ արհեստաւորներն, երբեմն այնչափ առատութեամբ կը սպառեն իրենց սիրական ըմպելին, ձօդկան (водка), կամ ցորենօղին, (очищенное) որ շատ անգամ փողոցներու մէջ՝ կամ աչքերը մթնցուցած կը սկսին երերալով իրենց բնակարանները փնտռել եւ կամ այդչափին ալ ոյժ չունենալով առաջին անկման տեղին, որեւէ տան պատուհանի տակ անզգայաբար Մորփէոսի գիրկը կը յանձնուին։ Բաթումի ոստիկանութեան սովորական պարապմանց մէջ աննշան տեղ չի գրաւեր այսպիսիներ փողոցներէն մաքրելը, հաւաքելն եւ շատ անգամ բանտարկելն, ուր կը մնան մինչեւ որ ձօդկայի գոլորշիքը կատարելապէս ցնդին օդի մէջ։ Այս տեսարանները առանձին եւ բազմակողմանի փայլ կ՚ընդունին մանաւանդ տօն օրերն,՝ երբ ռուսական ծովային զինուորներն ալ կը մասնակցին գործին, աւելի մեծ եռանդով եւ երբեմն գինովութիւնը մինչեւ խելքորունցքի եւ զէնքի շառաչիւններու կը հասցնեն։ Մէկ խօսքով Բաթում այս հանգամանաց մէջ փողոցային անկարգութիւններու կատարման կողմէն եւ ոչ մէկ քաղաքի նախանձելու պէտք ունի։ Այս բոլորն իր մէջ բաւականաչափ գոյութիւն ունին եւ հետեւանք են, ինչպէս ասինք, այն բացառիկ պարագայից, որոնցմէ շրջապատուած է քաղաքը։

Բաթում՝ մինչեւ հիմայ շարունականաբար աճած է եւ կ՚աճի, բայց վերջին ժամանակներս մտքերն սկսած են յուզուիլ թէ գուցէ այս աճումն արդէն իր բնական գագաթնակէտին հասած լինի եւ թէ աւելի մեծ գիրք նա այլ եւս չէ կարող բռնել, եւ այս կերպով քաղաքին տնտեսական ապագայն վստահութենէ զուրկ կը համարին։ Այս հարցի լուծումը կախուած է բացառապէս նաւթային արդիւնաբերութեան ապագայէն, որ, ինչպէս յայտնի է, սկիզբն եւ պահպանողն է եղած Բաթումի զարգացման։ Թէ՛ մինչեւ հիմայ զանազան տեղեր եւ թէ

մանաւանդ վերջերն՝ Բաքուի մէջ կատարուած կարեւոր պաշտօնական խորհրդակցութիւնները կը յանգին այն եզրակացութեան, թէ Բաթումի նաւահանգիստն է Բաքուի նաւթի եւ քարիւղի արտադրութեան ուղղակի դուռը. եւ այս նպատակով ալ նոր դիմումներ եւ միջնորդութիւններ են եղած կառավարութեան, եւ մեծ յոյս կայ որ կառավարութիւնն ալ արդարացի կը գտնէ այս խնդիրն, եւ Բաթումի նաւթային պահեստներու դիրքն եւ կարգը նոյն վիճակի մէջ կը թողու։ Երբ այս կողմէն ապահովութիւն տեսնուի, ուրեմն կը մնայ քննել թէ ինչպիսի ապագայ ունի նոյնինքն Կաւկասեան քարիւղի արդիւնաբերութիւնը։ Այս խնդիրը թէեւ մեր գծած ուղեւորական նկարագրութեան սահմանէն դուրս պէտք է մնար ըստ ինքեան, սակայն որովհետեւ մենք վերեւ Բաթումի ապագայն կապուած համարեցանք նոյնին, հետեւապէս աւելորդ չենք համարիր քանի մը լրացուցիչ տեղեկութիւններ ալ տալ այս մասին ստորեւ, որ քաղած ենք պաշտօնական աղբիւրէ։ (Հաշիւ Ռուսաց Պետական Կալուածոց Պաշտօնէութեան տասնամեայ գործունէութեան, որ է 1881—1891, ներկայացուած Թագաւոր Կայսեր)։

Նաւթային արդեանց գործածութիւնը թէ՛ Եւրոպայի եւ թէ ընդհանրապէս երկրագնդի վրայ, հետզհետէ մեծ չափերով կ՚ընդարձակի։ Անդրկաւկասեան հողային խաւերն արտաքոյ կարգի առատ նաւթ կը բովանդակեն, ուստի անկասկած է, որ Կաւկասեան քարիւղը ժամանակով՝ ամբողջ աշխարհի նաւթային հրապարակին վրայ առաջին տեղը պիտի գրաւէ, որու նշաններն արդէն սկսած են երեւալ։ Հիւսիսային Ամերիկայի քարիւղի արտահանութիւնը գրեթէ միեւնոյն չափի վրայ կը մնայ միշտ, առանց աւելնալու, այսինքն տարեկան մօտ 100 միլիոն պուդ (1600 միլիոն քիլոգրամ), ուր որ Կաւկասեան նաւթի արտածութիւնը վերջին 8 տա-

բուն մէջ տարուէ տարի զգալի կերպով կ՚աճի, որ $3^{1}/_{2}$ միլիոնէն այժմ 45 միլիոնի բարձրացած է։ Կառավարութիւնը համոզուած է, որ Հայրենի արդիւնաբերութեան ծաղկման եւ նոյն իսկ պետական ելեւմուտքի շահուց համար՝ պէտք է դիւրութիւններ ընծայուին այս ճիւղին եւ թէ մանաւանդ շատ կարեւոր է որ նաւթային արդիւնքն որքան կարելի է աժան կերպով փոխադրուին իրենց արտահանութեան կէտերը. այս նպատակի յաջողութեան համար կարեւոր է դատուած Բաքուէն մինչեւ Բաթում ստորերկրեայ նաւթանցք կառուցանելով, քարիւղը փոխանակ երկաթուղւով փոխադրելու՝ նաւթանցքի (pipe-line) միջոցաւ մղել Բաքուէն Բաթում։ Վասն զի այս նոր ճանապարհով փոխադրութեան գինն անհամեմատ աւելի աժան պիտի նստէր։ Թէեւ այժմ կառավարութիւնը զանազան նկատումներով առկախ է թողած այդպիսի նաւթանցքի կառուցումը, բայց անհաւանական ալ չէ որ ապագային Ելեւմտից լաւագոյն տնտեսական հանգամանաց մէջ, նաւթանցքի ծրագիրն աւելի գործնական վախճան ունենայ, եւ այն ժամանակ Բաթումի ապագան աւելի եւս վստահալից կը դառնայ։ Կառավարութիւնն այժմ այն պարագային ինկատի ունի, որ Բաքու տարեկան 63 միլիոն պուդ (մօտ մէկ միլիարդ Kilogr.) հանքային իւղ կ՚արտադրէ. եւ Անդրկովկասեան երկաթուղին, որ այժմ կառավարութեան կը վերաբերի, ի վիճակի է 70 միլիոն պուդ փոխադրելու, ուրեմն փոխադրութեան միջոց չի պակսիր դեռ. բայց կը մնայ միայն այն խնդիրն որ ինչպէս յիշեցինք, նաւթանցքի եղանակով փոխադրութիւնն աւելի աժան պիտի նստի եւ հետեւաբար քարիւղի գինն ալ աւելի ցածնալով կարող պիտի լինի աւելի ուժեղ կերպով մրցիլ ամերիկեանի հետ։

Նստած կը դիտէի ուրեմն ներկայ Բաթումն եւ մտքիս մէջ կը համեմատէի նոյնն իր անցեալի

հետ։ Այս միջոցին շոգենաւն արդէն երրորդ անգամն էր որ կը սուլէր, եւ կը պատրաստուէր զմեզ Բաթումի գրկէն խլելով տանել իր վրայ դէպ ի արձակ ծովն։ Մեքենաներու շարժման յաջորդեց ամբողջ նաւի զանգուածի դողալն եւ յաղթ անիւները ծովը պատռելով փրփուրներու բլուրներ սկսան յառաջացնել։ Ելեկտրական լոյսը կը լուսաւորէր մեր նաւի Ա եւ Բ կարգերուն տախտակամածը, եւ կէս գիշերուան ժամն 2ին, այնտեղ ես էի միայն բաց ի նաւային պաշտօնեաներէ, որ յամառաբար ընդդիմանալով Մորփէոսի ստիպմանց՝ ականատես կ'ուզէի լինել մեր՝ Բաթումէ բաժնուելուն։ Великій Князы Алексьй իր ցռուկն ուղղած էր արդէն դէպ ի ծովի խորն եւ հանդարտութեամբ քերելով ծովափը՝ կ'ուղղուէր դէպ ի յառաջ։ Այսպէս խաղաղիկ սահելով մեր ետեւն սկսանք թողնել Ռուսական շոգենաւային ընկերութեանց նաւամատոյցներն եւ պահեստները եւ իրենց յաջորդող ծովային լապտերի աշտարակն, իրենց կռնակն ունենալով Բրան-Բալի հսկայական մարտկոցը, որուն յաղթ թնդանօթներուն փողերն ուղղուած էին դէպ ի ծովի արձակն եւ դէպ ի նաւահանգիստը։ Մարտկոյի թողած ահեղ տպաւորութիւնն իսկոյն կ'անհետանար, իր անմիջապէս քովը պատսպարուած ծովեզերեայ լայնարձակ պարտէզին տեսքէն։ Այս գեղեցիկ պարտէզն, Բուլվառ Նասլէդնիկա Ցէսարէվիչա կոչուած, որուն նմանը՝ ամբողջ Սեւ ծովու եզերաց վրայ միայն Օդէսայի մէջ կարելի է տեսնել, Բաթումի ամենահաճոյ տեղն է ուր առօրեայ խիստ եւ տագնապալից աշխատութենէ վերջ, երեկոյները մինչեւ կէս գիշեր իրենց յոգնած եւ տքնած մարմինն եւ միտքը՝ կը բերեն հանգչեցնել Բաթումի ամէն դասակարգի բնակիչները։ Զինուորական երաժշտութեան ընկերութեամբ Բաթումի հասարակութիւնն այստեղ գոհ կերպով կը շնչէ ծովային սիւքն եւ պարտէզի մեղմ զե-

փիռը, եւ իր դրացի մարտկոցը՝ առ ժամանակ մի թողնելով իր ահեղաշունչ եւ ճնշող երեւոյթը; կը ջանայ նոր փայլ մի տալ պարտիզի պատճառած հաճոյքին, իր ելեկտրական լուսոյ ճառագայթները սփռելով մերթ ծառերու գագաթներու, մերթ ծառուղիներու մէջ հանդարտօրէն շրջագայող կամ նստարաններու վրայ հանգչող զոյգերու եւ խմբերու եւ երբեմն ալ արձակ ծովի մակերեւութի վրայ սահող փոքրիկ եւ մեծ առագաստաւոր նաւերը խորին մթութեան մէջէն յանկարծ լուսաւորելով, որոնք այդ գիրքի "կենդանի պատկերներու" երեւոյթը կ՚ընծայեն հանդիսատեսներուն։

Բուլվարէն վերջ ծովեզերքի վրայ կարգ կարգ հիմնուած դպրոցական հիմնարկութեանց աղօտ պատկերները կ՚երեւային մեր աչքին, որմէ յետոյ Բաթումի բանտի ամրակառոյց շէնքը եւ ապա դարձեալ հսկայ թնդանօթներով զինուած նոր մարտկոցի հողաբլուրները կու գային։ Բանտի ճիշդ հանդէպ կը տարածուի Բաթումի երկրորդ քաղաքային պարտէզն յանուն Աղեքսանդր Գ. կայսեր, Աղեքսանդրեան կոչուած, ուր 1888ին կայսրն եւ կայսերական ընտանիքն անձամբ զանազան բոյսեր են տնկած։ Աղեքսանդրեան այգին իրեն կից ընդարձակ լիճ մ՚ալ ունի, որ նեղ պարանոցով միայն կը բաժնուի ծովէն եւ ստորերկրեայ յարաբերութիւն ունի ծովի հետ։ Լճին վրայ նաւակներ կան յատկապէս այգիի զբօսնողաց համար։

Երբ շոգենաւն իր ետեւ թողուց բոլոր վերոյիշեալ տեսարաններն եւ Բաթումի լապտերներու լոյսը քաղաքի հրուանդանի հետ ծածկուեցաւ մեր աչքէն, ես ինքզինքս շրջապատած տեսայ գիշերուան խորին խաւարէն որու վրայ աստղանիշ երկինքը կը ծածանէր եւ որ սահման ունէր իրեն՝ փոքրիկ կապուտակ ալիքներով ծածկուած ծովի մակերեւոյթն, ալ չուզեցի ընդդիմանալ յոգնած աչքերուս եկած հրաւէրին, եւ սենեակ իջնելով

նաւի գողգողմանց եւ ալիքներու բախման ու մեքենայի շարժման աղմուկներու միօրինակութեան մէջ պատրաստուեցայ հանգիստ քուն վայելելու։

---

Բ.

## ՓՈԹԻ ԵՒ ՍՈՒԽՈՒՄ

Յունիս 21ին առաւօտեան ժամը 6ին մեր նաւը կանգնած էր Փոթի քաղաքի առջեւ։ Բաւական ակնահաճոյ տեսարան մ'էր. նաւահանգիստն հաստատուն երկու կիսաբոլոր ջրարգելներու մէջ շինուած, որոնց մէջէն մի նեղ անցք, հեռուէն Ռիոն գետի բերանն, որու կազմած դելտայի հարաւային թեւին վրայ է հիմնուած քաղաքն, գետի պղտոր բաց-կանաչ ջրի հոսանքը՝ ծովու կապոյտ տարածութեան մէջ, եւ վերջապէս Փոթին իր յառաջընթաց մացառներովն եւ խոժոռ ցամաքովը, միմեանց դէմ այնպիսի հակապատկերներ ձեւացնէին, որ այս պէսպիսութիւնը՝ դիտող աչաց համար առանց ուշադրութեան չէր կրնար անցնիլ։

Գիշերուան հանդարտ քնէն նոր արթնցած, հազիւ 4 ժամու ծովային ճանապարհորդութենէն թէեւ դեռ ոչ մի յոգնութիւն չզգացած, այսու ամենայնիւ ցամաքն առանց հրապուրման չէր եւ ես անյապաղ դուրս ելայ քարաշէն նաւամատոյցի վրայ, ուր երկաթուղւոյ կառքերը շոգենաւի համար զանազան տեսակ բեռներ բերած էին։ Նաւահանգիստն որ սկսած է շինուիլ 1863ին եւ որու վրայ կառավարութիւնն ահագին ծախքեր է կատարած, դեռ այն վիճակի մէջ չէ, շնորհիւ իր անյարմար դրքին, որ ապահովութիւն ներշնչէ հոն պատսպարող նաւերուն. Փոթիի առջեւ, ալէկոծեալ ծովու արկածները կրող, պատռող ոչնչացող նաւերու թիւը շատ փոքր չէ։ Փոթի կաւկասիոյ համար

առեւտրական մեծ նշանակութիւն ունեցած է Խրիմի պատերազմէն վերջ (1854), երբ Տաճկական բանակը Ռէտուտ-Քալէ մօտակայ քաղաքն այրեց ոչնչացուց։ Մինչեւ այն ատեն այս վերջինն էր Կովկասիոյ դուռը Սեւ ծովու վրայ։ Բայց 1878ին Բաթումի նաւահանգստին երեւան գալովը Փոթի շատ զգալի կերպով ինկաւ, չկարենալով բնականաբար մրցիլ Բաթումի հետ։

Այսու ամենայնիւ նա ունի դարձեալ իր կարեւորութիւնն եւ Կովկասիոյ երկու մեծ արտահանութեան բերքերը, մարգանէզ (manganèse) եւ եգիպտացորեն (maïs) իր քարափներու վրայէն կը բարձուին դէպ ի Եւրոպա։ Իր ամենածաղկած վիճակին եղած է՝ 1870ին, երբ երկաթուղի շինուեցաւ դէպ ի Թիֆլիս, մինչեւ 1877, երբ Բաթում ռուս դրացի եղաւ իրեն եւ առաջնութիւնը խլեց։

Փոթի՝ ցած դիրքի վրայ հիմնուած ճահճային քաղաք մի է, անսպառելի բոյն աւանդական ջերմի։ Բնակիչներու թիւը 5000ի կը հասնի, որոնց 300ը միայն Հայ են։ Հայք այստեղ գլխաւորապէս առեւտրով կը զբաղին. ունին փոքրիկ եկեղեցի մի եւ ծխական դպրոց։

Ռուսներն առաջին անգամ 1770ին փորձեցին գրաւել Փոթին, բայց այն ժամանակ անյաջողութեան մատնուեցան եւ վերջապէս 1828ին տիրեցին, զոր հաստատեց 1829ի Ադրիանուպոլսեան ռուս-թրքական դաշնադրութիւնը։ Իսկ հնութեան մէջ Փոթին նշանաւոր է եղած իբրեւ առեւտրական քաղաք Փասիս անուամբ, զոր հիմնած էին Միլետացի գաղթականներ։ Բայց թէ ինչպէս այժմեա՞ն Փոթիին տեղն էր հին Կողքիսի այն գլխաւոր առեւտրական կէտը, որ ըստ Ստրաբոնի միջնորդ կը հանդիսանար Յունաստանի եւ Հնդկաստանի մէջ կատարուած տուրեւառին, դեռ կարելի չէ եղած որոշ կերպով հաստատել, վասն զի պատմական

ժամանակաց մէջ Փոթիի տեղագրական դիրքը մեծ փոփոխութիւններու է ենթարկուած։

Փոթիի գետը՝ Ռիոն, որ է նախնեաց Փասիսը (ըստ տճկ. Ֆաշ) շատ յաճախ տիղմ եւ խիճ կը բերէ իւր հետ եւ կը լեցընէ իւր ծովային մուտքի բերնին վրայ, եւ բաւական դժուարութիւններ կը պատճառէ առհասարակ նաւարկութեան, թէեւ նաւահանգիստը նորա ազդեցութեան շրջանէն դուրս է շինուած։ Իւր ընդունած վտակներէն մէկը դեռ պահած է իւր հին-յունական անուան նշանակութիւնը, Hippos (ձի,) որ այժմ վրացերէն Ցխէնիս-Ծղալի (ձիու ջուր) կը կոչուի։

Այս ճահճային եւ տենդային քաղաքէն դեռ չհեռացած՝ տեղական ժողովրդական կեանքին մէջ ի հնոց մնացած մի սովորութիւնը կ'ուզեմ այստեղ յիշել։ Ամէն տեղ Մայիսի առաջին օրն առանձին նշանակութիւն ունի, եւ անհատապէս եւս՝ բայց մանաւանդ ընկերովի խրախճանօք կը տօնուի։ Այդ այն օրը Փոթիի համար ահագին կարեւորութիւն ստացած է։ Հին Փասիսի եզերաց վրայ վրական 2 ցեղեր, որոնք ի սկզբանէ միմեանց հաշտ չեն ապրած, Մինգրէլներն եւ Գուրիացիք, Մայիսի 1ին մեծ խմբերով եւ իրենց լաւագոյն կտրիճներովը կը հաւաքուին եւ նախնական ժողովրդական գնտակի խաղը կը խաղան, որուն կ'ընկերանայ միշտ ըմբշամարտութիւնը։ Մեծ դէպք է այս երկու ցեղերու համար թէ այս խաղերու մէջ յաղթողը ո՞ր կողմն է, յաղթութեան արձագանգն ոչ միայն ամբողջ քաղաքը այլ բոլոր շրջակայ գիւղերը, գաւառներն եւ մինչեւ իսկ Բաթում ու Տփղիս ալ կը հասնի։ Աննկարագրելի է յաղթող ցեղին ցնծութիւնը. այն օրն ահագին գինւոյ կարասներ կը դատարկին, եւ քաջագործները ժողովրդական երգերուն միօրինակ եւ սուր աղմկալից ձայներով կը փառաբանուին։

Փոթիէն նոր էինք բաժնուեր, երբ շոգենաւի սեղանատան զանգակը զմեզ առաւօտեան թէյի

հրաւիրեց։ Երկար սեղանի բոլորտիքը հաւաքուեր էինք մօտ 50 հոգի, որ սովորականէն շատ աւելի բազմութիւն կը նշանակէր։ Զանազան կարգի, ազգի, կրօնի եւ սեռի խումբ մի կը կազմէինք հոն, բոլորս ալ միմեանց անծանօթ, բայց քանի մի ժամուան ընկերակցութիւնը բաւական էր եղած զմեզ իրար ծանօթացնելու, որով եւ խօսակցութիւնը՝ նախ առանձին առանձին՝ շուտով ընդհանուր դարձաւ։ Թէ՛ թէյի եւ թէ՛ մանաւանդ ճաշելու ժամանակ խօսակցութեան գլխաւոր առարկան քոլէրան էր։ Ուղեկիցներուս մեծագոյն մասը Կովկասիոյ մէջ բնակող օտարականներ, գլխաւորաբար ռուսներ էին, որոնք աճապարանօք դուրս էին փախած Բաքուէն եւ Տփղիսէն, եւ կը դիմէին դէպ ի Հիւսիս։ Ամէնքը տեսած էին մաղձայոյզն իրենց աչքով, ամէնքը կրած էին նորա արհաւիրքը• եւ գործադրած առողջապահական հականեխական միջոցներ թէ իրենց վրայ եւ թէ իրենց շուրջը, միայն ես էի, որ բացառութիւն կը կազմէի, վասն զի Բաթումէն ելած միջոցին այնտեղ ոչ մի դէպք էր պատահած։ Ուստի վախ չունէի թէ Կոխի ստորակէտներ կը կրէի վրաս։ Մեր մէջ կար մանաւանդ Բաքուցի, հեռագրատան մի ռուս պաշտօնատէր, որ պարսկական անկոչ հիւրին այցելութիւնն անձամբ ընդունած էր, բայց բարեբախտաբար աճապարած լինելով ինքզինքն իսկոյն դարմանել տալ, մի շաբաթ բժշկական հսկողութեան ենթարկուելէն վերջ անյապաղ ամենայն ինչ թողած՝ շունչը Բաթում էր առեր։ Եւ քանի՛ հետաքրքրաշարժ արկածներ կը պատմէին այնտեղ, ի հարկէ մեծ մասը պատմողներու մտաց մէջ համեմուած։ Կային շատեր ալ, որոնք առանձին պարծանքով կը խօսէին իրենց գործադրած առողջապահական միջոցներու վրայ։ Տփղիսցի երիտասարդ ռուս կին մ'որ, իւր պատմածին համեմատ՝ այն օրէն երբ Բաքու քոլէրայի արշաւանքին ենթարկուեցաւ,

ոչ ինք, ոչ իւր ամուսինն եւ ոչ ալ իրենց ծառայները անեփ ջուր խմած էին, սաստիկ զարմացաւ որ շոգենաւին մէջ իրեն պարզ, յստակ բայց չեռացած ջուր եւ կամ կանաչեղէն կը մատուցանէին սեղանի վրայ, եւ միայն այն ժամանակ համոզուեցաւ ինքն ալ ընդունիլ, երբ տեսաւ որ մենք քանի մի ճաշ շարունակ անխտիր ուտելով եւ խմելով հանդերձ՝ դարձեալ քոլերայի նշաններ ցոյց չտուինք. պէտք էր տեսնել, որ որքան ուրախ էր եւ բարեբախտ կը զգար ինքզինք խեղճ կինը, մտածելով որ գէթ առ ժամանակ մի ազատ պիտի լինէր ակամայ ի գործ դրուած հականեխական միջոցներէ։

Նոյն Յունիս 20ի օրը ժամը 11½ էր երբ հասանք Օչէմչիրա գիւղը, որ ինքնին ծառազարդ՝ հարուստ անտառներու ստորոտի վրայ է հիմնուած, եւ շնորհիւ այս պարագային Սեւ ծովու կովկասեան եզերքի վրայ միակ տեղն է ուր ընդարձակ անտառային արդիւնաբերութիւն կայ եւ փայտի արտահանութիւն ունի։ Կէսօրէն վերջ ժամը 3ն էր երբ հասանք Սուխում։

Ո՛չ Օչէմչիրա ո՛չ Սուխում շոգենաւը չի մօտենար նաւամատոյցին, այլ բացը կը կանգնի եւ ճանապարհորդ ու բեռ առանձին նաւակներով կը տարուին ծովեզերք։ Եւ որովհետեւ ես Սուխումի մօտերը մի բարեկամի այցելութիւն պիտի տայի, ուստի ցամաք ելայ թողլի որ շոգենաւն իւր ճանապարհը շարունակէ, մտադրելով 2 օր վերջը հանդիպող նաւով մեկնիլ դէպ ի Օդեսա։ Ես այն օրն իսկ կը պատրաստուէի գնալ իմ այցելելու գիւղը՝ բարեկամիս տունն, բայց մի այլ ծանօթ՝ Սուխումի գաւառապետին գլխ. օգնական Պր. Տէր-Սիմոնի խնդրանօք մնացի այն երեկոյ, եւ պատիւ ունեցայ նորա հիւրընկալութիւնը վայելել։

Սուխում քաղաքը՝ թէեւ իւր բնակիչներու թուով շատ աննշան է, ընդ ամէնը 1300 հոգի,

բայց իւր գեղեցիկ դիրքով, իր նաւահանգստով եւ մանաւանդ իւր պատմական նշանակութեանը արժանի է ուշադրութեան: Քաղաքը լի է պարտէզներով եւ հիմնուած է տափարակ գետնի վրայ, որմէ անմիջապէս վերջ կը սկսին բարձրաբերձ կանաչապատ լեռներ որոնք Կաւկասիոյ լեռնաշղթային թեւն են կազմած:

Այստեղ՝ իմ ուղեգրական նկարագրութենէս փոքր ինչ շեղելով աւելորդ չեմ համարիր քանի մի պատմական ծանօթութիւններ տալ այնպիսի կէս վայրենի երկրի վրայ, որ ընդհանրին շատ քիչ ծանօթ է առհասարակ:

Սուխում՝ Աբխազիայի գլխաւոր քաղաքն է, եւ այս դիրքի մէջ ունեցած է իւր պատմութիւնը: Քրիստոսէն Է դար յառաջ Յոյներն այստեղ գաղթականութիւն հիմներ են Սեբաստոպոլիս անուամբ: Այնուհետեւ Միհրդատ պոնտացու աշխարհակալութեանց ժամանակ նա եւս ինկաւ այս վերջնոյս ձեռքը (100 Յ. Ք): Միհրդատի պարտութեամբ Սեւաստոպոլսին ու ամբողջ կաւկասեան ծովեզերքը կամ նախկին Աբխազիան՝ ենթարկեցաւ հռոմէական իշխանութեան. եւ Դիոկղետիանոս կայսրը հոս կ՚աքսորէր իւր հալածած քրիստոնեայներն ու չարագործները: Պարսից եւ Բիւզանդացւոց պատերազմին ժամանակ, Աբխազներն, որ իրենք զիրենք Աբսուա կ՚անուանեն, յարմար ժամանակ գտան ապստամբելու եւ 2 թագաւոր միանգամայն ընտրեցին, բայց Բիւզանդիոն ընկճեց զանոնք վերստին:

Այս նուաճմանէն վերջ քրիստոնէութիւնը Յոյներու ձեռօք մուտ գործեց Աբխազիա. եւ այն ժամանակին (551 Յ. Ք.) Յուստինիանոսի ձեռքով այստեղ հիմնուած առաջին քրիստոնեայ եկեղեցին մինչեւ մեր ժամանակ կանգուն է մնացած: Յունական կայսրներն երկրին կառավարութիւնը դարձեալ տեղական իշխաններուն յանձնած

լինելով՝ Աբխազներ նորէն ոյժ առին եւ իրենց շրջակայ բոլոր լեռնային ժողովուրդեան վրայ տիրեցին։ Այս իշխաններէն մէկը՝ Լեւոն Ա. (786—806) ինքզինք թագաւոր հռչակելով առանձին հարստութիւն հիմնեց, որ տեւեց մինչեւ 985։ Թ. դարու սկիզբները՝ Աբխազներն աշխատեցան կրօնական անկախութիւն ալ ձեռք բերել եւ Կոստանդնուպոլսէ (Վրաց) կաթողիկոսէն անկախ՝ իրենց առանձին կաթողիկոս նշանակեցին։ (Մինչեւ քրիստոնէութիւն ընդունիլը՝ Աբխազներն անտառ կը պաշտէին)։

Արաբներու յարձակմանց ժամանակ Աբխազաց թագաւորները՝ Յոյներէն քաջալերուած՝ կ՚աշխատէին զանոնք դուրս վանել իրենց կրօնակից Վրացիներու երկրէն, բայց մեծ ընդդիմութիւն գտան Արտանուշ (Տայոց նահանգի մէջ) նստող Բագրատունիներէն, որոնք իրենց կողմէն յոյս ունէին ամբողջ Վրաստանի վրայ իշխել Արաբներու օգնութեամբ։ Երկար տեւեցին այս կռիւները՝ մինչեւ որ հաշտութեան դիւրին եղանակով Աբխազներն ու Արտանուշեցիք խաղաղութիւնը վերականգնեցին։ Աբխազներու վերջին թագաւորը Թէոդոս, որ թէ կոյր եւ թէ անզաւակ էր, իւր թագաւորութեան յաջորդ ընտրեց Վրաստանի թագաժառանգն՝ որ Արտանուշեցի Բագրատունիներէն էր եւ միանգամայն իւր քրոջ որդին։ Այս պատանին Բագրատ Գ. անուամբ թագաւորելով վերջնականապէս միացուց Վրաստանի եւ Աբխազիայի իշխանութիւնները։ Իւր յաջորդներէն Դաւիթ Բ. Նորոգիչ՝ (1089—1130) վերին Աբխազիան ԺԲ. դարի սկիզբը, բաժնեց Վրաստանէն, զայն իբրեւ աւատապետական երկիր իւր վերին հսկողութեան ներքեւ յանձնելով Աբխազ Շէրվաշիձէ իշխանին։ Եւ երբ Լէնկթիմուրի եւ Ճինգիզխանի յարձակումներու վրայ Վրաց թագաւորները սաստիկ տկարացած էին, Շէրվաշիձէներն առիթէն օգուտ քաղելով, իրենք

զիրենք նորէն անկախ հրատարակեցին, եւ այնպէս ալ կառավարեցին մինչեւ մեր դարուն սկիզբը։

Թուրքերն՝ Սեւ ծովի կովկասեան եզերաց վրայ երեւցան՝ Բիւզանդեան կայսրութիւնը կործանելէ եւ Խրիմի խաները հպատակեցնելէ ետեւ (1453)։ Շէրվաշիձէները շուտով ինկան Տաճկաց ազդեցութեան տակ. եւ սոքա կամաց կամաց սկսան յառաջանալ եւ տիրել ամբողջ ծովեզերքին։ 1453ին Տաճիկները գրաւեցին Սեբաստոպոլիսը, եւ այնուհետեւ նորա գոյութիւնն եւ անունն անգամ մոռցուեցաւ։ Աբխազիայի, Մինգրելիայի, Իմէրէթիայի՝ եւ Գուրիայի (ծովեզերքի մօտ վրական նահանգներ) մէջ իրենց իշխանութիւնը հաստատուն պահելու համար Տաճիկները ԺԸ դարի մէջ կանգնեցին Սուխում-կալէ, Ռէդութ-կալէ (قلعه), Փոթի եւ Անափա բերդերն. եւ այնուհետեւ եռանդուն կերպով աշխատեցան մահմետական կրօնը տարածել երկրին մէջ։ Առաջին ընդունողները Շէրվաշիձէներն իրենք եղան։ Սակայն Ռուսաց հետզհետէ մօտենալէն քաջալերուելով երես դարձուցին Տաճիկներէն։ Ռուսներ 1810ին մտան Սուխում. եւ նոյն ժամանակի իշխանը՝ Սէֆիր բէյ Շէրվաշիձէ՝ Ռուսական հպատակութեան հետ նորէն դարձաւ իւր հարց կրօնն՝ ի քրիստոնէութիւն։ Բայց Աբխազներու մեծագոյն մասը անխախտ մնաց իսլամական կրօնի վրայ, եւ այս պատճառով ներքին խռովութիւններ եւ ապստամբութիւններ երբեք պակաս չեղան։ Այնպէս որ՝ թէեւ Ադրիանուպոլսոյ դաշնագրութեամբ Սուխում քաղքն եւ կովկասեան ծովեզերքը Փոթիէն մինչեւ Անափա անցաւ բոլորովին Ռուսաց ձեռքը, բայց Ռուսաց զօրքը միշտ յարձակումներ կը կրէր Աբխազներու կողմէն։

1854 եւ 1855ին, Խրիմի պատերազմի ժամանակ Ռուսներն ստիպուած լինելով իրենց բոլոր ոյժը կեդրոնացնել Սեւաստոպոլի պարսպաց տակ,

հաւաքեցին տարին այն բոլոր բերդապահ զօրքն, որ կը պահէին կովկասեան ծովեզերքի վրայ. եւ Ջօմէր փաշայի բանակն առանց մեծ դժուարութեան մտաւ Սուխում եւ գրաւեց ամբողջ ծովեզերքը: — Իսկ պատերազմը դադարելէն ետեւ՝ երբ Տաճիկները թողին հեռացան, Ռուսները՝ Աբխազիացի իշխան Միքայէլ Շէրվաշիձէի հրամանատարութեան տակ, որ Ռուսաց բանակի ծառայութեան մէջ՝ էր եւ զօրապետ, նորէն մտան եւ տիրեցին Սուխումին: Անկից 11 տարի յետոյ, Ռուսերն յաջողեցան վերջապէս ընկճել նշանաւոր Շէյխ Շամիլը, որ կամ անձամբ եւ կամ իր նախորդի միջոցաւ մօտ 30 տարի շարունակ անընդհատ պատերազմ կը մղէր Ռուսաց դէմ կովկասեան անառիկ լեռներու եւ կիրճերու մէջ, եւ այն ժամանակ կառավարութիւնը սկսաւ աւելի հաստատուն միջոցներ ձեռք առնել Կովկասիոյ մէջ ռուսական իշխանութիւնն ապահովելու եւ տեղական ժողովրդեան մէջ քաղաքակրթութեան սերմեր մտցնելու համար: Այս միջոցներէն մէկն եղաւ՝ ի մէջ այլոց՝ Աբխազիան հանել վերջնականապէս տիրող Շէրվաշիձէ իշխանի ձեռքէն եւ ռուսական նահանգ դարձնել, որ կատարուեցաւ 1864 Յուլիս 12ին: Թէեւ Աբխազներն ապստամբութեան միջոցով ուզեցին իրենց թշնամութիւնը ցոյց տալ նոր կարգերուն, բայց այս հակառակութիւնք ճնշուեցան: 1870ին ալ Աբխազիայի գիւղացիք կառավարութեան օրէնքով արձակուեցան ճորտա—ընէնէ (գերութենէ) եւ սկսան իրենց նախկին աւատատէրերուն հաւասար իրաւունքներ վայելել:

Մեծ դեր խաղացած է Աբխազիա իւր գլխաւոր քաղաքով Սուխումով միասին վերջին ռուս-թրքական պատերազմի ժամանակ: 1877ին Մայիս 5ին օսմանեան հզօր նաւատորմիղը ռմբակոծեց Սուխումը, եւ այրեց ու քանդեց: Ռուսաց զօրքը ստիպուեցաւ թողուլ քաղաքն եւ հեռանալ:

Տաճիկները մտան Սուխում եւ տարածուելով շրջակայքը սկսան մահմետական Աբխազները դէպ իրենց գրաւել: Այս շարժումը անհետեւանք չմնաց: Աբխազներն խմբովին ապստամբելով միացան օսմանեան զօրաց հետ, երբ միւս կողմէն նաւատորմիղը շրջակայ ծովեզերքը կը ռմբակոծէր եւ կը քանդէր: Օսմանեանց տարած այս յաղթութիւնները պակաս ոգեւորութիւն չէր պատճառեր ատեղացի մահմետական բնակիչներու: Բայց իրերը միշտ նոյն վիճակի մէջ չմնացին, եւ ռուսաց զօրքը գնդապետ Մ. Շոլկովնիկեանի եւ զօրապետ Ց. Աբխազեանի հրամանատարութեանց ներքեւ խիստ կերպով հարուած տուին ապստամբաց՝ Աբխազներուն, եւ զօրապետ Աբխազեան 1 1/2 ամիս յետոյ, Յուլիս 20ին վերստին գրաւեց Սուխումը եւ ճնշեց ապստամբութիւնը: Սակայն երբ 1878ի փետր. 19ին Սան-Ստեֆանոյի դաշնագրութիւնը կնքուելով խաղաղութիւնը հաստատուեցաւ, մահմետական Աբխազներու մէկ մասը չուզեց այլ եւս մնալ Ռուսաց իշխանութեան տակ, եւ մօտ 10.000 հոգի թողին իրենց հայրենիքն ու գաղթեցին Տաճկաստան:

Սուխում վերջին պատերազմին ժամանակ կատարելապէս քանդուեցաւ, եւ քանդողներն ոչ այնչափ օսմ. զօրքն էր, որչափ բուն իրենց Աբխազներն կամ Ջօղաներն՝ ինչպէս կը կոչեն զիրենք Թուրքերը: Այնուհետեւ քաղաքն ի հիմանց շինուեցաւ, բայց նոյն կործանման յիշատակները դեռ շատ տեղ կը մնան:

Այժմ Սուխում վերստին կենդանացած բաւական հաճելի տեսարան կ՚ընծայէ աչաց քարաշէն երկյարկեան տներովն, որոնք ընդարձակ պարտէզներէ շրջապատած են:

Այստեղ Հայոց թիւը 200ի չի հասնիր. ունին փոքրիկ քարաշէն եկեղեցի, որ պարզ տան արտաքին երեւոյթն ունի եւ մի ծխական քահա-

նայ։ Ունին նաեւ ծխական դպրոց, որ յառաջադիմելու հանգամանք չունի։

Սուխում ընդարձակ շրջանին (округъ) գլխաւոր քաղաքն է, եւ ունի 4 վիճակ, որոնց մէջ Գուդաութի վիճակը մեծաւ մասամբ Հայերէ բնակուած։ Այս մասին քիչ յետոյ։

Նոյն օրը քաղաքը մեծ աղմկի մէջ էր. Սուխումի գաւառապետը, ռուս գնդապետ մի, ծանր հիւանդ վիճակի մէջ վերադարձած էր իւր ճանապարհորդութենէն. եւ որովհետեւ ինք սիրուած չէր ոչ իւր պաշտօնակիցներէն եւ ոչ իւր ժողովրդէն, հետեւապէս ոչ մեկու դէմքի վրայ ցաւակցութեան նշան չէր տեսնուեր։ Բայց իբրեւ փոքր քաղաք՝ Սուխում այն օրն ամբողջ խօսակցութեան նիւթ էր դարձուցած այս հիւանդութիւնն որու մահամերձ վախճան կը գուշակուէր։

Քաղաքը՝ ինչպէս յիշեցի՝ տափարակ գետնի վրայ է հաստատուած, բայց կարգ չկայ դեռ. կան տեսակ մի սայլեր մի կամ երկու ձիով (դրօգա), որոնք կը կատարեն կառքի պաշտօնը։ Քաղաքին մօտ գեղեցիկ պարտէզներ եւ ծաղկանոցներ կան։ Անոնց մէջ անուանի է մանաւանդ մէկն, որուն հռչակը տարածուած է ամբողջ ծովեզերքի վրայ։ Այս պարտէզը շինած է Սուխումի նախկին գաւառապետ Վէդէնսկի. եւ վերջերս կաւկասեան նախորդ փոխարքայի որդին մեծ իշխան Աղեքսանդր Միխաիլովիչ այնքան հաւնած է զայն, որ գնած է եւ իրեն համար ամարանոց կը կառուցանէ այնտեղ։ Պարտէզն առատօրէն ունի խաղողի որթեր, պտղատու ծառեր եւ նուրբ տունկեր։ Այստեղի ծաղիկները շատ անգամ ծախու կ'երթան բոլոր մերձակայ քաղաքները։

Սուխումի օդը շատ լաւ է, մեղմ եւ առողջարար։ Ծովային ընդարձակ հորիզոնն, որ ունի իւր առջեւ, առանձին հրճուանք կ'ազդէ քաղաքէն դիտողին։

Հասայ 21ի գիշերը Թացի Սուխում, եւ երկրորդ առաւօտ կանուխ այնտեղէն ուղեւորեցայ դէպ ի Նովօ-Աֆոն (Նոր-Աթոս), որ Ռուսաց հռչակաւոր վանք է, եւ մանաւանդ վերջին տարիներս ռուսական ամենաբարձր անձանց, պաշտօնականներու եւ մեծ թուով ուխտաւորներու այցելութիւնն է վայելած եւ կը վայելէ։ — Այս վանքը Սուխումին շատ մօտ լինելով, ուզեցի ես ալ առթէն օգուտ քաղել։

---

Գ.

## ՆՈՎՕ-ԱՖՈՆԻ ՎԱՆՔԸ

Սուխումէն մեկնեցայ Վանքի կառքովը, ընկեր ունենալով ինձ մի պառաւ ռուս վարժուհի, եւ մի ծեր ռուս Վանական քահանայ, որոնցմէ վերջինը կ'երթար վանք։ Այս Վանականն, որու հետ ես յետոյ աւելի մօտ ծանօթանալու առիթ ունեցայ, 78 տարեկան քահանայ մի էր մարմնով կատարելապէս առողջ, միայն ականջները ծանրացեր էին։ Հայր Ինոկենտիոս, այս էր քահանայի անունը, ծննդեամբ քոզակ էր, որ նախ զինուորական ասպարէզ է ընտրել իրեն համար, ամուսնացեր է, պաշտօնակալի, հարիւրապետի աստիճան է ընդուներ։ 30 տարի հայրենիքի համար ծառայելէն վերջը՝ հոգին միտքը գալով, թողեր է աշխարհքն եւ քաշուեր է վանք։ "Մեծ որդիս, կ'ասէր ինձ, նոյնպէս զինուորական, հարիւրապետ էր, երբ անցեալ տարի հիւանդութեամբ վախճանեցաւ"։ Ինքը բաւական ուսեալ եւ շատ կարդացած անձնաւորութիւն էր։

Սուխումէն մինչեւ Նովօ Աֆոնի (Նոր-Աթոս) վանքը 25 վերստ է, եւ մենք մեր մեկնելէն 2 ժամ վերջը հասեր էինք արդէն վանքին ընդարձակ դաւիթը։

Նովօ-Աֆոնի վանքը՝ մեծ հռչակ ունի ամբողջ Ռուսաստանի մէջ, իսկ Կաւկասի մէջ յունադաւաններու ամենամեծ մենաստանն է։ Նորա նշանակութիւնն այն կողմէն մանաւանդ բարձր է թէ ժողովրդեան եւ թէ կառավարութեան համար, որ նորա վրայ յոյս է դրուած թէ նա պիտի լուսաւորէ կիսավայրենի Աբխազեան՝ Կաւկասի կարեւոր մասերէն մին։ Շատ հետաքրքրական է վանքի հիմնարկութեան պատմութիւնը, որուն վրայ արդէն տետրակներ (brochure) կան գրուած։ Պատմութիւնն ուղղակի կը սկսի Ս. Մարիամ Աստուածածնայ ժամանակէն։ Ռուսաց "Սրբոց Պատմութեան" աւանդածին համեմատ՝ Քրիստոսի Համբարձմանէն վերջ երբ առաքեալները վիճակ կը նետէին իմանալու համար թէ իւրաքանչիւրն ո՛ր երկիրը պիտի երթայ քարոզելու, Մարիամ Աստուածածին ալ ուզեց մասնակցիլ վիճակին, եւ ահա Իբերիայի (Կաւկասիա) մէջ քարոզելու պաշտօնը վիճակ ինկաւ Աստուածածնին։ Բայց Ամենակալի հրեշտակն ծանոյց իրեն թէ Կաւկասիան յետոյ կը լուսաւորուի, եւ թէ այժմ իր խնամքն հարկաւոր է ուրիշ երկրի մի համար, ուր իրեն կ՚առաջնորդէ նոյն ինքն Տէրը։ Ս. Կոյսը բնականաբար հնազանդելով մնաց Երուսաղէմ Ս. Յովհ. Աւետարանչի եւ Յակոբայ Առաքելոյն հետ։ Այս միջոցին այն Ղազարոսը, որ յարութիւն էր առած Քրիստոսի ձեռքով, եպիսկոպոսութեան պաշտօն կը վարէ եղեր Կիպրոս կղզւոյ վրայ, եւ փափագ յայտներ է տեսնել վերստին Ս. Կոյսը։ Բայց որովհետեւ ինք, Ղազարոս, կ՚երկնչէր գալ Երուսաղէմ, ուր հրէաները հալածում էին հանած քրիստոնէից դէմ, ուստի Տիրամօր հաճութեամբ յատուկ նաւ է ուղարկեր, որ Ս. Աստուածածին երթայ Կիպրոս։ Ս. Կոյսը կը նստի նաւ Կիպրոս երթալու, բայց հովի հակառակութեան պատճառով նաւը սխալ ընթացք կ՚առնէ եւ փոխանակ Կիպրոս հասնելու,

կու գայ Աթոս լեռան քով։ Այս ժամանակ Աթոս լեռը հեթանոսութեան բոյն էր, եւ բազմաթիւ կուռքեր եւ կռատուններ կային, որոնց գլխաւորն էր ի պատիւ Ապողոնի կանգնուած մեծ տաճար մի։ Երբ Ս. Կոյսը մօտեցաւ լեռան եզերքին, կուռքերու մէջ պահուած այսերը՝ աստուածային զօրութենէ մղուած սկսան բարձրաձայն աղաղակել ժողովրդեան. «գնացէք մարդիկ, Ապողոնէն խաբուածներ, գնացէք ծովեզերք, Կղեմենտեան նաւահանգիստն եւ դիմաւորեցէք այնտեղ զՄարիամ, Մեծին Աստուծոյ, Յիսուսի Մայրը»։ Ժողովուրդն ալ շփոթած, զարմացած թափուեցաւ ծովեզերքն, ուր Ս. Կոյսը քարոզեց իրենց Աւետարանի վարդապետութիւնը, եւ բազմաթիւ հրաշքներ գործելէն եւ ժողովրդեան մէջ քրիստոնէութիւնը հիմնելէն վերջը՝ օրհնեց նոյն տեղը ջերմ կերպով, եւ աշակերտներէն մէկը հոն թողնելէն վերջը հեռացաւ։ Ահա այս տեղւոյ վրայ է հիմնուած, կ'ասուի, նշանաւոր ռուսական վանքը Աթոս, որ նոյն իսկ Բերլինի դաշնադրութեան մէջ ալ ունեցաւ իր յօդուածները եւ լաւ ծանօթ է քաղաքական աշխարհին։

Արդ, ինչպէս կ'երեւայ, Աթոս լեռան կրօնաւորները չեն մոռցեր, որ Ս. Աստուածածնայ կողմէն Աւետարանի քարոզութիւնը լսելու բախտին թէեւ իրօք իրենց բնակած լեռն ու շրջական արժանացեր է, բայց իսկապէս այս բախտին՝ եղած վիճակի համաձայն՝ Կաւկասիան իրաւունք ունէր յուսալու։ Այս հանգամանաց իբրեւ ի տրիտուր, երբ Ռուսական կառավարութիւնը Կաւկասիոյ լեռնականներու հետ իր երկարատեւ պատերազմները յաջողութեամբ վերջացուցած էր, 1860ին հիմնեց ընկերութիւն մ'որու նպատակն էր պրավօսլավնի (որթոդոքս) քրիստոնէութիւնը տարածել Կաւկասիոյ մէջ, — Աթոս լեռան ռուսական Պանտէլէյմոնի վանքը յօժարակամ յանձն առաւ միաբան-

քարոզիչներ ուղարկել այս նպատակի համար: Այս առաջարկութեան ըստ տուին մէկ կողմէն Կ. Պոլսոյ դեսպանս կոմս Իգնատիեւ եւ միւս կողմէն Կաւկա-զիոյ փոխարքայ մեծ իշխան Միքայէլ, եւ այս կեր-պով հիմնուեցաւ 1875ին կիսավայրենի Աբխազիայի մէջ, Սեւ ծովու եզերքի վրայ, Սուխում քաղաքին մօտ՝ Նովօ-Աֆոն կամ Նոր-Աթոս վանքը, որ պաշ-տօնապէս կը կոչուի «Նոր-Աթոսի Սիմէոն Կանա-նացւոյ վանք»: Սիմէոն Կանանացւոյն նուիրելու պատճառն ալ այն է եղեր որ՝ այս սուրբը Քրիստոսի մահուանէն 20 տարի վերջը եկեր է այստեղ, քա-րոզեր, մարտիրոսացեր է եւ թաղուեր: Նորա գերեզ-մանի վրայ Դ. դարուն տաճար է շինուած եղեր, որ յետոյ կործանուեր է մահմետականներէն, եւ ահա այս տաճարի տեղւոյն վրայ է, որ կամեցեր են հիմնել նոր քարոզիչներն իրենց կեդրոնը:

Սարսափելի անձրեւ կը տեղար երբ հասանք վանքը: Իսկոյն կառքէն ելլելով, Հ. Իննովկեն-տիոս զիս յանձնարարեց վանքի հիւրընկալ քա-հանային, որ քաղաքավարութեամբ առաջնորդեց զիս դէպ ի վանքի երկյարկեան ընդարձակ հիւրա-նոցը: Կէս ժամի չափ հանգստանալէն վերջ վանա-կաններէն մէկը զիս սեղանատուն հրաւիրեց ճաշ անելու: Ուրախութեամբ ընդունեցայ, վասն զի երկար ճանապարհորդութենէն յոգնած՝ ախոր-ժակս ալ բացուած էր: Սեղանատան մէջ, որ շատ պարզ կերպով կահաւորած ընդարձակ սենեակ մ'էր, կլոր սեղանի առջեւ նստած կը ճաշէին 3 գիմ-նազիստներ (գիմնազիոնի աշակերտներ), որոնք նոյն-պէս ինձմէ յառաջ Սուխումէն էին եկեր վանքն այցելելու: Միացայ դպրոցականներու ճաշին: Ճաշը շատ փարթամ չէր կրնար համարուիլ. Նոր-Աթոսի կրօնաւորներն, ինչպէս կ'երեւար, ճոխ սեղան ու-նենալու մէջ չէին կրնար մեղադրուիլ: Ծառայող վանականն ինձ մատոյց կաղամբի տերեւներէ պատ-րաստուած թթու ապուր, որ իբր թէ ռուսական

(ЩИ) չկէն էր, բայց առանց մսի. այնուհետեւ եւղով տապկած դդում եւ սեւ հաց։ Այս էր իրենց սովորական կերակուրը։ Իբրեւ բացառութիւն մեզ տուին փոքր ինչ ճերմակ հաց եւ ջրոյ չափ թեթեւ՝ կարմիր տեղական գինի։

Ճաշը վերջացնելէն յետոյ գնացի վանքի տաճարը։ Եկեղեցին՝ յունական ոճով կառուցուած բաւական զարդարուն շէնք մի էր։ Դրան առջեւ կրօնաւորներէն մէկը՝ զանազան իւղալի սրուակներով լեցուն սնտուկի մ'առջեւ նստած՝ այս սրուակները խնամքով թղթի մէջ կը փաթթէր։ Դիմեցի կրօնաւորին եւ հարցուցի թէ ի՞նչ կը բովանդակէին սրուակները. “Այս սրուակներու մէջ, ասաց նա ինձ, “Ազատարար Ս. Աստուածածին„ պատկերի եղը կայ, որ կ'օգնէ առանց բացառութեան՝ ամէն ցաւի. բաւական է միայն փոքր ինչ քսել անձին ցաւած տեղին վրայ։„ — “Եւ ի՞նչպէս կը ցրուէք այս այդ եղը։„ — “Ստակով կը ծախենք, սրուակներն իրենց մեծութեան համեմատ կ'արժեն 5, 10, 15 եւ 20 կոպէկ։„ — “Տուէք ինձ խնդրեմ 15 կոպէկնոց մի սրուակ.„ եւ կրօնաւորը թղթի մէջ փաթթեց ու տուաւ փոքրիկ շիշ մ'այն “Հրաշագործ„ իւղէն։ Այս միջոցին ուրիշ կրօնաւոր մ'առաջնորդելով ինձ տարաւ եկեղեցի եւ ցոյց տուաւ նոյն ինքն պատկերը՝ “Ազատարար„ կոչուած. սա ռուսական ոճով նկարուած փոքր պատկեր մի էր, որ կը ներկայացնէր Աստուածածինն՝ մանուկ Յիսուսը գրկած, եւ դրուած էր ոսկեզօծ մեծ շրջանակի մէջ։ “Ազատարարի„ աջ կողմը դրուած էին Սիմէոն Կանանացւոյ եւ ձախ կողմը Պանտելէյմոնի պատկերները։ Առաջնորդս սկսաւ երկարօրէն պատմել, վկայութիւններ յառաջ բերելով, թէ որպիսի անվրէպ հրաշագործ էր այն պատկերը. եւ որպէս զի զիս աւելի համոզէ՝ տպած գրքոյկ մ'ալ տուաւ ռուսերէն լեզուով, ուր կը պատմուի թէ ինչպէս պատկերը բերուած է եղեր Հին-Աֆոնէն (Աթոս լե-

րան ռուսական վանքէն), եւ ինչ հրաշագործութիւններ է կատարեր։ Այս պատկերէն վերջ այն եկեղեցւոյ նուիրականութիւնք կը կազմէ նաեւ մարմարինէ արկղիկ մը, ուր առաջնորդիս պատմածին համեմատ՝ զանազան (ռուսական) սրբոց մասունք կը գտնուէին։ Միեւնոյն ժամանակ, եկեղեցւոյ բակին մէջ կախուած խոշոր յայտարարութիւն մ'ալ բարեպաշտ հաւատացեալներուն կը ծանօթացընէր թէ Ռուսիոյ ո՞ր սուրբը կամ ո՞ր նշանաւոր պատկերն ինչ հիւանդութեան դէմ օգնող է եւ ե՞րբ կը կատարուի նորա տօնը։

Ինձ հետ միասին բազմաթիւ ռուս ուխտաւոր այր եւ կանայք եւս կ'այցելէին տաճարը։ Ուխտաւորներու թիւն՝ ինչպէս կ'երեւար՝ բաւական ստուար էր ամառ ժամանակ մանաւանդ։

Վանքին միւս մասերը չայցելած՝ ուզեցի ունկնդրութիւն մ'ունենալ վանահօրէն. հիւրընկալ կրօնաւորը ինձի առաջնորդեց վանահօր բնակարանը, ուր կանխապէս ուղարկած էի այցետոմս, եւ ինչպէս յետոյ լսեցի, Հ. Իննովկենտիոս զիս յանձնարարեր է իբրեւ թղթակից արտասահմանեան մի լրագրի։

Վանահայրը զիս շատ սիրով ընդունեց. իր ընդունարանը պարզ բայց ճաշակով զարդարուած սենեակ մ'էր՝ վանքի մէջ լաւագոյնն անշուշտ։

Վանահայրը՝ Հայր Հերոն (Геронъ) սպիտակ մօրուքով, նիհար եւ երկայն հասակաւ պատկառելի ծերունի մ'էր։ Զի նստեցուց իրեն մօտիկ, եւ մենք կէս ժամի չափ տեսակցութիւն մ'ունեցանք, որ բնականաբար վանքի վերաբերեալ էր ամբողջապէս։ Իր բացատրութիւններէն երեւաց որ Նոր-Աթոնի վանքը կարծուածին չափ հարուստ չէր։

“Մի՛ կարծէք թէ մենք մեծ նիւթական օգուտ ունինք այստեղ եկող բազմաթիւ ուխտաւորներէն։ Կու գան՝ օրերով, շաբաթներով կ'ուտեն, կը խմեն. վանքի հիւրանոցի մէջ կ'ապրին, եւ ապա

3 կամ 5 րուբլի տալով կը հեռանան։ Կը պատահին երբեմն այնպիսիներ ալ, որ իրենց այցելութեանց ժամանակ այստեղ կը հիւանդանան եւ Վանքը զիրենք կը հոգայ ձրի։ Իսկ ուրիշներ մինչեւ անգամ ստակ չեն ունենար ետ դառնալու, եւ Վանքն հարկադրուած կը լինի իր հաշուով զիրենք ետ ճամբելու։„

“Դուք կարծեմ Պետերբուրգ եկեղեցի ունիք, որ առատ եկամուտ կը բերէ ձեր վանքին։ — “Այո, եւ շնորհիւ Պետերբուրգի եկեղեցւոյ օժանդակութեան է, որ մենք մեր դրամական պէտքերը կը հոգանք։ Մեր վանականներն այստեղ բոլորն ալ տնտեսական գործերով կը պարապին։ Ըստ իրենց կարողութեան եւ ընդունակութեան՝ ոմանք երկրագործ են, ոմանք պարտիզպան, ոմանք դարբին, երկաթագործ, դերձակ, կօշկակար, անասնապահ, ծառայող եւ այլն։ Եւ այս կերպով մենք մեր ոյժերով կը ջանանք մշակել մեր հողերն ու կալուածները։„

“Իսկ ուսումնական աշխատութեամբ ոչ ո՞ք կը պարապի վանքի մէջ։„

“Ոչ ոք, բաց ի Հ. Իննովկենտիոսէն որ ձեզ հետ եկաւ Սուխումէն։ Նախ, ազատ ժամանակ չեն գտներ իրենց նիւթական առօրեայ զբաղումներէն, երկրորդ իրենց մէջ չկան արդէն ուսում առած անձինք։ Փոքր ի շատէ ուսեալ անձը մեր վանքը չի մնար արդէն՝ դիտնալով մեր այստեղի հանգամանքն եւ կանոնները։

“Իսկ ի՞նչ յարաբերութիւն ունիք Հին-Աֆոնի հետ։

“Այստեղի կրօնաւորներէն շատերը Աթոսէն են եկած։ Ես ինքս այնտեղէն եմ փոխադրուած։ Մենք շարունակեալ յարաբերութեան մէջ ենք Աթոսի հետ, որ մեր Մայր-վանքը կը համարուի։ Նա է, որ կ'օգնէ մեզ ամէն կերպ, մեր կարօտու-

թեան ժամանակ եւ վանքի Ճէ-Ջէփի պակասն ալ (déficit) նա կը ծածկէ։»

«Այս վանքն ուրեմն ուղղակի Աթոսի վանքի՞ն է ենթարկուած։»

«Ոչ, մօտակայ Թեմական եպիսկոպոսը կը հսկէ վանքի բարոյականին վրայ. վանքը մասամբ միայն կախում ունի Աթոսէն, եւ իսկապէս ուղղակի Պետերբուրգի Ս. Սինոդին կ'ենթարկի։»

«Իսկ Վանահայրն ո՞ր տեղէն կը նշանակուի»։ «Վանահայրները մինչեւ հիմայ կը նշանակուէին Հին-Աֆոնէն. ինչպէս եւ ես այնտեղէն եմ ուղարկուած։ Բայց որոշուած է որ այսուհետեւ ուղղակի միաբանութիւնն ինք ընտրէ իր մէջէն։»

«Իսկ վանականներն իրաւունք ունի՞ն հեռանալու վանքէն։»

«Մինչեւ վերջին ժամանակներս շատ գէշ սովորութիւն էր մտած մեր կրօնաւոր եղբայրներու մէջ, որոնք երբ մէկ վանքէն աժգոհ կը մնային, կը հեռանային անկից եւ կը մտնէին մի այլ վանք, անկից ալ ուրիշ տեղ եւ այլն։ Երբ երկու տարի յառաջ Սինոդի օպէր-պրօկուրօր Պոբէդոնոսցէվն այցելեց մեր վանքին, ես բացատրեցի այս պարագայի անտեղութիւնն, եւ այժմ հրաման չեմ տար վանականի մ'իր կարգը փոխել, բաց ի այն պարագայէն երբ նա բաղձայ Հին-Աֆոն երթալ։ Բայց հազի՛ւ թէ գտնուի մէկն, որ կամենայ այս վանքը թողուլ ու հոն երթալ, վասն զի այնտեղ վանական կարգերը շատ աւելի խիստ են քան այստեղ։ Եւ ինչո՞ւ վանականը պէտք է հեռանայ, քանի որ նախ քան մեր միաբանութեան անդամ ընդունուիլը 3 տարի կը մնայ այստեղ, եւ ժամանակ կ'ունենայ մտածելու. կարգն ընդունելու առեն ալ դարձեալ կը հարցընենք իրեն թէ յօժար կամքո՞վ կ'ընտրէ այս ասպարէզն։ Կարգն ընդունելով՝ նա պէտք է վերջնականապէս հրաժեշտ տայ աշխարհի. վանքը դադար մի է ուսկից պիտի չկարողանայ նա այլ

եւս ետ դառնալ։ Վանքի նպատակը հոգւոյ փրկու-
թիւնն է։„

“Վանքի մէջ չկա՞ն այնպիսիք, որ ամուսնա-
ցած լինին։„

“Կը պատահի, որ ամուսնացած անձեր եւս թողնեն իրենց ընտանիքն եւ մտնեն վանք։ Բայց մինչեւ որ իրենց կինը չվախճանի՝ միաբանութեան անդամ չեն կրնար ընդունուիլ։„

Այնուհետեւ վանահայրը դարձեալ զանազան տեղեկութիւններ տուաւ ինձ վանքի վիճակին վրայ։ Այս միջոցին վանականներէն մէկը վանքի վերաբերեալ խնդրոյ վրայ հրահանգ ընդունելու համար մտաւ ներս եւ դիմեց վանահօր՝ առանձին արարողութեամբ։ Միաբանն 3 անգամ ի ծունր խոնարհելէն վերջը վանահօր աջը համբուրեց եւ վանահայրն ալ զինք բարձրաձայն օրհնեց։ Նոյն տեսակ արարողութեամբ կ'ընդունուի վանահայրն՝ եկեղեցւոյ մէջ ալ. վանականները կարգ կարգ շարուած կու գան ծնրադիր ընդունել վանահօր օրհնութիւնն եւ ապա կը սկսի ժամակարգութիւնը։

Մի նոր հիւր ներս մտնելով, ես իմ տեսակցութիւնս վերջացած համարեցայ եւ հրաժեշտ առի վանահօրմէն, շնորհակալութիւնս յայտնելով թէ՛ իրմէ եւ թէ՛ առհասարակ վանքի մէջ ցոյց տրուած հիւրասէր ընդունելութեան համար։ Թէ՛ ընդունելութեան եւ թէ հրաժեշտի ժամանակ, ըստ սովորութեան, ես համբուրեցի վանահօր աջը, նա ալ իմ ճակատը։ Միեւնոյն ժամանակ վանահայրը հրամայեց, որ վանքի ձիերէն մէկը դրուի իմ կարգադրութեան ներքեւ, վանքէն ետ դառնալու համար, մինչեւ 2 ժամուան ճանապարհ գիւղ մ'ուր պիտի երթայի նոյն գիշեր բարեկամիս տունը։

Վանահօրմէ բաժնուելէս վերջ գնացի վանքի միակ ուսում առած եւ զարգացած ծերունի կրօնաւորին՝ Հ. Իննովկենտիոսի քով, որու սենեակն

իրեն թէ ննջարանի, թէ ընդունարանի, թէ աշխատութեան խցի եւ թէ միանգամայն սեղանատան տեղ կը ծառայէր. վասն զի Հ. Իննովկենտիոս բացառութիւն կը կազմէր, եւ իբրեւ առանձին շնորհ իրեն զատ եւ փոքր ինչ աւելի սննդարար կերակուր կը տրուէր:

Հ. Իննովկենտիոսի սենեակին կից էր վանքի մատենադարանն ու թանգարանը՝ միեւնոյն սենեակի մէջ տեղաւորուած եւ աղքատ ամէն կերպով: Հազիւ 2000 հատոր գիրք կար, բոլորն ալ եկեղեցական բովանդակութեամբ. բաց ի քանի մի թարգմանութիւններէ անգղ. եւ գերմ. բոլորն ալ ռուսերէն էին: Իսկ թանգարանի բաժնի մէջ կային քանի մի երկաթեղէն հին գործիքներու (մեծաւ մասամբ սլաքներու եւ նետերու) կտորներ, որոնք գտնուած են վանքի շրջակայքը: Զանազան արձանագրութեանց հատակտորներ յունական եւ վրացի եկեղեցական լեզուով, նոյնպէս հին յունական դրամներ, որոնց մէջ ուշադրութեան արժանին էր միայն Աղեքսանդրի Մակեդոնացւոյ մի զուտ արծաթ դրամը, որու վրայ դեռ անաղարտ կը կարդացուէր Αλεξανδρος անունը: Այս յունական յիշատակները մնացորդ են Անակոպիայի (Նիկոփսիա) նախկին յունական գաղթականութեան, որու տեղւոյն վրայ կառուցուած է այժմեան Նովո-Աֆոնը:

Հ. Իննովկենտիոս իր 78 տարեան հասակին մէջ կը շարունակէ զբաղիլ գրականութեամբ. ունի 8 ինքնուրոյն շարադրութիւն, որոնց մէջ կարեւորն է գրքոյկ մի՝ Древнее Русское знаменное пѣніе վերնագրով ուր կը խօսի ռուսական հին երգեցողութեան վրայ. այս մասին ընդարձակ աշխատութիւն մ'ալ պատրաստած է պատշաճաւոր երաժըշտական նօթաներով, բայց դեռ լոյս չէ տեսած: Ինք իր գրուածներէն մի մի օրինակ ընծայեց ինձ:

Ինձ տրուած տեղեկութեանց համեմատ՝ վանականներու ամբողջութիւնը կը բաղկանայ 150

հոգի է, որոնց 70ը կրօնաւոր քահանայք են, իսկ 80ը ծառայողք (ПОС. ЛУШНИКЪ.)[1] Վանքի միաբաններու ապրուստի եւ անասնոց համար օրական 300 րուբլի ծախք կը լինի որ կը հայթայթուի բաց ի վանքի կալուածական հաստատուն եկամուտներէն՝ այն օժանդակութեամբ, որ կու գայ Պետերբուրգի եւ Մոսկուայի մէջ սոյն վանքի ունեցած եկեղեցիներէն, եւ նաեւ մասնաւոր նուիրատուութեամբ։

Վանքն ունի ընդարձակ կալուածներ, իր սեպհական արտերը, բանջարանոցները, ջրաղացները, ձիերը, կառքերն եւայլն, որոնց հոգացողները բոլորն ալ իրենք վանականներն են։ Ունի նախակրթարան, գիւղական դպրոցի ծրագրով, ուր ձրի կ'ուսանին եւ կը կերակրուին շրջակայ գաւառներէն հաւաքուած մահմետական եւ քրիստոնեայ աղքատ տղաք, հիւանդանոց, մոմ թափելու գործարան եւ բաղնիք դպրոցի աշակերտներուն համար։ Վանքի տաճարը փոքր է, եւ հոն իրենք վանականներն իսկ ամբողջովին չեն ազմիր, եւ առհասարակ այժմ գտնուած շինութիւններն բոլորն ալ առժամանակեայ են. ուստի ձեռնարկուած է ընդարձակ եկեղեցւոյ կառուցման՝ յանուն Ս. Պանտելէյմոնի։ Այս եկեղեցւոյ հիմնարկութեան քարն անձամբ դրած են Ռուսաց Աղեքսանդր Գ. կայսրն, կայսրուհին եւ թագաժառանգը 1888 Սեպտ. 24ին, երբ եկած էին Կաւկաս։ Եկեղեցւոյն կից կը շինուին նոյնպէս ընդարձակ բնակարաններ, դպրոց, հիւանդանոց, հիւրանոց եւայլն։ Կայսերական ընտանեաց այս այցելութեան յիշատակը ոսկի տառերով քանդակուած է այժմեան եկեղեցւոյ բակին մէջ։ Կայսրուհին վանքին 5.000 րուբլի ընծայած է։

Նովօ-Աֆոնի բնական դիրքն ինքնին շատ գեղեցիկ է. եւ վանքի աշխատութեամբ այս դիրքն ի-

[1] Բովանդակ Ռուսաստանի մէջ 486 արական եւ 195 իգական սեռի վանքեր կան, 7157 կրօնաւորներով եւ 5537 մայրապետներով, ի բաց առեալ ծառայողները։

րգք պքանչելի ակնահաճոյ կերպարանք է առած։ Բուսականութեան հարստութիւնն ու պէսպիսութիւնը, վանքի քովէն հոսող Պսըրցխա գետակի ջրէն կազմուած լիճն եւ ջրվէժն ամէն ուղեւորի ուշադրութիւնը կը հրաւիրեն իրենց վրայ։ Վանքի շինութիւնները կը վերջանան ծովեզերքի վրայ, ուր յատուկ նաւամատոյց կայ, եւ ռուսական նաւական ընկերութեանց շոգենաւերն գրեթէ ամէն օր կը հանդիպին հոս, Բաթումէն Օդէսա եւ Օդէսայէն Բաթում գնացած ժամանակ։ Ընկերութեանց այստեղի գործակալութիւնը նոյնպէս վանականաց ձեռքն է։

Նովո-Աֆոնի նոր շինութիւններն եւ դիրքը դիտելէն վերջը, մտանք դարձեալ վանքի հիւրանոցն, ուր մեզ թէյ տուին։ Այս միջոցին վանքի կողմէն 2 ձիերը բերուած էին իմ ուղեւորութեանս համար, բայց իմ բարեկամիս կողմէն յատուկ ձի եւ մարդ ուղարկուած լինելով, ես կարօտութիւն չունեցայ վանքի ձիերուն եւ յայտնելով անկեղծ շնորհակալութիւնս, որին կցեցի մի աղքատիկ դրամական նուէր, հեռացայ վանքէն, ծովեզերեայ ճանապարհով, երբ ամպամած հորիզոնը մօտալուտ հեղեղալից անձրեւի սպառնալիքներ կ'անէր։

Չմոռնամ այստեղ յաւելուլ որ այս վանքի կարգադրութեան ներքեւ է մերձակայ Պիցունդայի տաճարն, ուր 407ին աքսորուած էր Յովհ. Ոսկեբերան։

---

Դ.

# ՆՈՎՕ-ԱՖՈՆԷՆ ՍՈՒԽՈՒՄ

Նովօ-Աֆոնէն մինչեւ Սուխում ճանապարհը բովանդակ ժամանակ ծովեզերքի երկայնութեամբ կը յառաջանայ, երբեմն հովանաւոր ծառուղիներու տակ եւ երբեմն մացառներու քովէն, որոնք անկանոն կերպով եզերքին մօտերը բուսած՝ շատ յաճախ ծովու կոհակներու շօշափումներ կ'ընդունին: Բուսականութիւնն այստեղ թէեւ ոչ բազմատեսակ, բայց շատ առատ է: Կաւկասիոյ այս մասը՝ այսինքն Սուխումի գաւառը եւ յարակից շրջանը՝ անտառներուն ընդարձակութեամբը նշանաւոր է: Ծովեզերքէն սկսած մինչեւ կաւկասեան լեռնաշղթային այս կողմի թեւին բոլոր բլուրներն ու լեռները ծածկուած են հարուստ անտառներով, որոնց մէջ հազուագիւտ չեն ընկուզենին, նոճին եւ տօսախը (buit): Այս փայտերն Օչէմչիրէն, Գուդաուտէն եւ Սուխումէն ծախու կ'առաքուին դէպ ի Եգիպտոս, Տաճկաստան ու Եւրոպա: — Այս անտառները մեծաւ մասամբ վրացի իշխաններուն եւ աբխազ կալուածատէրերուն են, որոնք բնաւ յարգը չեն գիտեր իրենց այս հարստութեան, զոր փոխանակ խելացի տնտեսութեամբ շահագործելու՝ անխնայ կերպով կը ջարդեն, եւ այսպէս այն ամբաւ կոյս անտառներուն հետզհետէ փճացման պատճառ են ի վնաս նոյն իսկ իրենց նիւթական շահուն. վասն զի այս մարդիկը միայն այսօրն ունին ի նկատի, եւ կ'աշխատին ըստ կարի շատ եւ շուտ ծախելով աւելի դրամ հաւաքել:

Մի կողմէն դէպ ի ծով եւ միւս կողմէն դէպ ի այս լեռնապատ անտառները նայեցանք ուղղելով, հանդարտիկ կը ձիավարէինք, երբ յանկարծ երկնքի երեսին վրայ թուխ ամպերն հետզհետէ բարդուելով

անձրեւի կաթիլներ սկսան տեղացընել մեր վրայ։ Ամբողջ կէս ժամու ճանապարհ ունէինք դեռ մինչեւ բարեկամիս գիւղական բնակարանը։ Ինձ ընկեր ունէի բարեկամիս մի երիտասարդ ազգականը, որ Լազարեան Ճեմարանի Ե. դասարանի ուսանող էր եւ նորա աբխազ ծառան։ Երեքս ալ իբրեւ բնիկ կովկասիացի՝ անվարժ չէինք ձիավարելու մէջ, ուստի բնաւ չքաշուեցանք ուժգին խթաններ տալու մեր կենդանիներուն, որոնք անձրեւէն կամաց կամաց թրջուող հողին վրայ սկսան սրընթաց արշաւել։ Բայց այս արշաւանքն ալ օգուտ չունեցաւ։ Կաթիլ կաթիլ սկսած անձրեւը սոսկալի տարափի փոխուեցաւ, մինչ այն ժամանակ որ մենք ուղիղ ճանապարհը թողած, ձիերու գլուխը դարձուցած էինք դէպ ի վեր դէպ ի բլուրն, որուն մինչ գագաթան վրայ էր մեր այս օրուան վերջնական ապաստանարանը։ Այս միջոցին մեր վիճակն նախանձելի չէր։ Ամառնային թեթեւ զգեստներ հագած՝ սոսկալի անձրեւին դէմ գէթ մեր գլուխը պատսպարելու ոչ մի միջոց ունէինք եւ մեր առջեւը մերձակայ ո՛չ դէպ ի վեր, ո՛չ դէպ ի վար տնակ, հիւղ կամ մի որեւէ ծածկոյթ կ'երեւար, վասն զի բլուրը ծածկուած էր կանաչազարդ մարգերով կամ ծխախոտի եւ սիմինդրի արտերով։ Այսու ամենայնիւ անընդհատ կը քշէինք մեր ձիերն՝ որոնք զառիվերի եւ մանաւանդ թաց հողի պատճառաւ դժուարութիւններուն դէմ մեր ուզած արագութեամբ չէին կրնար յառաջանալ։ Սարսափելի կերպով, ամբողջ մարմնով թրջած՝ հազիւ ապաստանեցանք մի խընձորենւոյ տակ, որ ի սկզբան թէեւ շատ տկար կերպով՝ կը պատսպարէր զմեզ, բայց քիչ ետքը՝ երբ այն ցանցառ ճիւղերուն վրայ սկսան անձրեւի ուժգին հարուածներն իջնալ, տեղատարափին յորդ հոսանաց բեռան տակ տերեւները հակեցան, եւ անծայր չուանի նման ջուր սկսան հոսեցընել մեր մարմնոյ մերթ այս մերթ այն կողման վրայ։ Զիբրէն

վար իջած եւ ծառին նիհար բնոյն կռթնած՝ կրաւորական վիճակի բոլոր անտանելիութեամբը կը կրէինք այս ջրհեղեղը, իսկ սա կարծես հետզհետէ աւելի եւս սաստկանալու երեւոյթներ կ'առնէր։ Այս վիճակը նախ քանի մի րոպէ զիս զուարճացուց՝ գտնուելով այն վիճակի մէջ, որ կ'ունենայ մարդ՝ երբ անսովոր տեսարան մի նկատելով իւր աչքին առջեւ, առանց իւր անձին իրական վտանգ զգալու պարզապէս դիտելով կը հրճուի. բայց իմ հոգւոյս այս զուարճացուցիչ տրամադրութիւնը շուտով անցաւ՝ տեղի տալով զգալի անհանգստութեան ու ներքին բուռն վրդովման, երբ ես եւ ուսանող ընկերս մեր թեթեւ եւ կատարելապէս ջրաթաթախ զգեստներուն ներքեւ սկսանք փառաւոր կերպով դողալ, մանաւանդ որ օրն ալ արդէն դէպ ի երեկոյ կը դիմէր եւ ցուրտը սկսեր էր մեր վրայ ազդել։ Իսկոյն՝ այս դողին հետեւանք՝ որեւէ հիւանդութիւն գալով անկողնոյ գամուելու եւ ճանապարհորդութիւնս ալ ի հարկէ յետաձգելու հաւանականութիւնը կայծակի նման մտքիս մէջ թափանցելով՝ հոգեպէս աւելի սկսայ տանջուիլ, քան որչափ մարմնով անհանգստութիւն կը կրէի։ Անձրեւը դեռ հեղեղօրէն կը շարունակէր հոսել։ Կէս ժամ տեւեց այսպէս։ Անձկութիւնը տիրած էր մեր սրտին վրայ եւ ոչ մի կերպով ախորժելի կրնար համարուիլ մեր վիճակը։ Եթէ կար մի զուարճութիւն մեզ համար այն միջոցին, սոսկալի հեղեղին կակուղ հողի վրայ բացած ակօսներուն տեսքն էր, որոնց մէջէն կարկաչելով օձանման դէպ ի վար կը սահէր պղտոր ջուրը։

Բայց ամէն անակնկալ դէպք իր վերջն ունի բնականաբար, այսպէս ալ զմեզ տանջող եւ մեր ճանապարհը կաշկանդող տարափը։ Դիւրին է երեւակայել իմ եւ ընկերիս ուրախութիւնը, երբ տեսանք որ մեր անողոք թշնամին զինադադարի նման յանկարծ դադրեցուց իր յարձակումը մեր եւ

մեր տկար պաշտպան խնձորենւոյն վրայ. մենք այլ
եւս ենթակայ չէինք անձրեւային ալիքներուն։
Առանց երկար մտածելու աճապարանօք ձի հեծանք
չնայելով որ թամբերն ալ մեզի չափ թրջած էին,
բայց ոչինչ այն միջոցին ա՛լ եւս կրնար զմեզ ար-
գելել. եւ մենք յուսահատ փախստականներու
նման սկսանք բլուրն ելլել, անհամբեր դիտելով այն
կէտն, ուր վերջապէս հանգստութիւն պիտի գտնէ-
թէ մենք եւ թէ մեր խեղճ երիվարները։

* * *

Հետեւեալ առաւօտ՝ երբ շնորհիւ մեզ մա-
տուցուած խնամքին եւ սիրալիր հիւրասիրութեան,
թարմ եւ զուարթ՝ տան պատշգամբին վրայ նստած
կը նախաճաշէինք, ամենայն ինչ անցած էր, ոչինչ
կը զգայինք մեր անցուցած անձրեւային ժամանա-
կէն։ Միայն բլրոյ գագաթին վրայէն՝ ուր կանգնած
էր բարեկամիս ամարանոցը՝ երբեմն երբեմն անո-
խակալ նայուածքներ կ'արձակէի դէպ ի այն կողմն,
ուր տարափը զիս նախորդ օրը գամած կը ճնշէր։

Նախաճաշէն վերջն ուսանող ընկերիս եւ
բարեկամիս սիրուն եւ առողջ տղոցը հետ շրջագայ-
ութեան ելանք։ Շատ հետաքրքրական տեղ էր
մեր գտնուածը։

Այս բլուրն իր ամբողջ տարածութեան վրայ
մինչեւ ծովեզերք կը վերաբերէր հայ այրի կնոջ
մը՝ որ Սուխում կը բնակէր, որմէ բարեկամս Պր.
Կ. վարձած էր այս ամբողջ գետինը։ Իսկ ինքն իր
կողմէն նոյնը մաս առ մաս վարձու էր տուած տաճ-
կաստանցի հայ գաղթականներուն՝ մէկ դեսեատենի
համար տարեկան 40 ռուբլի առնելով։ Տաճկաս-
տանի Հայոց դէպ ի Կաւկասիոյ ծովեզերքը գաղ-
թականութիւնը թէեւ 60ական թուէն սկսած՝
բայց մանաւանդ վերջին տասնեակ տարեաց մէջ
բաւական ընդարձակ չափեր ստացած է։ 1877ի
ռուս-տաճկական պատերազմին ծանօթ ելքն ա-
ռիթ տուաւ բազմաթիւ հայ գիւղական խմբերու

ամբողջապէս տեղափոխուիլ դէպ ի Կովկաս։ Ոմանք կանխաւ յատուկ պատգամաւորներ ուղարկեցին 1879ին եւ 80ին, որոնք եկան շրջագայեցան Կովկասիոյ զանազան կողմերն եւ յատկապէս Բաթումի նահանգն եւ Սուխումի գաւառն՝ յարմար տեղ գտնելու համար իրենց հաստատութեան։ Բարեբախտաբար այն պատգամաւորներէն շատերն ձախողութեան մատնուեցան. ապա թէ ոչ՝ այն ժամանակին ընդհանուր տրամադրութիւնն այնպէս էր, որ եթէ գաղթականութիւնն ընդհանուր համակրութիւն գտնէր այս կողմը, Սեւ Ծովի տաճկական եզերաց վրայ բնակող հայոց կարեւոր մի մասը անշուշտ այս կողմն կը փոխադրուէր։ — Բայց եւ այնպէս՝ շատերը մասնակի յաջողութիւն գտան, գաղթեցին եւ այժմ այստեղ կատարեալ հաստատուած են։ Իրենց համեմատաբար անդորր վիճակը պարտական են մեծաւ մասամբ իրենց արուեստին։ Այս գաղթականներն ամէնն ալ ծխախոտի մշակութեամբ կ'ապրին՝ մեծ կալուածատէրէն հողեր վարձելով այդ նպատակի համար։ Գաղթականաց ընդհանուր թիւը Կովկասիոյ ծովեզերքի վրայ, Սուխումէ սկսեալ մինչեւ Եկատերինոդար, 1000 ընտանիքէ պակաս չէ։ Սոքա բոլորն ալ առանձին խմբերով կ'ապրին՝ 40—100 տնէ բաղկացած։ Իրենց հայրենակիցներուն այս յաջողութիւնը տեսնելով՝ Փոքր Ասիոյ գաւառներէն շատ յաճախ հայ պանդուխտներ կու գան կը պատսպարուին այս գաղթականներու քով։ Պանդուխտներն այս վերջիններուն քով բանուորութիւն կ'անեն՝ 70 կոպեկ մինչեւ 1 ռուբլի օրավարձով՝ ապրուստի ծախքէն ալ ազատ, որ գրեթէ բարեբախտութիւն մի կը համարուի այս թշուառներուն համար։ Պանդուխտներն երբ փոքր ի շատէ գոհացուցիչ գումար ձեռք կ'անցընեն՝ կը դառնան իսկոյն հայրենիքն, ուսկից ուրիշներ՝ շատ անգամ իրենց ազգականներէն՝ կու գան նոցա տեղը գրաւելու եւ այսպէս

կը շարունակուի։ Գաղթականներն ալ շատ խղճով եւ հիւրասիրութեամբ կը վարուին այս պանդուխտներուն հետ։

Պր. Կ.ի կալուածին վրայ տեղաւորուած էին 45 ընտանիք այս գաղթականներէն, որոնք ամէնն ալ ունէին իրենց բաւականաչափ հողերն եւ եռանդեամբ կ՚աշխատէին ծխախոտի մշակութեան։ Երբ ծխախոտը կը հաւաքեն եւ պէտք եղած պատրաստութիւնները կատարելէ վերջը՝ որոնց մէջ միշտ առանձին հոգացողութիւն եւ ճարտարութիւն ցոյց կու տան, առանձին հակեր կը կապեն, զատելով 1, 2րդ եւ 3րդ տեսակները, գաղթականներն ազատ շունչ կ՚առնուն եւ կը սպասեն վաճառառուի գալուն։ Վաճառականներն, այսինքն ծխախոտի գործարանաց ներկայացուցիչները կամ միջնորդները գիտեն արդէն թէ ինչ ժամանակ ծխախոտը պատրաստ կը լինի, եւ իրենք անձամբ կու գան այստեղ ապրանքը կը քննեն եւ կը գնեն։ Ընտանիք կայ որ տարին 1000—1500 րուբլիի (120—170 Օսմ. ոսկ.) ծխախոտ կը ծախէ։ Ընդհանրապէս հաշուելով՝ միջին հաշուով՝ այս գաղթականներէն իւրաքանչիւր տուն տարեկան 3—400 րուբլիի չափ զուտ արդիւնք կ՚ունենայ, որ անշուշտ աղքատ գիւղացւոյ համար շատ յաջող հասոյթ է։ Ծխախոտը կը ծախուի այստեղ՝ ըստ տեսակին՝ պուդը (16 քիլոյ) 6—12 րուբլի։

Վերոյիշեալ 45 ընտանիքը՝ յատկապէս իրենց համար մատուռ եւ դպրոց էին կանգնած։ Երկուքն ալ խեղճուկ շէնքեր էին՝ առանց ներքին եւ արտաքին զարդի, առանց աւելորդ պատկերներու, վերջին աստիճանի պարզ եւ աղքատիկ. բայց բաւական էր արդէն՝ որ երկուքին ալ կարեւորութիւնը զգացեր էին։ Փոքր ազդեցութիւն չէին ունեցած պր. եւ տ. Կ. այս գործի մէջ, որոնց շնորհիւ քանի մի անյարմարութիւններ ալ բարձուած են եղեր։ Իմ հոն գտնուած միջոցին գաղթականներն

իրենց գիւղակից քահանայ մ'ունէին, որ նոյնպէս պանդուխտ էր, եւ ազգականներ ալ ունէր գաղթականաց մէջ։ Պէտք էր տեսնել թէ ինչ մեծ սիրով եւ ջերմեռանդութեամբ՝ գաղթականները կը լցուէին այն եկեղեցւոյ տեղ ծառայող հիւղիկը ծունր դնելով չոր հողի վրայ եւ սրտաբուղխ աղօթքներ կ'ուղղէին իրենց առօրեայ աշխատութենէն դադարած՝ կիրակի եւ տօն օրերը կամ նաեւ երբեմն լուր օրերը երբ դաշտային պարապմունքէ ազատ էին։ Ուսուցիչը նոյնպէս իրենց գիւղացի տիրացու մի էր, որ նախկին գիւղական դպրոցներու կարգով քերական, հեգարան եւ սաղմոս էր տուած իւր աշակերտաց ձեռքը. Ջանք կ'անէր նոյն իսկ գրութիւն, թուաբանութիւն ալ սորվեցընել։ Թէեւ անկարգ, թէեւ խեղճ, բայց դարձեալ ուրախալի էր տեսնել, որ գաղթականաց որդիք ընթերցանութեան պիտոյքը լրացընելու մէջ չէին ծուլանար։ Այս պարագայն ուրախալի է մանաւանդ այն տեսակէտով. որ գիւղացիք երբ փոքր ի շատէ աւելի բարեկեցիկ վիճակ ձեռք կը բերեն, իրենց դպրոցին ալ անտարբեր չեն գտնուիր։ Այսպիսի գաղթականաց ուրիշ խումբ մի Սուխումէն նոյնպէս ոչ շատ հեռու, որ ի սկզբան նոյն ողորմելի դպրոցական դրութիւնն ունէր, այժմ ունի արդէն իր կանոնաւոր ծխական դպրոցը։

Գաղթականաց կանայք թէեւ մասամբ նոյնպէս կ'աջակցին իրենց ամուսիններուն դաշտային աշխատութեան, բայց իրենց գլխաւոր հոգածութիւնը նուիրուած է տնական թեթեւ ստայնանկութեան։ Ծխախոտի մշակութեան ժամանակ ալ՝ գլխաւորաբար կանանց գործն էր ծխախոտի տերեւները թելի վրայ շարելն եւ տեսակները ջոկելն՝ միշտ իրենց ամուսիններուն հսկողութեան տակ։ — Խաղաղութիւնը կը տիրէր այս փոքրիկ գաղթականութեան մէջ, ուր ամենայն ոք կը գործէր սկսեալ ծերունիէն մինչեւ փոքր երեխայն, իր չափին եւ կարողութեան համեմատ։

Նոյն օրն ճաշէն վերջը քահանայն եւ գաղթականաց տանուտէրը մեզ յայց եկան։ Պր. Կ. նոցա մէջ կարգ ու կանոն էր դրեր՝ նշանակելով առանձին մեծաւոր (տանուտէր) եւ իրեն օգնական, որոնք այս փոքր համայնքին ներքին գործոց տեսչութիւնն ունէին իրենց ձեռքը՝ միջնորդ եւ նաեւ դատաւոր հանդիսանալով վէճերու կամ տարաձայնութեանց ժամանակ։ — Թէ քահանայն եւ թէ տանուտէրը գոհութիւն ցոյց կու տային իրենց վիճակէն։ Երկար խօսեցանք այն պարագաներուն վրայ, որոնց պատճառով այս խեղճերը հարկադրուած են եղեր թողնել իրենց ծննդավայրը եւ տեղափոխուեր են այստեղս։ Ծննդավայրի սէրն այսու ամենայնիւ անտարբեր չէր թողած զիրենք բոլորովին, եւ միշտ տխուր միջարկութիւններ կ'արձակէին իրենց լքած բնավայրը յիշած ատեն։ Աւելի խիստ ցաւ կը զգային պանդուխտներն, որոնք բաց ի այն հանգամանքէն որ իրենք վտարանդի էին, այնտեղ հեռուն թողած ընտանիք եւ սիրելիներ, բայց եւ շարունակ կը զգային այն ծանր բեռն, որ դրուած էր իրենց ուսին վրայ. պարտքի տակ ճնշուած էին, եւ դեռ անկարող պարտք վճարելու՝ անընդհատ տխուր տեղեկութիւններ կ'ընդունէին այն տեղէն, ուր իրենց մերձաւորքը կ'ապրէին. տեղեկութիւններ, որոնք չքաւոր եւ պարտապան անձանց թշուառութեանց նկարագրութիւնները միայն կը կազմէին։

Շատ անգամ մեղադրուած է Տաճկաստանի հայ հասարակութիւնը թէ պանդխտութեան ցաւով վարակուած է. բայց ամենօրեայ փորձերը կը վկայեն, որ Հայերը գոյութեան պայմաններուն դառն կացութենէն միայն կը մղուին վտարիլ իրենց բնավայրէն, եւ ուր որ երթան, ուր որ բնակութիւն հաստատեն՝ երբեք չեն կարող մոռացութեան տալ իրենց ծննդավայրը։ Պէտք է տեսնել թէ ինչ սրտաշարժ բերկրութեամբ կ'ընդունին ամէն ան-

գամ որ ծանօթ հայրենակից մի լուր կը բերէ իրենց այն տեղէն։ Պանդխտութիւնը պիտի շարունակուի, յառաջ պիտի բերէ նոր գաղթականութիւններ՝ մինչեւ որ կենաց հանգամանաց բարեփոխութիւն ըլլայ։ Պանդխտութիւնը դեռ ժամանակաւոր է. նա քանի մի տարուան միայն անջատումն է բնավայրէն, բայց գաղթականութիւնը՝ պանդխտութեան վերջնական ձեւն է արդէն եւ գաղթականութիւնն է, որ սպառնական դիրք սկսած է բռնել, վասն զի կը կատարուի այժմ անձայն, անշշուկ եւ փոքր չափերով, բայց այս փոքր չափերը տասնեակ տարւոյ մէջ զգալի եւ սոսկալի թիւ մի կ'ամբողջացընեն։

Օրը սկսած էր խոնարհիլ արդէն, երբ ես հրաժեշտ տալով իմ բարեկամներուս եւ գաղթականութեան՝ դիմեցի դէպ ի Սուխում՝ բարեկամիս մէկ աբխազ ծառային ընկերակցութեամբ։ Օդը բոլորովին հանդարտ եւ ամառնային եղանակն իւր ամբողջ իշխանութեան մէջ էր։ Ես եւ իմ Աբխազս արագ կը ձիավարէինք այնտեղ՝ ուսկից նախընթաց օրը Նովօ-Աֆօնի կառքը բերած էր զմեզ։ Ծովափանց գեղեցիկ տեսարաններ կը պարզուէին մեր առջեւն. շողշողուն լուսնեակն իր արծաթափայլ շառաւիղները կ'արձակէր մեր անցած տեղերուն վրայ։ Խորին հանդարտութեան մէջ՝ երբեմն ճանապարհին մի կամ միւս կողմէն՝ հօտէն ետ մնացած եզան կամ կովի բառաչումները կը լսուէին։ Հեռուն, շատ հեռուն խաղաղ բաց ծովի վրայ շոգենաւի կմախք մի կը տեսնուէր, որ հազիւ նշմարելի ընթացքով յառաջ կը խաղար արծաթափայլ փրփուրներ գոյացընելով իւր շուրջը։ — Երբ Սուխում հասանք՝ քաղաքը վաղուց վառած էր իր լապտերներն եւ անհամբեր կը սպարէր շոգենաւին, որ իրեն ուղեւորներ պիտի բերէր կամ իրմէ տանէր։ Երկու ժամ պր. Դէ Սիմոնի տունը նոյն սիրով հիւրընկալութիւն վայելելէն ետեւ նստայ Սուխումի մէջ

կառքի տեղ ծառայող ձիաքարշ սայլակն եւ իջայ ծովեզերք, ուր շոգենաւն արդէն դադար առած ուղեւորներուն գալուն կը սպասէր: Շոգենաւը չէր կրնար նաւամատոյցին մօտենալ, եւ մենք յատուկ նաւակներով դիմեցինք դէպ ի նաւ, ուր ծածկութին վրայ նաւահանգիստն եւ իւր փոքրիկ նաւախումբը կը դիտէի, երբ ճիշդ կէս գիշերին նաւն իր ընդհատած քայլն վերստին սկսելով՝ բաժնեց զմեզ Աբխազիոյ ծովափունքէն: Իսկոյն ելեկտրական լուսաւորութիւնը հանդուցին նաւին վրայ եւ ես սենեակս քաշուեցայ:

---

## Ե.

## ՄԻՆՉԵՒ ՆՈՎՈ-ՌՈՍԻՅՍԿ

Սուխումէն մինչեւ Նովո-ռոսիյսկ քաղաքը՝ Կաւկասեան ծովեզերքն իր բնական գեղեցկութեամբն հազուագիւտ երեւոյթ կ'առնու: Կանաչազարդ բլուրները մին միւսէն ետք հետզհետէ բարձրանալով իրենց կռնակը տուած են լեռներու, որոնք իրենց գագաթան մշտնջենաւոր ձիւնովը զարմանալի հակապատկեր կ'ընծայեցընեն ստորոտին եւ շրջակայից դալարագեղ կենդանութեան: Այս լեռներն՝ ինչպէս Չիսա-խակ, եւ Նուգայգուս իբր 10 հազար ոտք բարձրութիւն ունին: Նոյն իսկ ծովային ալիքներն կարծես կ'ուզեն զգացընել այստեղ իրենց ոռոգած եզերքին մեղմութիւնն, եւ քիչ անգամ կը խռովեն ծովու մակերեւոյթին խաղաղութիւնն. եւ եթէ մինչեւ իսկ երբեմն ահագին դիզք առած գան շրջապատել նաւն, այնպէս մեղմ կը բախեն, որ նաւը հազիւ աննշան ցընցում մի կը զգայ, եւ ապա իսկոյն կը լուծուին կը ծաւալին հանդարտ երեսին վրայ: Անտառապատ բլուրներն, որոնց գլուխներուն վրայ յաճախ ձեան նման սպիտակ ամպեր հանդարտիկ կը տատանէին, ծնունդ կու տան բազմաթիւ մեծ ու փոքր վտակ-

ներու, որոնք օձապտոյտ գալարումներով կ'իջնեն եզերքին հարթութեան վրայ, կ'ողողեն դաշտավայրի կանաչն ու կը հոսեն դէպ ի ծով։ Սուխումէն մինչեւ Նովո-ռոսիյսկ ուրիշ քաղաք չկայ, բայց կան քանի մ'ընդարձակ գիւղեր, ինչպէս՝ Գուդաուտա, ուր, ինչպէս եւ մօտակայ ծովեզերեայ գիւղերը՝ մեծ մասամբ կը ղբաղին դեղձին ձկան որսով, որուն եղը կը հանեն եւ մեծ քանակութեամբ կ'ուղարկեն ուրիշ ծովեզերեայ քաղաքներ։ Այս եղը կը գործածուի գլխաւորաբար վառելու եւ համեմատաբար թանգ չէ. 2 ռուբլ 1 պուտը (16 քիլօ = 5 ֆրանք)։ Ադլէր, կամ ուղղագոյնը Արդիլէր, որուն հրուանդանին վրայ Ռուսներն 1837ին Հոգւոյն Սրբոյ անուամբ մարտկոց էին կանգնած, բայց զոր 1855ին վերուցին. այս հրուանդանը կը կոչուի նաեւ Կոնստանդինովսկի, վասն զի աստ մօտերը՝ մեծ իշխանն Կոստանդին՝ (Ռուսաց այժմեան կայսեր հօրեղբայրը) ընդարձակ կալուած մ'ունի։ Սօչի՝ համանուն գետակի բերնին վրայ հիմնուած, որու կլիման իւր մաքրութեամբն, ծովն իր հանդարտութեամբն եւ բարեբեր այգիներն իրենց ընտիր խաղողովն՝ ամառ ժամանակ բազմաթիւ ուղեւորներու հրապոյր կ'ազդեն եւ շատ զուարճալի բնակարան ու լողարան կը ներկայացընեն։ Սօչիի շուրջը նոյնպէս ընդարձակ մշակութիւն կայ ծխախոտի. եւ կը լսուի միանգամայն թէ արքայական (կայսեր անձնական) կալուածոց պաշտօնէութիւնն այստեղ միտք ունի թէյի մշակութիւն եւս փորձելու։ Պսէզուապէ, ուր նշանաւոր է ֆէֆօլ ձկան որսը. այս ձուկը շատ տարածուած կերակուր է Սեւ ծովու ամբողջ եզերքին բնակչաց համար։[1] Տուապսէ՝ կանաչապատ բարձրաւանդակի վրայ հիմնուած՝ շատ ակնահաճոյ

---

[1] Այս գիւղին շատ մօտ՝ Լազարեվսկի ամրութեան մէջ, որ այժմ կործանած է, կը գտնուի Օդոյեվսկի ռուս բանաստեղծին գերեզմանը։

տեսարան կ'ընծայէ, այստեղ նոյնպէս կան ընտիր խաղողի այգիներ։ Ջուբղա, որ նախնաբար ամրութիւն մի էր՝ Վելեամինովսկի կոչուած, ծովի կողմէն փակուած է գեղեցիկ կաղնեաց անտառով, եւ շրջապատուած է լեռնային փոքրիկ բնակավայրերով մերձակայ բլուրներու վրայ հաստատուած,[1] եւ վերջապէս Փելենջիկ, որ փոքր նաւահանգիստ մ'ալ ունի։

Սուխումէն մինչեւ Նովո-ռոսիյսկ՝ ծովեզերքին ամբողջ երկայնութեան վրայ — որ իբր 80 քիլոմետրի տարածութիւն է — այս տարի նոր, ընդարձակ խճուղի մը կառուցուեցաւ։ Երբ Ռուսաստանի ներքին նահանգներուն մէջ սովը սկսաւ ահագին ընդարձակութեամբ իշխել եւ բնակիչներն անթիւ քանակութեամբ խումբ խումբ դիմեցին դէպ ի հարաւ, մանաւանդ Կաւկասիա, կառավարութիւնն այն քաղցածներուն զբաղմունք եւ միանգամայն իրենց օրապահիկն հայթայթելու միջոց տալու նպատակով՝ որոշեց Սեւ ծովու այս եզերքին վրայ կանոնաւոր ճանապարհներ շինել,

1 Ջուպղային մօտիկ Արխիպ-Օսիպովկա անունով գիւղ մ'ալ կայ, որու հիմնարկութիւնը շատ հետաքրքրական է։ 1840ին երբ անընդհատ յարձակումներ կ'ըլլուէին Ռուսաց այս ծովեզերքին վրայ. հիմնած ամրութեանց վրայ, Ուբըխ եւ Շապսուղ կոչուած ցեղերը մեծ ոյժով յարձակեցան այն տեղ Միխայլովսկի ամրութեան վրայ, որուն պաշտպանութեան համար կար մօտ 400 հոգւոյ փոքր խումբն միայն։ Խմբին հրամանատարը քաջութեամբ պաշտպանելով ամրոցը անհամեմատ բազմաթիւ թշնամւոյն դէմ, երբ վերջապէս հասեր է վերջին ժամը, որ այլ եւս հնար չկար դիմադրութեան, որոշեր է ամրոցին վառօդի շտեմարանին կրակ տալ, փոխանակ ամրոցը թշնամւոյն յանձնելու։ Բայց հարկաւոր էր մէկն, որ յանձն առնէր ակներեւ ինք զինք զոհել ու կրակ տալ վառօդանոցին։ Հասարակ զինուոր մը՝ Արխիպ Օսիպով՝ առաջարկեր է ինք զինք եւ ծանրապէս վիրաւորուած հրամանատարին նշան տալուն՝ բռնկցուցեր է վառօդը։ Ամրոցին փլատակներուն տակ մնացեր են յարձակողներէն 2000ի չափ. իսկ Ռուսներէն մէկ քանի զինուոր միայն ազատեր են, որոնք եւ պատմեր են այս դէպքը։ Ահա այս անցքին ի յիշատակ այստեղն այնուհետեւ որոշուեր է անուանել Արխիպ-Օսիպովկա։

որոնց պակասութիւնը շատոնց արդէն զգալի էր եղած եւ գործոյն ամբողջական հոգին ու տեսչութիւնը յանձնուեցաւ Ռուսաց անդրկասպեան երկաթուղւոյն կառուցանող նշանաւոր Աննենկով զօրապետին։

Երկարատեւ կռիւներ են ունեցած Ռուսներն այս կողմերը գրաւելու համար. տեղական զանազան ցեղերն ոչ մի հանդարտութիւն կու տային այն փոքր զօրախումբերուն, որոնք ծովեզերաց այլեւայլ կէտերուն վրայ ամրացած՝ երկիրը կը պաշտպանէին ներքին եւ արտաքին թշնամիներու դէմ։ 1864ին, ուրեմն հազիւ 30 տարի յառաջ միայն, վերջնական տիրապետութիւնը տեղի ունեցած է։

Վերջին ռուս-թրքական պատերազմէն ետքը, երբ Տաճկաստանէն բազմաթիւ յոյն եւ հայ գաղթականներ սկսան կամաց կամաց հաստատուիլ այս տեղերը, ռուսական կառավարութիւնն, ինչպէս կ'երեւայ, ձեռնտու չհամարեցաւ այլազգի տարեր տարածուիլն այս կողմերը, եւ Բաթումէն սկսեալ՝ բովանդակ Կաւկասեան ծովեզերաց վրայ որոշած է ընդարձակ գաղթականութիւն մը հիմնել բուն ռուս տարրէ, զոր կը մտածուի գաղթեցընել ներքին նահանգներէն։ Այս նպատակաւ արդէն մեծամեծ ծրագիրներ եւ խորհրդակցութիւններ կան եղած։ Կառավարութիւնը 250 հազար տէսիատին արքունի հող է յատկացուցած եւ առանձին դիւրութիւններ եւս ծրագրուած են նոր գաղթականութեան համար, բայց՝ որչափ ինձ յայտնի է, դեռ ոչ մի վերջնական եզրակացութեան է յանգած, եւ գործի ալ սկսուած չէ դեռ։

## Զ.

# ՆՈՎՈ-ՌՈՍԻՅՍԿ

Յունիսի 24ին կէսօրէն վերջը ժամը 4ն էր, երբ հասանք Նովո-ռոսիյսկի դիմաց: Ծովը հայելւոյ նման հանդարտ էր, ոչ մի շարժում անհանգիստ կ'անէր անոր կանաչագոյն երեսը, բաց ի մեր նաւուն գործած պատառուածքէն, որ սակայն թեթեւ փրփուր միայն կը հանէր երկու եզրներուն վրայ: Առանձին զուարճութիւն էր ինձ՝ կանգնիլ նաւուն ծածկութին վրայ եւ կողէն յեցած՝ դիտել խաղաղ ու ջինջ թափանցիկ ջրին խորերը: Ուղեւորի աչքին զարկած առաջին հրապուրիչ տեսարանն էր Նովո-ռոսիյսկի ցեմենտի (ciment) ահագին գործարանն, որուն շուրջը շարուած կոնաձեւ քարային զանգուածները ճիշդ փեթակներու ստուար խումբի մը երեւոյթը կ'ընծայեն: Այս գործարանը շատ ընտիր տեսակ ցեմենտ կը հանէ, որ կը գործածուի բովանդակ Կաւկասիոյ՝ մանաւանդ պետական եւ հասարակական բոլոր շինութեանց մէջ եւ կրնայ համարձակ մրցիլ անգղիական Portlandներու հետ: Եւ ապա հետզհետէ պարզեցաւ մեր աչքին առջեւ քաղաքն իր երկու կողմէն դէպ ի ծով յառաջացած նաւամատոյցներովն, որոնց մէջտեղէն անցանք եւ մօտեցանք քաղաքին: Նովո-ռոսիյսկ բաւական գեղեցիկ դիրք ունի, եւ հեռուէն մանաւանդ կոկիկ քաղաք մը կ'երեւայ, բայց երբ մէջը կը մանէ մարդ, այլ եւս նոյն տպաւորութիւնը չի մնար, վասն զի շատ հեռու է մաքրութեան տիպար լինելէ: Շոգենաւէն դուրս ելլելով քաղաքին ծանօթանալու համար սկսայ շրջագայել: Բուն քաղաքը բաւական հեռու է, այսինքն 3 քիլոմետր՝ այն տեղերէն, ուր առեւտրական կենդանութիւն կը տիրէ, որ են՝ նաւամատոյցն ու երկաթուղւոյ կայարանը: Երկաթուղին երկյարկեան քարաշէն կամուրջի վրայէն անցնելով՝

կու գայ կը հասնի նաւամատոյց, ուր եւ ուղղակի կու տայ նաւերուն իր բեռը։ Այստեղ հաստատուած է ելեկտրական լուսաւորութիւն որ մեծ դիւրութիւն է գիշեր ժամանակ բեռանց բարձումներ կատարելու։

Նովո-ռոսիյսկ եւս՝ Բաթումի նման՝ շատ արագ աճած է։ Քաղաքին բուն զարգացումը կը սկսի երկաթուղւոյ բացմանէն ետեւ, այսինքն 1888ին։ Ինչպէս որ Բաթումի գլխաւոր կենդանութիւն տուողը քարիւղն է, այսպէս ալ Նովո-ռոսիյսկ ունի իւր յատուկ վաճառականութեան առարկան, որ է հացահատիկը։ Տարեկան մինչեւ 20 միլիոն պուդէն աւելի ցորեն կ'ուղարկուի[1] այս նաւահանգստէն եւ թէ երկաթուղւոյ վարչութեան, թէ առանձնական վաճառատներու կառուցած շտեմարանները՝ երկաթուղւոյ գծին երկու կողմն ու նաւահանգստին մօտ՝ Նովո-ռոսիյսկի զարդը եւ հարստութեան աղբիւրը կը կազմեն։ Նովո ռոսիյսկ բոլորովին նոր քաղաք է. հիմնարկութիւնը կատարուած է 1836ին միայն, բայց մինչեւ վերջին 10 տարին աննշան փոքրիկ քաղաք էր։ Այս տեղս յառաջ Ցէմէսի բերդ կը կոչուէր՝ յանուն Ցէմէս գետին, որ Նովո-ռոսիյսկի նաւահանգիստը կը թափի եւ ապա՝ երկու տարի վերջը փոխուեցաւ Նովօ-ռօսիյսկի (որ Նոր-ռուսական կը նշանակէ)։[2] Իր նաւահանգիստը՝ Սեւ ծովի արեւելեան եզերքին վրայ լաւագոյնն է. բայց մեծ անյարմարութիւն մ'ունի, որ է հիւսիս-արեւմտեան հովը (N. W.)՝ մանաւանդ ձմեռ ժամանակ,

---

1 1893ին 25 միլիոն պուդ հացահատիկ է հանուած· նաւական շարժումն էր ցորենի բեռան համար 240 շոգենաւ եւ 10 առագաստաւոր նաւ։

2 Նովո-ռոսիյսկին կից, դէպ ի հարաւ կ'երեւան Սուջուգ-գալէ قلعه سوجق բերդին հետքերը, զոր հիմնած են Թուրքերը 1722ին։ Հնագէտները կը կեն թէ այսարծ տեղն է եղած Ստրաբոնի յիշած Բաթա քաղաքը։

շատ խիստ կը փչէ, եւ բաւական անհանդարտութիւն կը պատճառէ նաւահանգստին մէջ ապաստանած զանազան նաւերուն։ Ծովի մէջ երկու կողմէն յառաջացած քարակոյտ նաւամատոյցներէն (môle) մէկն արդէն 400 սաժէն երկարութիւն ունի, եւ միւսը 300. բայց երկուքն ալ պիտի շարունակուին մինչեւ 500 սաժէնի, եւ այն ժամանակ նաւահանգստին անցքը կամ մուտքը պիտի ունենայ ոչ աւելի քան 175 սաժէն լայնութիւն։

Խելօք կառապան մ'ունէի քաղաքը շրջագայած ժամանակս, որ մի առ մի բոլոր պարագաներով կը պատմէր քաղաքին այս կամ այն մասին անունը, անցեալը, ներկայն եւ մինչեւ անգամ գուշակութիւններ կ'անէր ապագայի հաշուին ալ։ Ամենալաւ փողոցն է Серебраковская улица կոչուածն, ուր իրօք բաւական գեղեցիկ, երկյարկեան շինութիւններ կան։ Հողի գինը՝ մանաւանդ վերջի տարիներս՝ սաստիկ բարձրացած է, որուն հետեւած են նաեւ շատ ուրիշ առարկաներ։ Նովո-ռոսիյսկ թէ՛ այս եւ թէ՛ հիւրանոցներու եւ վաճառեղէններու կողմէն այնպէս բարձր գներ ունի՝ ինչպէս Բաթում, թէեւ այս վերջնոյս չափ առեւտրական կենդանութիւն եւ շարժում չունի։ Ուրիշ տարբերութիւն մ'ալ այս երկու նորածին առեւտրական քաղաքներուն մէջ այն է՝ որ Բաթում ինքն իր գրեթէ բովանդակ առեւտրական գործունէութիւնն իր մէջն ունի, իր բնակավայրին շուրջը, իր տան մօտ, իր փողոցին վրայ. հոն նոյն իսկ քարիւղի գործարաններն իրենց ահագին երկաթեայ պահեստներովն (réservoirs) ոչ թէ առանձին շրջան կը կազմեն, այլ գրեթէ բնակարաններու շարունակութիւնն են անընդհատ, գործարանական եւ առեւտրական կենաց եւ տնականին մէջ կամ ոչինչ կամ շատ փոքրիկ անջրպետ միայն թողլով, ուր այստեղ՝

կատարելապէս հակառակն է։ Քաղաքն ամբողջ քիլոմեթրներով հեռու պահուած է նաւահանգստի շարժումէն։ Նաւահանգիստն ու նաւամատոյցները գրաւուած են երկաթուղւոյ զանազան շտեմարաններով եւ “Մակլարէն ու Գրէյշիստ„ երկաթի ձուլարան-գործարանով։ Բնակութիւններն հեռու են աղմուկէն, եւ շատ թոյլ ու հեռաւոր կապ մը միայն կը պահեն քաղաքին առեւտրական շարժմանը հետ։ Ուրիշ տարբերութիւն մ'ալ Բաթումէն աս է, որ երբ Բաթում իրաւամբ կը պարծենայ իր գեղեցիկ քաղաքական պարտէզներովն եւ առ հասարակ առատ բուսականութեամբը, այստեղ ընդհակառակն լերկութիւնն է որ կը տիրէ։ Ծովէն հեռու՝ քաղաքին մէկ ծայրը՝ բլրոյ մը վրայ կայ թէպէտ քաղաքական փոքր պարտէզ մը, բայց այնտեղ ալ օդն այնքան չոր է՝ որչափ փողոցի մէջ. կենդանութիւն, զովութիւն չկայ ամենեւին։ Ի՜նչչափ տխուր է ի հարկէ քաղաք մ'ուր բուսականութիւնն աղքատ է, թէեւ առջեւը ծով ալ ունենայ։

Այստեղ՝ դեռ երկաթուղւոյ ճիւղ չկառուցուած՝ “ռուսական Ստանդարդ = Étendard russe անունով ընկերութիւն մ'եկած հաստատուած էր, որուն գլխաւոր գործքն է մօտակայ նաւթահորերը բանեցընել եւ այստեղի նաւթէն հանքային իւղ (huile minérale) հանել։ Ընկերութիւնն այս նպատակի համար Նովո-ռոսիյսկի մէջ՝ քաղաքէն փոքր ինչ հեռու՝ 64 դեսեատին հող գնեց, եւ ահագին դրամագլուխ ծախսեց շինութիւններու եւ այս ձեռնարկութեան ուրիշ պիտոյքին համար։ Այս տեղս փոքրիկ աւան մի է այժմ՝ 30ի չափ գեղեցիկ տներով եւ փողոցներով, որոնք ծառէ ալ զուրկ չեն։ Թէ՛ բուսականութեան եւ թէ՛ առ հասարակ մաքրութեան մասին հիմնադիր Գաղղիացիք օրինակ տալու էին բուն քաղաքին։ Ռուս գործաւորներու եւ պաշտօ-

նեայներու դիւրութեան համար նաեւ ռուսական մասուռ մ'ալ կառուցած է ընկերութիւնը եւ ունի նմանապէս սեպհական փոստ-հեռագրական կայարան, հեռախօս, պանդոկ, ճաշարան եւ այլն. իսկ նաւթի համար մի քանի ընդարձակ պահեստներ: Բայց բոլոր այս մեծամեծ պատրաստութիւններով ալ՝ ընկերութեան գործերը, ինչպէս կը լսուի, շատ յաջող չեն երթար: — Այստեղ անցողակի յիշեմ, որ առ հասարակ մեր Կովկասիոյ մէջ գաղղիական ընկերութեանց շահագործութիւնները կարծես միշտ անյաջողութեան կը մատնուին, թէեւ երբեք ծախք եւ դրամագլուխ չի խնայուիր իրենց կողմէն: Բաց ի այս նաւթային գործէն, երկու իրարմէ բոլորովին տարբեր ձեռնարկութիւն եւս ունէին Գաղղիացիք, որոնց մէկը վերջացաւ կատարեալ անյաջողութեամբ եւ գործերու դադարմամբ. իսկ միւսը՝ թէեւ կը շարունակէ դեռ, բայց մինչեւ հիմայ անընդհատ վնասէ աւելի ոչինչ է տեսած: Մի ուրիշ ընկերութիւն անտառային գործ սկսած էր Բաթումէն ոչ շատ հեռու Օչէմչիրի մօտ (Սուխումի գաւառ), եւ մեծ քանակութեամբ զանազան փայտեր եւ մանաւանդ երկաթուղւոյ ձողեր (traverses) կը պատրաստէր եւ դրսերը կ'առաքէր: Քանի մի տարի շարունակ այն անտառները բանեցընելէն եւ միշտ վնասուելէն ետեւ, վերջապէս ընկերութիւնն ստիպուեցաւ գործը բոլորովին դադարեցընել: Ուրիշ աւելի զօրեղ ընկերութիւն մի էր հիմնուած Փարիզ՝ Թիֆլիսի նահանգին Ախտալայի պղնձի ու արծաթախառն կապարի հանքերը շահագործելու: Բայց Ախտալայի մէջ ահագին գումար ծախսելէն վերջը՝ հարկադրեցաւ թողուլ այնտեղն եւ մերձակայ Ալահվէրդի կոչուած տեղւոյն պղնձահանքները գնելով իր գործունէութիւնն այնտեղ փոխադրել, սակայն՝ որչափ ինձ յայտնի է, այստեղ ալ իր գործերը վարդագոյն չեն: Գաղղիացւոց այս

ձեռնարկութիւնը՝ եթէ ոչ հանքային ճիւղին, գոնէ կաւկասիոյ հնագիտութեան ուսումնասիրութեան փոքր օգուտ մը պատճառեց։ Ընկերութեան կաւկասիոյ ներկայացուցիչն եւ գործերու վարիչը՝ պր. Դր. Մորգան՝ իր պաշտօնէն ազատ ժամանակները պեղումներու եւ այլ հնագիտական ուսումնասիրութիւններու պարապելով գեղեցիկ երկասիրութիւն մը հանեց, որ տպուած է Փարիզ. (De Morgan J. — Mission scientifique au Caucase. T. I. Les primiers âges des métaux dans l'Arm. russe. T. II. Recherches sur les origines des peuples du Caucase. Paris, 1889.) Հոս տեղը չէ քննելու գաղղիական ընկերութեանց այս անյաջողութեան պատճառքը. տեղական զանազան հանգամանքներ, յարմար ցամաքային ճանապարհներու պակասութիւն, ընկերութեան վարիչ մարմնոյն կամ կեդրոնին հեռաւորութիւնն՝ այս պատճառներու կարգէն են։ Բայց անկարելի է չխոստովանիլ, որ այս երկու ձեռնարկութեանց անյաջողութիւնը խրախոյս լինելէ շատ հեռու է ուրիշ համանման ընկերութիւններու։

Նովո-ռոսիյսկի բնակիչներն են մեծաւ մասամբ Յոյնք, Ռուսք, Գերմանացիք, Հայք, նաեւ Բոհեմիացիք։ Հայոց ընդհանուր թիւը 200ը չ'անցնիր, որոնց մեծ մասը շրջակայ քաղաքներէ եւ գիւղերէ եկած այստեղ վաճառականութեամբ եւ արհեստով կը պարապին։ Բայց հացահատիկներին ընդարձակ առեւտուրը գլխաւորաբար Յունաց եւ Հրէից ձեռքն է։ Հայերն ոչ եկեղեցի ունին, եւ ոչ դպրոց՝ այստեղ։ Ռուսներն ունին միայն մի փոքր եկեղեցի եւ հիմայ ալ հիմն են դրած ընդարձակ մայր եկեղեցւոյ։

Սուխումէն նաւ մտած ատեն՝ տոմսակ առած էի միայն մինչեւ Նովո ռոսիյսկ, որովհետեւ մինչեւ Սուխում ծովը զիս այնպէս էր նեղած, որ որոշած էի ալ ծովով չշարունակել ճանապարհորդու-

թիւնս, այլ երկաթուղին ձեռք առնուլ եւ ցամաքային կլոր շրջան մ'ընելով՝ այնպէս հասնիլ Օդէսա. բայց Սուխումէն մինչեւ այստեղ այնքան խաղաղ եւ հանգիստ էինք նաւած, որ առանց դժուարութեան դարձեալ հաշտուեցայ ծովին հետ եւ որոշեցի նորէն ինք զինքս յանձնել "Մեծ իշխան Կոստանդին" նաւուն, մանաւանդ որ այլապէս պիտի չկարենայի տեսնել Սեւ ծովու եզերաց նշանաւոր քաղաքներն՝ ինչպէս Թէոդոսիա, Եալտա եւ Սեւաստոպոլ: Դեռ ամբողջ մի ժամ կար մինչեւ շոգենաւի մեկնիլն՝ երբ ես դարձայ եկայ նաւահանգիստը: Ժամը 4 էր, այսինքն ճաշի ժամանակ:[1] Մտայ այնտեղ մօտակայ ճաշարանն, եւ լաւ ճաշած դիմեցի շոգենաւ որ արդէն իր երկրորդ զանգակը կը հնչեցընէր, որ երրորդին մեկնի:

---

## Է.

## ՔԵՐՉ

Կամաց կամաց կը թողունք զԿաւկաս. եւ ահա կաւկասեան վերջին քաղաքն է որ մեր առջեւը կ'ելլէ՝ Անապա, եւ ա՛լ իր գեղեցիկ ծովեզերքը կ'անհետանայ մեր աչքէն: Անապա 10 հազար բնակիչ ունի եւ իր անունն առած է քովի Անապէ գետակէն, որու բերնին մօտ է հիմնուած անցեալ դարուն վերջը: Երբեմն բաւական ամուր բերդ է եղեր, բայց այժմ բնաւ կարեւորութիւն չունի: Այստեղ հազիւ 20ի չափ հայ կայ: — Անապայէն ետքը կը մօտենանք հետզհետէ ի Խրիմ: Առ այժմ ծովեզերքն ամայի է եւ ոչինչ կայ ուշադրութեան արժանի:

---

[1] Այս ռուսական շոգենաւներուն վրայ ընդհանրապէս շատ լաւ կը կերակրեն: Ուտելու ժամերը սովորաբար այսպէս են որոշուած. առաւօտեան ժամը 8ին թէյ կամ կաթով խահուէ, 11ին նախաճաշիկ, 4ին ճաշ եւ երեկոյեան 8ին դարձեալ թէյ զանազան քաղցր խմորեղէններով:

Հասանք վերջապէս Խրիմի առաջին քաղաքը՝ Քէրչ՝ կէսօրուան միջոցին: Շոգենաւը կանգ առաւ քաղաքէն բաւական հեռու, եւ ուրիշ փոքրիկ շոգենաւ մը մօտեցաւ առաւ Քէրչ ելլելու բեռներն եւ ուղեւորները: Ուղեւորներու շարքին մէջն էի ես ալ. չէի ուզեր բնականաբար զրկուիլ Ազախու ծովի նեղուցն եւ մանաւանդ զՔէրչ տեսնելէն, որ այնչափ նշանաւոր պատմական հնութիւններ ունի: Փոքրիկ շոգենաւը տարաւ հանեց զմեզ ռուսական ընկերութեան նաւամատոյցն, ուսկից քանի մը ժամ ետքը նորէն պիտի առնուր զմեզ մեր շոգենաւը դարձնէր՝ նոր ուղեւորներով եւ նոր բեռներով դէպ ի Օդէսա:

Միհրդատեան կոչուած լեռան ստորոտին վրայ զետեղուած՝ Քէրչ քաղաքը կ'իշխէ Եէնի-կալէի նեղուցի վրայ, որ կը միացնէ Սեւ ծովն Ազախու ծովուն հետ: Նեղուցը բաւական նեղ է եւ շատ խոր ալ չէ. երկու կողմէն ալ փոքրիկ հրուանդաններ ներս մտած են՝ իրենց տակն ունենալով ընդարձակ ընդծովեայ ժայռեր: Այս հրուանդանները դեռ կը պահեն իրենց նախկին տիրապետողներէն (Յոյներէն ու Թաթարներէն) առած անունները, առաջին հանդիպած հրուանդանին անունն է Պանայիա (յանուն Աստուածածնի), յետոյ կու գան Թաքըլը, Քըզ, եւ զանազան [illegible], ինչպէս՝ Քարաբուրուն, Քամըշ-բուրուն, Աքբուրուն կամ յն. Ակրոթիրի, որմէ վերջը աչաց առջեւ կը պարզի բուն Քէրչի նաւահանգիստը՝ փոքրիկ խորշ, որուն շուրջն էր հիմնուած նախկին յունական Պանտիկապէոն:[1] Այժմեան Քէրչ անունը

[1] Պանտիկապէա կամ Պանտիկապէոն հիմնուած է Միլեսացիներէ Զ դարուն Ն. Ք. զՔ. եւ նշանաւոր է եղած երբեմն իր ժամանակի քաղաքակրթութեան գլխաւոր վայրերէն մէկը: Միհրդատ Պոնտացին գրաւելով այս գաւառն՝ իր անունը տուած է մերձակայ լեռան, որու ստորոտին վրայ էր քաղաքն. այս լեռան մի կողը դեռ հիմայ ալ "Միհրդատեան աթոռ,, կը կոչուի: Իրմէ վերջն անցաւ Հռո-

ռուսացեալ Կորչէվ կամ Կըչէվ հին անունէն ելած կ'երեւի. Թուրքերը կը կոչէին Չէրչէթ:

Քէրչ նշանաւոր է իւր հնութիւններովը: Խրիմի այժմեան քաղաքներուն մէջ ամէնէն աւելի կարեւոր պատմական անցեալն ունի՝ շնորհիւ այն յունական գաղթականութեան, որ հիմնած էր այստեղ մէկէն աւելի քաղաքներ, որոնք իրենց ժամանակին նշանաւոր էին հարստութեամբ եւ առեւտրով: Քէրչ գալ եւ այս հնութեանց գէթ հարեւանցի կերպով այց չելլել՝ կարելի չէ. այնքան խոր պատմական յիշատակներ թաղուած կան անոնց մէջ: Թողլով դեռ Քէրչի "Ակրոպոլիսը„՝ որ "Միհրդատեան„ լեռան գագաթան վրայ հին գերեզմաններ եւ այլ աւերակներու մնացորդներ ունի եւ դէպ ի լեռ ելլելու համար յատուկ քարաշէն սանդուխ հարթուած է քաղաքին կեդրոնէն սկսեալ. չափազանց հետաքրքրական են Քէրչի շրջապատին բլրաձեւ գերեզմաններն, որոնք ճիշդ եգիպտական պիրամիտներու կը նմանին, բայց շատ աւելի պզտիկ են, եւ ուր բաց ի մարդիկներէ, նաեւ թանկագին իրեր կան թաղուած: Այս դամբաններուն մէջ ամէնէն նշանաւորն է Ալթըն-օբա (ոսկեայ դամբան) կոչուածն, ուր գտնուած է թագուհւոյ դագաղ, բազմաթիւ թանկագին իրեղէններ, ի մէջ այլոց ոսկի պնակներ զանազան ընտիր նկարներով, ոսկի մանեակ, եւ այլն: Այս դամբաններն եւ գերեզմանները իրենց գետնափոր խորշերովն ու անցքերովը երկար ժամանակ զբաղեցուցած են հնագէտներն, որոնք ընդարձակ պեղումներ են կատարած ամէն կողմ, եւ դեռ կը շարունակեն: Այս հնութիւնները պահելու համար 1825ին յատուկ թանգարան հիմնուած էր Միհրդատեան լեռան ստորոտին վրայ՝ Թէսէոսի

---

մէացւոց ձեռքը: Տաճիկները 1475ին տիրեցին, որոնցմէ Ռուսներուն անցաւ 1771ին՝ Քիւչիւք-Կայնարճայի դաշնադրութեամբ:

տաճարի ձեւով, որ շատ գեղեցիկ շինութիւն է. բայց այս շէնքը՝ վերջին Խրիմի պատերազմէն ետքը Ռուսներն եկեղեցի արին՝ ռուսական Ալեքսանդր Նեվսկի Սրբոյն անուան նուիրուած, իսկ թանգարանը փոխադրեցին հասարակ տան մը մէջ։ Արդէն այն ամէնն որ նշանաւոր էր եւ միակ իւր տեսակին մէջ, Քերչ չէր պահուեր, այլ կ'ուղարկուէր Պետերբուրգ, հռչակաւոր Էրմիտաժի թանգարանը։ Իսկ երբ պատերազմի ժամանակ եւրոպական դաշնակից բանակն զՔերչ գրաւեց, Անգլիացիք նուազ չօգտեցան այս հնութիւններէն, եւ թանգարանի իրերէն բաւական մաս մ'իրենց հետ տարին Անգլիա։ Ռուսներն այս բանիս անշուշտ նախատես եղած էին. որ պատերազմին սկիզբը՝ բոլոր թանկագին հնութիւններն կամ մեծագոյն մասը կանխաւ Ռուսիոյ ներսերն՝ ապահով տեղ էին ուղարկած։

Այժմ Քէրչ Խրիմի առեւտրական գլխաւոր քաղաքներէն մէկը կը համարուի եւ իբրեւ դուռ կը ծառայէ Ազախու ծովին։ Քաղաքը 35 հազար բնակիչ ունի. երկուց սեռից գիմնազիոններէն զատ կայ այստեղ նաեւ «ազնուական աղջկանց վարժարան», որ հիմնուած է եւ կը պահպանուի Կոշնիկով անուամբ ռուս պաշտօնէի մը կտակած դրամագլխով։

Առաջնորդս՝ որ ռուս երիտասարդ մի էր իմ ուղեկիցներէս, եւ շատ լաւ կը ճանչնար քաղաքը, տարաւ զիս նաեւ ռուսական եկեղեցին, որ իրօք ուշադրութեան արժանի է։ Եկեղեցին հիմնուած է 717ին յանուն Ս. Յովհ. Կարապետի, եւ շատ ընտիր օրինակ է նոյն ժամանակի բիւզանդեան ճարտարապետութեան։ Նա փոքր է, խաչաձեւ, կարճ գաւիթներով (transept) կամ կողմնակի անցքերով. մէջտեղի գմբէթը յեցած է կորնթական կարգի 4 մարմարեայ արձաններու վրայ։

Այս ամէնը տեսնելէն վերջը մեր յոգնած միտքը հանգստացնելու եւ հնութիւնը ներկայի տեսարաններով համեմելու համար գնացինք նստանք ծովեզերեայ Բօ-լվօրը՝ ուսկից կը դիտէինք նաւահանգստին առեւտրական շարժումը, որ Սեւ ծովու բեռները կ՚առնուր Ազախու ծովին յանձնելու համար, եւ փոխադարձաբար։ Բուլվարէն զատ հասարակաց պարտէզ մ՚ալ ունի Քէրչ՝ քաղաքէն դուրս։ Այս միջոցին ընկերս ոչինչ անախորժ խորհուրդ մ՚ալ հաղորդեց, որուն ընդունեցաւ իմ ալ լիուլի հաւանութիւնս, այն է՝ թէ հնութեան յիշատակներով մտաւոր սնունդ ստանալ բաւական չէ, եւ թէ ստամոքսն ալ կը պահանջէ իր բաժինն այն պաշարէն։ Բուլվարէն մեր քայլերն ուղղեցինք դէպ ի «կեդրոնական» կոչուած պանդոկն եւ ճաշակի զարմանալի փոփոխականութեան իբրեւ ապացոյց, Խրիմի մէջ՝ ուր այնչափ նշանաւոր գինիներ կան, ես՝ թէեւ Կաւկասէն հեռացած, պահանջեցի դարձեալ մեր կաւկասեան թունդ կարմիր գինին. բայց ճաշարանապետը սուղի նստեցուց այս պահանջումս, մէկ շիշի համար 2 րուբլի (5 ֆրանք) առնելով, երբ Բաթում կարելի էր նոյնը համարձակ 40 կոպէկով խմել։ Գանգատելու ժամանակ չունեցայ, որովհետեւ փոքրիկ շոգենաւն զմեզ կը կանչէր՝ ողջ առողջ վերստին մեր շոգենաւին յանձնելու համար։

Քաղաքին արեւելեան կողմն ալ կօրանթինօն է, որ հնութեան ու նորութեան խառնուրդ մը կը ներկայացընէ, որովհետեւ ոչ միայն կանգնած է հին յունական Մէրզիֆօն քաղաքի աւերակներուն վրայ, այլ նոյն իսկ շինութեան համար ալ նոյն աւերակներու քարերն են գործածուած։ Գոնէ դեռ Մէրզիֆօնը նիւթ տուած է առողջապահական կայարանի մը, բայց այն միւս յունական երբեմն ծաղկեալ քաղաքներն ընդարձակ քարակոյտ են այժմ աւազով ծածկուած, որոնց վրայ առդին

անդին միայն կանաչ խոտ կ'երեւայ. եւ այն խոր-շերն՝ որոնց մօտ կանգնած են եղեր այն քաղաք-ներն, այժմ նոյնպէս անհետացած են՝ մի մասն աւազով լեցուելով եւ միւս մասն աղի լճերու փոխուելով։ Բուն Քերչի շրջակայքն ալ, որ երբեմն անտառախիտ ծածկուած են եղեր, այժմ մերկ տափեր (steppes) են, որոնց վրայ ծառերու տեղ ամէն կողմ վերոյիշեալ դամբաններն են տիրած։

---

Ը.

# ԱԶՈՎԵԱՆ ԿԱՄ ԱԶԱԽՈՒ ԾՈՎԵԶԵՐՔ

Քանի որ դեռ չենք հեռացած երկու ծո-վերը միացընող նեղուցէն, աւելորդ չէ կարծեմ, գէթ մօտաւորապէս պտոյտ մ'անել Ազովեան ծովի շուրջն, որ իրաւամբ Սեւ ծովի մի ճիւղը կը հա-մարուի։ Ազովեան ծովը կը թանայ Կովկասիոյ, Խրիմու եւ Հարաւային Ռուսիոյ ափունքն եռան-կիւնի ձեւով, որուն մէկ ծայրն կը կազմէ Պերեկոպի պարանոցին խորշը, որ զԽրիմ կը կցէ Հարաւային Ռուսիոյ հետ. միւս ծայրին վրայ կանգնած են Տագանրոգ եւ Ազով (Թայղան եւ Ազախ) քաղաք-ներն՝ (այս վերջինը ծովէն փոքր ինչ հեռու,) եւ երրորդ ծայրը կը մտնէ Քերչի նեղուցը։

Պէրէկօպ՝ փոքրիկ հայկական անցեալ մ'ունի, որ աւելորդ չէ յիշատակել։ Խրիմու նախկին տի-րապետողներն՝ Թաթարները, Խրիմու պարանոցին վրայ ընդարձակ ամրութիւններ կանգնած էին, որ Օր-Բօղազը կը կոչուէր, իսկ բնակութեան տեղին կամ քաղաքը՝ Օր-Կափը. եւ իրօք ալ առաջինը Բօղազն էր (պարանոց), եւ երկրորդը Կափըն (դուռն) էր Խրիմի։ Երբ 1736ին ռուսական բանակը Մինիխ զօրավարին առաջնորդութեամբը յարձակեցաւ Օր-բօղազիի ամրութեանց վրայ եւ պաշարմամբ գրաւեց եւ այրեց Օր-կափին, քաղաքին Թաթարներն ամէնքը փախան, իսկ քրիստո-

նեայ բնակիչները՝ որ Հայ եւ Յոյն էին եւ քաղաքին վաճառականութիւնն ունէին՝ ինչ որ կարողացան հետերնին առնել իրենց ինչքէն՝ վերուցին դուրս տարին, եւ երբ պատերազմը դադրեցաւ՝ 5 քիլոմետր հեռու Օր-կափիէն նոր աւան մը կանգնեցին, որ կրեց Հայկական Շուկայ անունը (Армянскій базаръ)։ Այս նոր աւանիս բնակչաց մեծամասնութիւնն հայ էր, բայց կային նաեւ օտարազգիք, զոր օրինակ Հրեաներ եւ Կարայիմներ։ Հայ եւ Յոյն բնակիչներն իսկոյն իրենց համար եկեղեցիներ կանգնեցին, միւսներն ալ ժողովրդանոց։ Հայերն այստեղ իրենց առուտուրը շարունակելով՝ քիչ ժամանակէն "Հայկական Շուկան„ Խրիմու վաճառականութեան կարեւոր մէկ կէտն եղաւ։ Այս տեղէն կը տարածուէր Խրիմու միւս քաղաքներն ամէն տեսակ ապրանք, մանաւանդ ցորեն։ Բայց այս Հայ շուկան՝ չունի այլ եւս իւր նախկին կարեւորութիւնն. բնակիչներն արդէն մեծաւ մասամբ թողուցին այս տեղն եւ անցան մերձակայ Նոր Պերեկոպ քաղաքը, որ բուն Օր-կափիին տեղը կը գրաւէ։ Այս օրս Արմէնսկի-բազարը պարզապէս Արմէնսկ կը կոչուի. պահած է նաեւ Օր-Բազար անունն, այսինքն Օրի շուկայ։ Հայերն ունին այստեղ մի եկեղեցի, որուն կից նաեւ ծխական ուսումնարան։

Ազովեան ծովուն վրայ երեք քաղաք՝ բաժնած են իրենց մէջ երկրին արդիւնաբերութեան ամբողջ վաճառահանութիւնն ծովով։ Մարիուպոլ դուրս կը հանէ հանքային ածուխ, Բերդեանսկ՝ ցորեն եւ Տագանրոգ թէ մէկն եւ թէ միւսն։

Մարիուպոլ՝ ինչպէս ասինք՝ գլխաւոր նաւահանգիստն է, ուսկից Օդէսա եւ Սեւ ծովու զանազան կողմերը կ'ուղարկուի ռուսական հանքային ածուխը, եւ յատկապէս Կուրնոյ (Курной уголъ) կոչուած տեսակը։ Հարաւային Ռուսիոյ արդիւնաբերութեան մէջ՝ ցորենէն վերջը գլխաւոր վաճա-

ռահանութեան եւ առեւտրի աղբիւրն է հանքային
ածուխը, որ ընդարձակ կը շահագործուի Դոն
գետի շրջակայքը եւ կու տայ տարեկան մինչեւ
150 միլիոն պուդ: Արդիւնաբերութեան այս ճիւղն
եւս ահագին յառաջադիմութիւն արած է վերջին
տարիներս, եւ ետ մղած է անգղիական ածուխն,
որ յառաջ միակ գործածականն էր տեղական գոր-
ծարաններու եւ նաւերու մէջ: Մարիուպոլ այս
ածխոյ շնորհիւ 1876ին երկաթուղւով կապուեցաւ
Դոնեան երկաթուղւոյն. եւ 1889ին ունեցաւ իր
նաւահանգիստը, որ դեռ կարօտ է նորոգութեանց՝
ածխոյ առաքման ամէն յարմարութիւններն ունե-
նալու համար: Ծովեզերքը շատ խոր չէ, եւ մեծ
նաւերն ստիպուած են իրենց բեռան կէսը նաւա-
մատոյցին մօտ առնելէն վերջը՝ բացուիլ ծովուն
խորքը, եւ այնտեղ իրենց բարձումը շարունակել:
Ածուխն երկաթուղւոյ կառքերէն նաւը թափելու
համար ծովեզերքին վրայ յատուկ մեքենայ կը
բանի: Այս մեքենան կը բռնէ վագոնները, կը
ծռէ մէկ կողմ, ուսկից ածուխը յատուկ խողովակ-
ներու մէջ կը թափուի, որով ուղղակի նաւ կը
փոխադրուի: Ասկէ զատ՝ ածուխ կրող մասնաւոր
բոլորովին ուրիշ տեսակ նաւեր ալ կան, որոնցմով
կը փոխադրուի ածուխը մեծաւ մասամբ թէ Մա-
րիուպոլէն, թէ Ռոստովէն եւ թէ Տագանրոգէն:
Այսպիսի նաւ՝ Մարիուպոլ՝ առաջին անգամ
գաղղիական ընկերութիւն մըն է բերած 1890ին:

Մարիուպոլի բնակչաց մեծ մասը բաղկացած
է Յունացմէ, որոնք Խրիմի նախկին Յունական
գաղթականութեան սերունդն են, եւ անցեալ
դարուն կէսերն Ազովեան ծովեզերք գաղթելով՝
հիմն դրած են Մարիուպոլի: Յոյներէն վերջը
տիրապետողներն են Հրեայք: Այս երկու ազգաց
ձեռքն է գլխաւորաբար Մարիուպոլի վաճառահա-
նութիւնն: Հայ բնակիչ շատ քիչ կայ, միայն
Խրիմցիք են որ երբեմն կ'երեւան այն տեղ:

Բէրդեանսկ՝ Ազովեան ծովեզերքին ցորենի արտահանութեան գլխաւոր քաղաքն է, որ մանաւանդ Իտալիա եւ Գաղղիա կ'ուղարկէ իր ցորենը, եւ միշտ առանձին գովութեամբ կը յիշուի Եւրոպայի ցորենի հրապարակներուն վրայ. այս գովութեան փոքր չափով չեն նպաստեր անշուշտ՝ Բէրդեանսկի շրջակայքն հաստատուած ընդարձակ գերմանական գաղթականութիւնք: Քաղաքը հիմնուած է 1827ին, եւ շնորհիւ իւր յաջող արտահանութեանց՝ այժմ 30 հազարի մօտ բնակիչ ունի: Բէրդեանսկի վաճառականութեան մէջ իշխողները՝ նոյնպէս Յոյներն են, որոնք Ազովեան ծովեզերաց վրայ առ հասարակ պահած են մինչեւ հիմայ եւ կ'աշխատին պահել իրենց նախկին ազդեցութիւնը: Ռուս տարրն այստեղ երկրորդական դեր կը խաղայ՝ թէ թուով եւ թէ դիրքով: Իսկ հայ՝ համարեա թէ չկայ, կամ շատ քիչ: Բէրդեանսկ հրեայ ալ շատ ունի, բայց սոնք առեւտրական մեծ գործեր չունին, եւ կը շատանան արուեստաւորի, միջնորդի եւ այլ երկրորդական դերեր կատարելով:

Բէրդեանսկ՝ թէպէտ վաճառահանութեամբ ոչ աննշան՝ դեռ նաւահանգիստ ունենալու չէ արժանացած, թէեւ երկաթուղւով կապուած է արդէն: Եւ իր բնական նաւահանգստին մէջ՝ բաց ծովու վրայ շողացող բազմաթիւ նաւերը՝ մեծաւ մասամբ առագաստաւոր՝ շատ մեծ յարմարութիւններով չեն կրնար պարծիլ: Ազովեան ծովեզերքն առ հասարակ ձմեռ ժամանակ կը սառի, եւ Բէրդեանսկի առջեւ երբեմն այս սառն ամբողջ ամիսներ կը տեւէ. նոյն ժամանակ բնականաբար ծովային ամէն շարժում կը դադրի եւ բեռները կ'ուղղուին երկաթուղւով դէպ ի Օդեսա:

Բէրդեանսկ՝ փոքր ինչ կը նմանի Բաթումին՝ այնու որ այստեղ ալ մէկ կողմէն ծովային գեղեցիկ տեսարան կը պարզուի աչաց, միւս կողմէն՝ ցամաքն

ալ ընդարձակ կանաչութիւն է. ամէն տուն գրեթէ՝ փոքրիկ պարտէզներ ունի իր շուրջը, փողոցներու վրայ սօսիներէ ծառուղիք են կազմուած, եւ այս բոլորին վրայ կ'աւելնայ քաղաքային ընդարձակ պարտէզն՝ իր խիտ եւ ճիւղածաւալ ծառերովն, որոնք լայնարձակ հովանւով կը պատեն իրենց շուրջն զբօսնողները ։

Տագանրոգ վաճառահանութեան երկու կարեւոր առարկայ միանգամայն ունի, այն է հացհատիկ եւ անթրացիտ (antracite) ածուխ. եւ թէեւ այս երկու առարկայից մէջ ալ՝ իր դրացի ցամաքային Ռոստով քաղաքէն ետ կը մնայ, բայց դարձեալ Ազովեան ծովեզերքին վրայ կարեւոր տեղ կը գրաւէ ։ Տագանրոգ՝ Բէրդեանսկէն աւելի երջանիկ է՝ ունենալով հաստատուն նաւահանգիստ՝ 800 սաժէն երկայն քարափով ։ Յոյներն այստեղ եւս մեծ դեր են խաղացած, եւ իրենց հարուստներն՝ ինչպէս Ալֆերաքի, Վալյանօ եւն ահագին կարողութեան տէր էին երբեմն. իսկ այժմ թէեւ դարձեալ կարեւոր դիրք կը գրաւեն քաղաքին մէջ, բայց նախկին հարստութիւնն ու ազդեցութիւնն պակսած է ։ Տագանրոգ իւր հիմնադրութեամբն ու կազմութեամբը միակ բուն ռուսականն է Ազովեան ծովեզերքին վրայ ։ Հիմնադրութիւնը կատարուած է Պետրոս Մեծի ժամանակ, 1689ին, որ անձամբ դիտած եւ հաւնած է տեղը ։ Իսկ այժմեան նաւահանգստին շինութեան սկիզբն եղած է 1888ին, Պետրոսի կառուցանել տուածին տեղը ։ — Պետրոս Մեծն բաց ի քաղաքէն, նաւահանգստէն եւ ամրութիւններէն՝ ծովախորշին մէջ Տագանրոգէն 700 սաժէն հեռու, արուեստական կերպով լցուցած է եւ յառաջացուցած Չերեպախա (Черепаха)՝ այսինքն կրիայ կոչուած կղզեակը ։ Բայց ուրիշ կայսր մ'աւելի սէր կապած է Տագանրոգի ։ Դարուս առաջին քառորդին՝ Աղեքսանդր Ա. այստեղ բաւական ժամանակ ապրած եւ այստեղ

ալ վախճանած է 1825ին։ Տագանրոգ բաւական յիշատակներ ունի իրմէ. գլխաւորն է այն քէօշքը քաղաքային պարտիզին մէջ՝ ուր շատ յաճախ կու գար կայսրը հանգստանալու, եւ անկէ կը դիտէր ծովային գեղեցիկ տեսարաններն ու քաղաքին շրջակայքը։ Բուն պարտէզն ալ՝ որ այժմ ընդարձակ տարածութիւն ունի՝ հովանաւոր ծառուղիներով եւ բարձրաբերձ ծառերով՝ Օրհնեալն Աղէքսանդրի (благословенный, այսպէս կը յիշատակեն զինքը Ռուսները,) առատաձեռնութեանն շնորհիւ է կանգնած։ Այն պալատն ուր կայսրը կը բնակէր՝ 1890ին նորոգուած է, եւ առանձինն խնամով հոգ տարուած է որ ճիշդ այն դիրքն ու երեւոյթն ունենայ՝ ինչ որ էր դարուս առաջին քառորդին։ Դեռ անվթար կը պահուին պալատին մէջ՝ հին ներքին կահ կարասիքն, ժամացոյցները, պատկերներն եւ այլն։ Իսկ այն սենեակն ուր վախճանած է կայսրն՝ մատուռ է եղած եւ հոն ամէն տարի հոգեհանգիստ կը կատարուի։ — Տագանրոգ՝ արձան ալ կանգնած է Աղէքսանդր Ա.ի։

Տագանրոգի շրջակայքը շատ սիրուն այգեստաններ եւ պարտէզներ կան տնկուած, որոնց մէջ նշանաւոր է Դուբքի (Дубки) անուն տեղն, որ իւր այս կոչումն առած է Պետրոս Մեծէն, այսինքն որ բարենորոգիչ կայսրն՝ այստեղ կաղնւոյ ծառեր (ռուսերէն դուբ) տնկած է, եւ անկէ մնացեր է տեղւոյն անունը։

Ազովեան ծովեզերաց Կաւկասեան մասին վրայ՝ կանգնած է Եյսկ քաղաքն իբր 30 հազար բնակչով։ Լայնատարած աւազակոյտ մի, որուն 7 քիլոմետրէն նուազ չէ երկայնութիւնն, հետզհետէ սրանալով կը մտնէ ծովուն մէջ, եւ մէկ կողմէն կը ձեւացնէ Տագանրոգի ծովածոցը, մինչ միւս կողմէն քաղաքին քով ալ ծովը նեղնալով բաւական ընդարձակ բնական նաւահանգիստ մը կը

կազմէ, ուր բազմաթիւ նաւեր շատ խաղաղ կ'անցընեն իրենց ձմեռը։

Եյսկը հիմնած են ձկնորսները։ Հրուանդանին շուրջն առատ ձուկ որսալով՝ ի սկզբան այնտեղ միայն գործարաններ էին հիմնած եւ իրենց բնակութեան համար առանձին աւան մը, որ կամաց կամաց մեծնալով՝ վերջապէս 1848ին ծովեզերեայ քաղաքի դիրք առաւ։ Կառավարութիւնն ուզեց այս տեղը նոյնպէս առեւտրոյ կեդրոն անել, եւ այս նպատակաւ քաղաքին մեծամեծ արտօնութիւններ տուաւ։ Այս առաւելութիւնները հետզհետէ նորանոր վաճառականներ եւ բնակիչներ գրաւեցին նոր քաղաքին, եւ քաղաքն ընդարձակեցաւ, բազմամարդ եղաւ։ Բայց երբ Ռոստով եւ Վլատիկաւկաս քաղաքներուն մէջ երկաթուղւոյ կանոնաւոր հաղորդակցութիւն հաստատուեցաւ, առաքուելի ապրանքներն այնուհետեւ՝ փոխանակ Նոյոկէ՝ ուղղուեցան Ռոստով, եւ Եյսկ մնաց ուր որ էր. ա՛լ յառաջադիմելու յոյսն ընդ միշտ հեռացաւ իրմէ։

Եյսկէն վերջը՝ երկու ծովախորշ եւս կայ աննշան, եւ ապա կը հանդիպինք Քերչի նեղուցին միւս եզրը, ուր կը տարածուի Տամանեան Թերակղզին։ Այստեղ կը հանդիպինք նախ Տէմրիւք քաղաքին՝ Ախտանիզեան լճին վրայ՝ որ նեղ անցքով մը հաղորդակցութեան մէջ է ծովուն հետ։ Ախտա-նիզ բառն որ այսօր Ռուսաց մէջ պաշտօնապէս կը գործածուի՝ տաճկերէն Աք-տէնիզ (ճերմակ ծով) բառին աղաւաղեալն է։ Տէմրիւքի մէջ բնակչաց գլխաւոր զբաղմունքը՝ նոյնպէս ձկնորսութիւնն է։ — Տամանեան Թերակղզին նոյնպէս ընդունած է իր մէջն ընդարձակ ծովածոց մը, որուն բերնին վրայ կանգնած է Տաման աւանը 3500 բնակչով։ Տաման՝ Օսմանեանց տիրապետութեան ժամանակը շատ աւելի բազմամարդ էր, եւ ունէր 12 մզկիթ՝ որ մարդաշատութեան նշանակ է։ Չերքէսներու

եւ Մերձակայ Կուբանեան նահանգին բովանդակ մահմետական ժողովուրդը՝ բոլոր իր ապրանքները Տամանի ճամբով կ'առնուր ու կու տար: Թէ այստեղ եւ թէ Տէմրիւք՝ տաճկական ամրութիւններ կային՝ բազմաթիւ Ենիչէրի պահապաններով, եւ այժմ Քոզակներն են որ կը փոխարինեն Ենիչէրիները: Նշանաւոր Սուվարով ռուս զօրավարն եղած է Տամանեան թերակղզին Ռուսիոյ կցողը 1777ին: Այս թերակղզին ոչ աննշան պատմական անցեալ մ'ունեցած է: Յոյն Միլետացիք այս տեղ ալ գաղթականութիւններ հիմնած էին, որոնք փոքր հարստութիւն չէին դիզած. բայց Ե. դարէն վերջը (Յ. Ք.) թերակղզին այնպիսի աշխարհագրական յեղաշրջումներու է ենթարկուած՝ որ հնագէտներու բոլոր աշխատութիւնն ի զուր կ'ելլէ՝ որոշելու Միլետացւոց քաղաքներու տեղերը: Տաման քաղաքն եւ շրջակայքն ԺԲ. դարուն Ռուսաց ձեռքն էր ինկած առ ժամանակ մի, որոնք փոքրիկ իշխանութիւն մ'ունէին այստեղ, եւ տեղը կ'անուանէին Տմուտորոկանի. թէ ուստի է ծագած այս կոչումն՝ ոչինչ յայտնի է: Նոյն ինքն իշխանութիւնն այնպէս աննշան եւ անհետեւանք է եղած, որ Ռուսք երկար ժամանակ փնտռեր են թէ իսկապէս ո՛ւր էր հաստատուած, եւ վերջապէս 1793ին արձանագրութիւն մը գտեր են, որ պարզեր է խնդիրը: Այս արձանագրութեան մէջ ասուած է եղեր՝ թէ "յամին 6576 Գլեբ իշխանը չափեց Տմուտարականի եւ Կրչէվի (Քէրչ) միջոցին տարածութիւնը՝ սառուցի վրայ, եւ գտաւ 10 հազար եւ 4 հազար սաժէն," այսինքն 14 հազար սաժէն: — Ջենովացիք Տամանը Մադրեգա կը կոչէին. Տաման անունը Թուրքերու ժամանակէն սկսած է, որոնք երեւի Չէրքէզներու Թէմընէ (այսինքն՝ ճահիճ) բառէն նոյնն առած են:

Դոնեան Քոզակներու խումբ մի ԺԸ. դարու սկիզբը Ռուսաց դէմ ապստամբելով փախած են

Տամանեան թերակղզին եւ Խրիմու խանին հպատակութիւնն ընդունելով՝ բնակած Տամանի եւ Տեմրիւքի մէջ։ Բայց երբ 1777ին երկիրն անցաւ Ռուսաց ձեռքն՝ այստեղէն ալ փախան իրենց դրացի չէրքէզներու քով՝ Կուբանեան նահանգն, եւ յաջորդ տարին բոլորովին տեղափոխուեցան անցան եւրոպական Տաճկաստան ի Ռումէլիա։

Այս կարճատեւ մտաւորական պտոյտէն վերջը՝ դառնանք մեր փոքրիկ շոգենաւն, որ Քէրչէ նեղուցէն ելած՝ ընդարձակ ծովուն ալեացը վրայ աջուձախ երերալով՝ վերջապէս բերաւ յանձնեց զմեզ մեր "Մեծ իշխան Կոստանդնին„ որ կ'երեւայ թէ անհամբեր կը սպասէր, որովհետեւ հազիւ զմեզ եւ զանազան բեռներ շտապաւ առած էր, եւ ահա վերէն սկսաւ սուլելով ծխոյ թուխ ամպեր արձակել, իսկ վարէն սաստիկ շաչիւնով փրփրապատ պատառուածներ բանալ ծովուն մէջ։ Այսպէս մեր ետեւը թողինք Ազովեան ծովուն նեղուցն եւ մեծ շտապաւ սկսանք յառաջանալ դէպ ի Խրիմ։

---

## Թ.

## ԾՈՎՈՒ ՎՐԱՅ

Գիշեր է։ Շոգենաւն առանց որորուելու արագ կը սահի յառաջ. լուսնի արծաթափայլ ճառագայթները մեր շուրջը ծովուն երեսին վրայ մանրիկ ցայտումներ կը գործեն, որոնք հեռաւորութեան մէջ սպիտակ ճաճանչաւոր կոհակներու տպաւորութիւն կը թողուն։ Ուղեւորք ամէնքն ալ ի քուն են խաղաղիկ. ես եմ եւ ռուս բժիշկ մի միայն, որ նաւին յարկին վրայ մերթ յենարաններուն կռթնած, մերթ փայտեայ վանդակաւոր թիկնաթոռներուն վրայ ընկողմանած՝ չենք հեռանար մեր տեղէն՝ յամառաբար մերժելով Մորփէոսի հրաւէրները։ Ամենայն ինչ հանդարտ է մեր շուրջը. այնպէս հանդիսական է այս գիշերային

խաղաղութիւնն, որ նոյն իսկ մենք՝ կարծես՝ բնութեան այս ընդհանուր հանդստութիւնը չվրդովելու համար շուտով կը փակենք մեր խօսակցութիւնն եւ կ'ընկղմինք մտածութեանց մէջ՝ աչքերն յառած դէպ ի այն անհուն տարածութիւնն, որ անարգել կը շրջապատէ զմեզ: Քանի՜ հանգիստ է մարդկային միտքն՝ ժամանակին այս անաղմուկ եւ վեհ միջոցներուն: Վերէն երկինքն իր անհամար փայփլուն աստղներով, վարէն ծովն իւր անեզր խաղաղ տարածութեամբ՝ պահ մը կը մղեն կ'արտաքսեն մարդկային եսն, ցոյց տալով ակնյայտնի այն փոքր, փոքր եւ աննշան տեղն որ կը գրաւէ մարդ տիեզերական համագոյից անբաւութեան մէջ: Եւ միտքը բացուած ընդարձակած՝ կը ճգնի սաւառնիլ հեռու, շատ հեռու, բնութեան խորքերը, բարձր իւր եսէն, վեր իւր սովորական զգայական աշխարհէն, — կը պաշարուի անսովոր խորհրդածութիւններով, որոնք կ'առաջնորդեն մերթ հիացողական եւ մերթ քննողական դրութեանց. բայց վերջապէս անկարող երկար թափառելու այս վիճակին ազդած մտածութեանց երկայն շարքին մէջ, անկարող գրկելու եւ ամփոփելու այն բոլորն որ չ'ենթարկուիր իւր հոգեկան ուժոյն եւ ազդեցութեան, գլխիկոր կը լքանէ, եւ կը դառնայ իւր փոքրիկ էութեան շուրջը, դարձեալ զբաղելու իւր ներքին մարդովն:

Բժիշկն եղաւ որ խզեց մեր երկարատեւ լռութիւնը՝ յիշեցընելով այն անջրպետն որ թողեր էինք մեր եւ Քէրչի մէջ, եւ որ կը մօտեցընէր զմեզ Թէոդոսիայի: Խօսակիցս Խրիմցի էր, որ այժմ կ'երթար Պետրբուրգ՝ այնտեղ բժշկութեան դոկտորի վկայական առնելու: Նա ինձ յիշեցուց Խրիմի հետաքրքրական մի հողակոյտը, զոր ես մոռացայ վերն յիշատակելու՝ Ազովեան ծովեզերքի նկարագրութեանս մէջ: Քէրչի եւ Թէոդոսիայի մէջտեղի ցամաքէն սկիզբ առնելով Ազովեան

ծովի մէջ կ'երկարի երկայն ձողի նման հողի շերտ մի՝ 104 վերստ (105 քիլոմետր) երկայնութեամբ եւ առ առաւելն 7 քիլոմետր լայնութեամբ։ Աշխարհագրական քարտէսը դիտողն անշուշտ ուշադրութենէ չի վրիպեցըներ այս երկայն ու բարակ ցամաքն, զոր Ռուսները Արաբաթեան սլաք կ'անուանեն։ Այստեղն ամբողջ ծածկուած է եղէգով եւ ծովային մամուռով (algue), եւ ինչպէս բժիշկը կը պատմէր այս սլաքիս օդը թափանցած է եօդի (iod) հոտով, վասն զի ծովային մամուռն իր մէջն առատ ունի եօդ եւ բրօմ (brome)։ Կ'երեւայ թէ նախնեաց ալ ծանօթ էր այս տեղը. Յոյները պարզապէս էիօն (եղերք) կ'անուանէին. Պտղոմէոսի աշխարհագրութեան մէջ Զենոնեան Թերակղզի (Zenonis Chersonesus) կը կոչուի. իսկ միջին դարու իտալական քարտէսներն աւելի ճիշդ՝ Zuchala, կամ Zacalai անունն կու տան, որ հաւանականաբար իտալական zagaglia բառն է — այսինքն տէգ, սլաք։ — Իսկ այժմեան Արաբաթ բառն անշուշտ Տաճիկներէն մնացած է, որոնք նոյն սլաքին ծայրը բերդ եւ աւան էին կառուցած եւ կոչած էին Ռաբաթ։

Թողլով Ազովեան ծովեզերքն իր սլաքովը՝ ես իմ բժշկիս սկսայ հարցափորձ մ'այն բաներու վրայ, որ փոքր անհանգստութիւն չէր պատճառած ինձ այս ուղեւորութեանս ժամանակ, մանաւանդ մինչեւ Սուխում։

— Մարտին Նիկիտիչ, (ասի ես անունն եւ հայրանունը տալով՝ ըստ ռուսական սովորութեան,) քանի իրարմէ չենք բաժնուած՝ կ'աղաչեմ՝ դեղ մը, ճար մը, հրահանգ մը տուէք ինձ սա ծովային հիւանդութեան դէմ. շատ կը նեղուիմ։ Գուցէ այլ եւս չտեսնենք իրար, կամ թէ շատ ուշ. Ձեր խորհուրդն ինձ համար Ձեր յիշատակն յաւէտ արթնցընող առիթ մը պիտի լինի։

— Ա. Զ., պատասխանեց Մարտին Նիկիտիչ՝ նոյն ձեւով՝ փոքր ինչ մտածելէն վերջը. դժբախտաբար վճռողական որոշ դեղ չեմ կրնար տալ Ձեզ, վասն զի բժշկականութիւնը դեռ ոչինչ է գտած կտրուկ միջոց այս հիւանդութեան դէմ: Բայց կրնամ Ձեզ քանի մի խորհուրդներ տալ, որոնք՝ թէեւ անուղղակի՝ կրնան օգտել Ձեզ, եւ շատերէն փորձուած են. Ջանացէք նախ, գտնուիլ միշտ շոգենաւին մէջտեղը. երկրորդ, հանուեցէք մտէք անկողին եւ պառկեցէք մէջքի վրայ եւ հանդարտ պահեցէք զՁեզ. ջանացէք շատ չորորուիլ, եւ մանաւանդ քնացէք:

— Իսկ եթէ քունս չի տանիր:

— Ամէն հնար ի գործ դրէք որ կարենաք ննջել. լաւ կ'անէք եթէ փոքր ինչ, օրինակի համար, պզտիկ գաւաթով կոնեակ մը խմէք: Իսկ շոգենաւ մտնելէն յառաջ՝ Ձեր ստամոքսը պարապ մի թողուք. եւ այս աւելի լաւ է՝ քան թէ անօթի նաւ նստիլ: Այս ալ գիտցէք, որ որչափ ցած եւ ողնափայտին (quille) քովերը գտնուիք, նոյնչափ որորումն պակաս զգալի է: Հիւանդութեան դէմ լաւագոյն միջոցներէն մէկն ալ՝ միշտ մաքուր օդ ծծելն է. մաքուր օդի մէջ գտնուիլ մեծապէս կ'օգնէ այս հիւանդութեան գալուն կամ նորոգուելուն դէմ:

— Շնորհակալ եմ, բժիշկ, կ'աշխատիմ օգտիլ Ձեր խորհուրդներէն:

— Բայց վերջապէս, մի վախնաք, այս որորումը վնասակար չէ. ոտքն իր տակը հաստատուն հող գտածին պէս՝ ստամոքսն ալ կ'ամրանայ եւ հիւանդութենէն ամենեւին հետք չի մնար:

— Իսկ անուղղակի ուրիշ հիւանդութեան հող չէ՞ պատրաստեր այս ծովային ախտը:

— Ամենեւին:

Բժիշկ ուղեկցիս այս խորհուրդները կէտ առ կէտ գործադրեցի այնուհետեւ, եւ կը խոստովանիմ որ ըստ բաւականի դիւր զգացի։

Ուղեւորութեանս շարունակութեան մէջ՝ ժամանակս մեծաւ մասամբ կ'անցընէի նաւայարկին վրայ, ուր օդը բնականաբար աւելի մաքուր է քան օթեակներու մէջ։ Իսկ երբ նախաճաշի կամ ճաշի նստած ժամանակ՝ շոգենաւուն իր խաղը կը սկսէր, եւ գլուխս կամաց կամաց կը ծանրանար, կը մոռնայի ուտելիքն ալ խմելիքն ալ, եւ անյապաղ քաշուելով օթեակս, կը հանուէի եւ կը մտնէի անկողինս։ Շատ անգամ ժամերով կը մնայի այսպէս մէջքի վրայ պառկած, որքան հնարաւոր է ամուր կը պահէի գլխս, աշխատելով չօրօրուիլ։ Եւ որովհետեւ անկարելի էր շարունակ քնոյ կամ թմրութեան մէջ մնալ, սրտնեղութեանս դէմ ալ պաշտպանուելու համար կը դիմէի ընթերցանութեան։ Անկողինս դրուած էր ճիշդ պատուհանին քով, որ իր փոքր կլորակ անցքէն բաւական լոյս կը մատակարարէր։ Կը զգայի սակայն թէ ծովը կարծես իմ ըմբոստութեանս դէմ նեղացած՝ երբեմն երբեմն մռնչելով իր ալիքները կ'արձակէր դէպ ի լուսամուտն, որոնք կը բախէին հաստ ապակւոյն վրայ, եւ քանի մը վայրկեան լոյսն աղօտացընելէն վերջը՝ կը դառնային զիրենք ուղարկողին գիրկը, քիչ յետոյ վերստին եւ ապա դարձեալ նոյն խաղը խաղալու իմ ընթերցանութեանս եւ լուսամտիս հետ։ Իսկ երբ օրօրումը սաստիկ էր, այն ժամանակ գիրքը ձեռքէս ընկած՝ եւ ես յուսահատաբար սրտմտած՝ միանգամայն խղճալի նայուածքներ կ'արձակէի պատուհանէս այն կատաղւոյն, որ իւր հիւանդացուցած ուղեւորն այս վերջին մխիթարութենէն ալ կը զրկէր։ Բայց վերջապէս՝ կոհակները կը դադարեցընէին իրենց խաղն եւ շոգենաւը դարձեալ իր բնական դիրքն ու ընթացքը կ'ընդունէր, եւ ես կ'ելլէի նաւուն յարկը եւ անյիշա-

չար աչքով կը դիտէի այս խռովայոյզ տարածութիւնը։ — Այսպիսի ժամանակ՝ դարձեալ կը միանայինք ուղեկից բժշկիս հետ, եւ քովէ քով նստած՝ նա իր բժշկական ամսագիրը կը կարդար, եւ ես դարձեալ իրեն՝ Вѣстникъ Европы ամսագրին մէջէն որեւէ վէպ կամ յօդուած մի, որուն վրայ կարծիքներ կը փոխանակէինք։ Օր մ'ալ տեսայ, որ Մարտին Նիկիտիչս գրպանէն ռուս-թաթարերէն լրագիր մը հաներ՝ ուշադրութեամբ կը դիտէր լրագրին թաթարական բաժինը։ — Ուզեցի իրմէ. տուաւ։ Խրիմի Բաղչէսարայ քաղաքին մէջ հրատարակուող Թէրջիման — Переводчикъ լրագրին մէկ համարն էր, որուն խմբագիրն եւ հրատարակիչը զարգացած խրիմցի թաթար է։

— Բժիշկ, թաթարերէն կը կարդա՞ք. ի՞նչ է Ձեզ հետաքրքրեր որ թաթարերէն էք սորվեր, հարցուցի ես՝ զգալով թէպէտ որ այս հարցումս փոքր ինչ անտեղի էր։ — Բայց երիտասարդ բժիշկս փոխանակ տհաճութիւն զգալու ընդհակառակն գոհ երեւցաւ հարցմանս եւ յայտնեց թէ իբր երկու ամիս է, որ ինքը՝ լոկ բանասիրական հետաքրքրութեամբ սկսեր էր ուսումնասիրել թաթարերէնն, ու նաեւ կը գրէր արաբական տառերը։

— Եթէ այդպէս է, ասի, ուրախ եմ շատ, որ իբրեւ ի տրիտուր Ձեր բժշկական խորհուրդներուն՝ ես ալ կրնամ գուցէ օգտակար լինել Ձեզ այս ճիւղին մէջ։ Մարտին Նիկիտիչս աւելի ապշեցաւ առաջարկութեանս վրայ, քան որչափ ես զարմացած էի՝ իր ձեռքը տեսնելով թաթարական լրագիրը։ Յետոյ իմացայ որ բժիշկս շատ ալ օտար չէր Խրիմի նախկին տիրապետողներու ցեղին։ Իր հայրը խրիմցի թաթար է եղեր, պատանեկութեան ժամանակ քրիստոնէութիւնն ընդունած եւ ամուսնացած լեհացի օրիորդի հետ։ Իսկ ինք՝ թաթար հօր եւ լեհ մօր ծնունդ՝ այսօր ոչ մէկն էր եւ ոչ միւսը, այլ ռուս էր եւ դժուարաւ կարելի էր

գտնել բուն ռուս մ'որ իրմէն աւելի հայրենասիրական ոգւով խօսէր Ռուսաստանի վրայ ընդհանրապէս։ Այսպիսի ուրիշ մէկն ալ ճանչցած եմ ես Թիֆլիս. որուն հայրը համշէնցի Թուրք էր, մայրը Լեհացի կաթոլիկ, իսկ ինք ռուս էր, եւ բարձրաստիճան զինուորական, Բետերբուրգի զինուորական ճեմարանն աւարտած, նոյնպէս ջերմ հայրենասէր։

Մեծապէս գոհ եղաւ բժիշկն, որ ես մեր ուղեւորութեան ամբողջ տեւողութեան ժամանակ, օրը քանի մը անգամ, Թաթար լեզուի ընթերցանութեամբ կը պարապէի իրեն հետ։ Եւ պէտք էր տեսնել թէ մեր միւս ուղեկիցներն ինչ զարմացական նշաններով անցուդարձ կ'անէին մեր շուրջը, երբ մենք Ներջէմանը մեր առջեւ դրած՝ կը կարդայինք կամ կը գրէինք։

---

## Ժ.

## ԹԷՈԴՈՍԻԱ

Առաւօտեան ժամը Ե չկար դեռ՝ երբ բեռնաբարձ լծակին աղմկալից գործողութիւնները քունս խանգարեցին, ելայ վեր նաւայարկն, եւ ահա կը նշմարեմ որ Թէոդոսիա արդէն կանգնած է մեր առջեւ։

Դուրս ելայ նաւամատոյց, մինակ, առաւօտեան զովութեամբ քաղաքը դիտելու։ Կառապան մ'ընտրեցի ինձ առաջնորդ, որ իր թեթեւ կառքովը տարաւ զիս բոլոր փոքր ի շատէ ուշադրութեան արժանի տեղերը տեսնելու։ Բաթումէն սկսած Սեւ ծովի եզերաց վրայ ոչ մի տեղ Հայ գաղթականութիւնն այնպէս հոծ է, ինչպէս այստեղ, ուր Հայոց գոյութիւնը կը յիշատակուի արդէն ԺԵ դարէն։ Թէոդոսիայի Հայերը կը զբաղին գլխաւորաբար վաճառականութեամբ, բայց կան նաեւ արուեստաւորներ եւ արքունի պաշտօնատէրներ եւ երկու եկեղեցի եւ երկու դպրոց. իրենց

թիւը կը հասնի 1200ի. կան նաեւ 75 տան չափ կաթողիկեայ Հայեր, որոնք նոյնպէս ունին իրենց եկեղեցին եւ ծխական դպրոցը: Բայց դժբախտաբար չկրցայ եւ ոչ մին տեսնել, վասն զի օրը շատ վաղ էր դեռ: Հայոց եկեղեցւոյն գաւթին մէջի փոքրիկ տնակէն պառաւ կին մը դուրս ելաւ, եւ ըսաւ թէ ոչ մի հայ եկեղեցի կամ դպրոց բաց չես կրնար գտնել այս ժամուն. ես ալ գնացի մօտակայ ճաշարանը եւ այնտեղ թէյով զբաղեցայ՝ մինչեւ որ քաղաքն իր քնէն արթնցաւ:

Փոքրադիր բլրոյ մը ստորոտն եւ զառիվերին վրայ կիսաբոլոր տարածուած է Թէոդոսիա, ձախ թեւին վրայ ունենալով դարաւոր ամրութիւններու հին, կործանած պատնէշները, յիշատակ քաղաքին նախկին փառացը: Երկյարկեան ճերմակ տներ սիրուն ձեւով շարուած են նաւահանգստին կիսաբոլոր եզերքին վրայ, որոնց առջեւ մի քան զմիւս փառաւոր ծովային տեսարաններ կը պարզեն: Աւելի փոքր քան Բաթում՝ (ունի միայն 12 հազար բնակիչ,) Թէոդոսիա այսու ամենայնիւ աննշան քաղաք չէ: Թէեւ չունի մեծ առեւտրական կարեւորութիւն եւ գործունէութիւն, բայց իր գեղեցիկ դիրքովը կը յիշեցնէ Միջերկրականին Իտալական ծովեզերեայ փոքր քաղաքները: Իր ամենէն նշանաւոր փողոցն է՝ Գէնուէզսկայա (Генузіская) այսինքն Ջէնովական փողոցը: Այս անունը յիշատակ է Ջենովական տիրապետութեան միջոցին, երբ՝ ԺԳ դարուն՝ ամբողջ Սեւ ծովու եզերքը կը դղրդեցընէր Կաֆֆա անուան ներքեւ: Քաղաքը հիմնուած է այստեղ յոյն գաղթականներէ, եւ շուտով կարեւոր կենդրոն եղած՝ վաճառականութեան: Ե դարուն Հոնք քանդեցին զԹէոդոսիա, եւ այնպէս քանդուած մնաց մինչեւ Ջենովացւոց տիրելն, որոնք քաղաքը վերին զարգացման հասուցին: 1475ին անցաւ Տաճկաց ձեռքը. սոնք ալ իրենց կողմէն մինարէներով

զարդարեցին, եւ անունն իրենց հնչմամբը կոչեցին Քէֆէ. Տածիկներն այնչափ հաւներ էին Քէֆէն, որ շատ անգամ Քրըմ-ըսթամպօլը (Խրիմի Կ. Պոլիս) կամ Քիւչիւք-ըսթամպօլ (փոքր Կ. Պոլիս) կը կոչէին։ Երբ Ռուսները տիրեցին Քէֆէին՝ քաղաքն աւերակ թողուցին ամբողջ կէս դարէն աւելի, իրենց բոլոր ուշադրութիւնը դարձընելով նախ Քէրչին. մինչեւ որ ներկայ դարուս հազիւ միջիններէն ետքը Թէոդոսիա սկսաւ կենդանանալ. իսկ երկաթուղին կապեց զայն ցամաքային առեւտրական աշխարհին հետ՝ 1892ին միայն, երբ ռուսական կառավարութիւնն որոշեց զԹէոդոսիա առեւտրական նաւահանգիստ ընել։ Բայց ի առեւտրական յատկութենէն՝ (թէեւ դեռ այժմեան վիճակին մէջ ալ շատ մեծ կարեւորութիւն չունի), շատ յարմար քաղաք է ծովային բաղնիքներու այնպէս որ ամառները՝ մանաւանդ օտար տեղերէ եկող հիւանդներն եւ այցելուներն են որ քաղաքին զուարթութիւն կու տան։ Այնչափ գովեցին ինձ այստեղի լոգարանները — կամ յատկապէս՝ լոգարաններու ծովը — որ չվարանեցայ անձամբ փորձելու։ Իրաւունք ունէին. ծովուն յատակը հարթ է, աւազուտ կամ թեթեւ կաւային կակուղ. ոտքերդ կարծես թաւշի վրայ կը կոխեն. Ջուրը յստակ է ու թափանցիկ, եւ առջեւի ծովային տեսարանը սքանչելի։ — Ոչ միայն յատուկ լոգարաններն՝ այլ ամբողջ ծովեզերքը, մինչեւ անգամ բովանդակ նաւահանգիստը՝ շատ յարմար է լոգանալու. եւ իրօք, իրիկունները՝ ինչպէս պատմեցին՝ ամբողջ ծովեզերքը ծածկուած է լողացողներով, ուղղակի բաց երկնքի տակ, ճիշդ ինչպէս Բաթումի ծովեզերայ բուլվարին առջեւն, ուր ամառ ժամանակ, առաւօտ, երեկոյ, բաց ի որոշ լոգարաններէ եւ վրաններէ՝ նոյն իսկ բաց տեղերն անթիւ լողացողներ կան։

Թէոդոսիայի նաւահանգիստն երկու կողմէն

լեռներով պատած եւ պատսպարած է սառնկաշունչ հովերու դէմ, եւ հաստատ ապահովութիւն կ'ընծայէ այստեղ ապաստանող նաւերուն։

Այսու ամենայնիւ Թէոդոսիայի մէջ ամէնէն նշանաւոր տեսնելու անձն եւ վայրերն են՝ մեր հռչակաւոր ծովանկար ծերունի Այվազովսկին, եւ իւր հիմնարկութիւնները։ Այվազովսկի անունը միշտապէս կապուած պիտի մնայ իւր ծննդավայրին հետ։

Յովհ. Կոստ. Այվազովսկի ծնած է այստեղ, 1817, Յուլիս 17. եւ իր քաղաքին բնութեանն եւ դիրքը շնորհիւ ծնունդ է առած եւ կատարելագործուած է իւր անձին վրայ՝ ծովային նկարչութիւնն, որ զինք այսօր ոչ միայն Ռուսաստանի՝ այլ եւ բովանդակ աշխարհի նշանաւոր կը հանդիսացընէ։

Թէոդոսիա զուրկ էր խմելու ջրէ. եւ դիւրին է երեւակայել թէ ինչ ահագին պակասութիւն է այս՝ քաղաքի մը համար, եւ ինչ աղէտք ժողովրդեան, որով կը տառապէին երկար տարիներ առանց կարողանալու դարմանը գտնել։ Այն միջոցին՝ Այվազովսկի հասաւ քաղաքին օգնութեան։ Ինք՝ քաղաքէն 25 վերստ հեռու՝ Սու-Բաշի կոչուած տեղն ամարանոց եւ կալուած մ'ունի, ուր մաքուր աղբիւրէ առատ կը վազէ վճիտ ջուր։ Եւ Այվազովսկի իր աղբեր ջուրը ձրի շնորհեց քաղաքին, որ 1887ին ջրմուղ շինելով քաղաքը փոխադրեց զայն. եւ այժմ Թէոդոսիայի ծովափանց վրայ՝ ի յիշատակ այս նուիրաբերութեան՝ կը բարձրանայ գեղեցկաշէն աղբիւրն՝ իր նուիրատուին անունով։

Թէոդոսիա բազմաթիւ հնութիւններ ունէր հին հելլէն-հռոմէական քաղաքակրթութեան. եւ այս հնութիւններն առ ժամանակ մի կը պահուէին՝ 1811էն ի վեր՝ հին մզկիթի մը մէջ, որ մեծ անյարմարութիւններ ունէր։ Այստեղ ալ Այվազովսկին օգնութեան հասաւ։ Պետերբուրգի մէջ յատուկ պատկերահանդէս կազմեց իր նկարներուն,

ուսկից խոշոր գումար մը գոյացաւ. եւ ինք այս գումարն ամբողջ յատկացուց Թէոդոսիայի Հնադարանի հիմնուելուն քաղաքին բարձրաւանդակին վրայ, ուր այսօր բաւական հնութիւններ կան ամփոփուած. ասոնց մէջ նշանաւոր են մանաւանդ Ջենովական ժամանակի մարմարի վրայ քանդակած արձանագրութիւնները: — Բայց Այվազովսկին չշատացաւ այս գումարի նուիրաբերութեամբ, թանգարանին ընծայեց նաեւ հինգ գեղեցիկ նկար՝ իր քաշածներէն:

Այս նկարներէն մէկը կը ներկայացնէ տաճկական ժամանակի Քէֆէն (1783): Երկրորդ նկարն է՝ Սեւ ծովու վրայ գիշերային մրրիկ. նոյնպէս մնացածները՝ բոլորն ալ ծովային հիանալի տեսարաններ:

Սակայն Թէոդոսիայի ամենամեծ զարդն է Այվազովսկիի տունն, իր մշտական պատկերահանդէսովն, ուր ի տես դրուած են եւ կը դրուին հետզհետէ՝ ծերունի նկարչին լաւագոյն ու վերջին գործերը: Մուտքն ազատ է ամէն այցելուի. միայն 20 կոպէկի փոքրիկ վճար մի կայ սահմանուած, զոր Այվազովսկի յատկացուցած է քաղաքին աղքատներուն: Երկար ժամանակ ի ցոյց էին դրուած այստեղ Այվազովսկիի նշանաւոր պատկերներէն՝ Ամերիկայի գտնուիլը. Փոթորիկ Ովկիանոսի վրայ. Ափրոդիտէի ծնունդը. Նոյի իջնելն Արարատէն՝ Ջրհեղեղէն վերջը. Պուշկին Ռուսաց մեծ բանաստեղծը՝ Խրիմի Գուրզուֆեան ժայռերուն վրայ. Պոմպէի քաղաքին կործանումը. Իսրայէլացւոց անցքը Կարմիր ծովէն. Կ. Պոլսոյ Մարմարեան ծովեզերքը. Նէապոլսի նաւահանգիստը, եւ ուրիշ սքանչելի նկարներ՝ զանազան մեծութեամբ: — Պատկերահանդէսը հաստատուած է տան գետնայարկին վրայ. իսկ երկրորդ դստիկոնը կը բնակի ինք նկարիչը, որտեղ ունի իր ընդունելութեան սենեակը, դահլիճը, աշխատութեան

սենեակը, եւ այլն, մեծաւ մասամբ դարձեալ նկարներով զարդարած, որոնց հետ դրած է նաեւ գրական եւ գեղարուեստական աշխարհի հռչակաւոր տաղանդներու պատկերները, եւ իր ընկերներնուն ու բարեկամներուն։

Բաց ի աղբիւրէն, որուն վրայ վերը խօսեցայ, Թէոդոսիայի փոքրիկ բուլվարն ալ Այվազովսկիի անունը կը կրէ։

Ափսոս որ Թէոդոսիա զուրկ է բուսականութենէ, ապա թէ ոչ՝ նրա գեղեցիկ դիրքը կրկին դեղեցիկ փայլ կ՚ունենար։ — Այս նոր ծաղկած քաղաքի մէջ՝ դարավերջի ճարտարապետութեան ձեւով շինուած սիրուն տներէն ոչ շատ հեռու՝ ինչպէս արդէն յիշեցի՝ կեցած են նաեւ (գուցէ դիտմամբ պահուած) Թէոդոսիայի պատմական անցեալին մնացորդները, իւր ջենովեան ժամանակի ամրութիւններու աւերակներն, որ հետաքրքիր դիտողի աչացն ոչ փոքր հակապատկեր կը ներկայացընեն։

Թէոդոսիա ունեցած է իւր ազգային գործունէութեան ալ շրջանը, զոր պարտական է դարձեալ Այվազովսկիի, բայց այս անգամ ոչ թէ նկարչին՝ այլ նրա երէց եղբօր՝ հանգուցեալ Գաբրիէլ Արքեպիսկոպոսին։ Այժմ արդէն պատմութեան սեպհականութիւն են դարձած իր երբեմն նշանաւոր Խալիբեան վարժարանը, դարուս միջինքին, որ ոչ սակաւ ընտիր աշակերտներ եւ գործիչներ հասուցած է ազգին, եւ իր երկու ամսաթերթերը՝ Դաստիարակն 1872ին, եւ անկէ ալ յառաջ՝ Մասեաց Աղաւնին, որ Փարիզէն փոխադրուեցաւ այստեղ 1859ին իր հրատարակութեան Ե տարին, եւ 1860էն կը տպուէր Խալիբեան ուսումնարանի տպարանը՝ երեք զատ զատ հրատարակութեամբք, հայերէն, ռուսերէն·հայերէն, եւ գաղղիերէն-հայերէն։ (Տես Պատմ. հայ լրագրութեան, Հտ. Ա. Հ. Գր. Վ. Գալէմքեարեան, Վիեննա, 1893։) Իսկ ա՞յժմ. այժմ գոհ էինք՝ եթէ

ոչ միայն Թէոդոսիայի՝ այլ առ հասարակ Խրիմի, Հայերը, մանաւանդ կանանց նոր սերունդը, չսկսէին մոռնալ իրենց մայրենի լեզուն։

---

## ԺԱ.

## ՆԱՒԻ ՄԷՋ

Շոգենաւս դարձած եմ, եւ "Մ. Ի. Կոստ." իր ցռուկը տնկած՝ դարձեալ կը ճեղքէ կանաչագոյն ծովը։ Առաւօտեան ժամը 11է. օդը պայծառ, ծովը խաղաղ. եւ ահա սեղանապարդարի հնչակը կը հրաւիրէ զմեզ նախաճաշի։ Ի՜նչ ախորժական ձայն՝ երբ ստամոքսի պարապութիւնն զքեզ կը նեղէ, մանաւանդ՝ եթէ որորման ալ կատարեալ բացակայութիւնը վստահութիւն կ'ազդէ որ գլխոյ պտոյտը պիտի չգայ կէս ճանապարհին զքեզ խանգարելու։ Կը խոստովանիմ որ ճանապարհորդները բնաւ գանգատելու տեղի չունէին՝ այստեղ իրենց տրուած ճաշէն։ Մարտին Նիկիտիչի հետ քովէ քով նստած՝ լեցուցի երկու փոքրիկ բաժակ ռուսական վօդկայ (օղի), մէկն անոր, միւսն ինձ՝ որպէս թէ ախորժակ բանալու համար, որ արդէն բաց էր։ Վօդկայէն վերջը զանազան զակուսկի (մեզէ) եւ ապա երկու տաք կերակուր (առանց արգանակի), կէս շիշ Խրիմի գինի, քաղցրեղէն, պտուղ եւ քօֆէ՝ կատարելապէս բաւական եղան կազդուրելու զմեզ եւ գոհացընելու մինչեւ ժամը 5, որ ժամանակ ճաշի կերակրոց թիւը պիտի կրկնապատկուի, միւս պնակները նոյն մնալով։ Նախաճաշի ժամանակ 28 հոգի էինք նստած սեղանի 13 կին եւ 15 այր։ Խօսակցութիւնն ընդհանուր էր, որուն եռանդով գրաւուած էր բժիշկ ուղեկիցս. իսկ ես քիչ կը մասնակցէի։ Այնտեղ կային պետական պաշտօնատէրներ, վաճառականներ, ուսուցիչ, ուսանող եւն, մէկ խօս-

քով՝ բոլոր դասակարգերու խառնուրդ մը։ Զանազան գոյն եւ կերպ առնելէն վերջը՝ խօսակցութիւնն, որ նաւագնացութեան եւ նաւուն շէնքին կազմութեանը վրայ էր, յանգեցաւ այն եզրակացութեան, որ մեր շոգենաւը՝ ժամանակիս պահանջած բոլոր յարմարութիւններն ունէր եւ ետ չէր մնար եւրոպական ընկերութիւններու՝ ուղեւորաց յատկացուած այս կարգի շոգենաւերէն։ Մեր հրամանատարի օգնականն սկսաւ սեղանակիցներու խնդրանօք նկարագրել մեզ մանրամասն նաւին կազմուածքն, որ արդէն ամէնուս ալ շօշափելի էր։ Անիրաւութիւն պիտի համարէի, եթէ ծովի ու ցամաքի վրայ գրած ատենս, չմոռնալով նաեւ այնպիսի տեղերն, ուր մտաւորապէս միայն կը շրջագայէի ընթերցողներուն հետ (ինչպէս Ազովեան ծովեզերքն), զանց առնէի այն ապաստանարանն, ուր ամբողջ օրեր ու գիշերներ կ՚անցընէի եւ որ կը պահէր, կը կերակրէր, կը հիւրընկալէր եւ իր վրայ բարձած կը տանէր զմեզ քաղքէ քաղաք, երկրէ երկիր, իւր կուրծքը դէմ տալով ամէն վտանգի եւ ալէկոծութեան. մանաւանդ որ մեր նաւը Սեւ ծովու վրայ շրջագայող ռուսական նաւերուն եթէ ոչ լաւագոյնը՝ գէթ լաւերէն մէկը կը համարուէր։

Մեր "Մեծ Իշխան Կոստանդինը„ ծնած է, այսինքն շինուած՝ 1891ին, Նեու-Կեասլ քաղաքը, եւ շրջագայութեան հանուած հետեւեալ տարւոյ Փետրուարին։ Ուրեմն այս ուղեւորութեանս միջոցին (1892) դեռ չորս ամսուան էր, յաղթ, առոյգ եւ պատրաստ ամէն վտանգ դիմագրաւելու։

Մեծ Իշխան Կոստանդին Նիկոլայեւիչի մեծագործ գեղեցիկ արձանն է նաւուն ցռուկը փայլեցընողը, որուն վերջին ծայրը հաստատուած է ծովային զանգակն՝ իբրեւ նաւուն ժամացոյցը։ Կէսօրուան ժամը 1ին զանգակը մէկ կրկնակի հարուած կու տայ (այսինքն՝ մէկ աջ եւ մէկ ձախ.)

ժամն 2րն՝ 2 հարուած, 3րն՝ 3 հարուած եւն․ առանձին հարուածներ ունի 8, 9, 10 եւն ժամերուն համար։ Երբ մշուշը պատած է նաւուն խարիսխ նետած կեցած ժամանակն, այս ժամացոյցն է ազդանշան (signal) տուողը. իսկ գնացքի ատեն՝ շոգւոյ սուլիչը։ Շոգենաւին երկայնութիւնն է 300 անգղ. ոտք, լայնութիւնը 37, բարձրութիւնը 25. եւ բարձած ժամանակ 17—18 ոտք կը նստի ջրի մէջ. տարողութիւնը 2500 տակառաչափ է։ Ուղեւորաց տեղեր ունի առաջին կարգը 97 հատ, երկրորդը 82, իսկ երրորդը նաւայարկին վրայ կարող է առնել մինչեւ 600 հոգի։ Նաւը եռայարկ է։ Առաջակողմեան կայմին վրայ. որուն երկայնութիւնը 95 ոտքէն պակաս չէ, շանթարգել կայ հաստատուած։ Այս կայմը կը պահէ իր քով երկու կարեւոր բան, մի մեծ շոգեշարժ ջրհան, որով վարի յարկին կամ պահեստի տեղւոյն մէջ լցուած ջուրը դուրս կը հանուի. եւ մի պահեստի խարիսխ։ Իսկ երկու կողմէն հաստատուած են երկու շոգեշարժ բեռնաբարձ լծակներ, ծայրերը շղթայ եւ չուան անցուած. որոնց գործն է բեռ դուրս տալ եւ բեռ ներս առնուլ։ Այս լծակներուն շուրջն է որ կը լսուին ճո՛յնա եւ վի՛րա անվերջանալի միօրինակ ձայները։ Ճո՛յնա կը կանչէ բեռներու ընդունելութեան վրայ կեցող նաւաստին, եւ ահա մեքենապետի ձեռքին մէկ շարժմամբը լծակին ծայրի շղթան, օղակ օղակ գալարելով եւ խլացուցիչ աղմկով կ՚իջնէ վար, ուր բանուորները շղթայի ծայրին չուանով կ՚ամրացընեն վեր ելլելու բեռն։ Երբ այս գործողութիւնը կատարուած է՝ վի՛րա կը գոչէ նաւաստին. եւ լծակի շղթան՝ մեքենապետի ձեռքին մի այլ շարժմամբն եւ սաստկագոյն աղմկով կը բարձրանայ վեր, հետն բերելով այն բեռն որ կամ նաւին պահեստատեղին պիտի իջնայ կամ նաւամատուցին վրայ։ Այս երկու գործողութիւնն իրենց ժամանակին դադարեցընելու համար

պէտք է սոփօղ բառն, եւ ահա լծակը կը դադրի շարժելէ. Այս երեք խօսքը՝ ճայնա, մէրտ եւ սոփօղ՝ նաւի մէջ ամենէն աւելի յաճախ լսուած բառերն են, զոր ամէն ուղեւոր բերնուց գիտէ։ — Նաւայարկին վրայ է "շոգենաւու բուլվարը" ուր 3րդ կարգի ուղեւորներն հրաման չունին մտնելու, եւ որ՝ մանաւանդ լաւ եղանակին՝ միշտ ծածկուած է զբօսնողներով։ — Վերի յարկին վրայ է նմանապէս շոգենաւու հրամանատարին (առաջին նաւապետին) սենեակը։ Վերէն 4 շոգեշարժ արուեստական օդափոխ գործիք (ventillateurs) դէպ ՚ի վար, առաջին կարգի օթեակներուն մաքուր զով օդ կը մատակարարեն, եւ այնպիսի զգալի բարեփոխում կը մուծանեն օթեակներու օդոյն մէջ, որ երբ նաւայարկին վրայ ջերմութիւնը 40⁰ է, օթեակներու մէջ կ՚իջնէ 14⁰—15⁰։ Նաւի կողերուն շուրջը՝ դրսի կողմէն՝ "ազատիչ" կոչուած սունկէ օղակներ կան հաստատուած։ Ասոնց նման օղակներ կան վարի օթեակներու մէջ ալ, որոնք պիտի ծառայեն ճանապարհորդներուն՝ նաւաբեկութեան ժամանակ՝ ծովու երեսը մնալու չուզանելու համար։

Առաջին սրահը մտնելու դաւթին մէջ, կանաչ սեղան կայ դրուած. եւ իրօք, ներկայ դարուս մէջ, քաղաքակիրթ երկիրներու նոյնպիսի մի վայրն որ գումարումներու է սահմանուած, չի կրնար առանց թղթախաղի մնալ . . . ինչո՞ւ ուրեմն բացառութիւն կազմէ շոգենաւն որ նոյնպէս բնակարան է թէպէտ շարժուն, ուր "ժամանակն սպաննելու" համար ընթերցանութենէ եւ ննջելէ զատ ուրիշ միջոց չկայ. եւ ահա օրուան մեծ մասը ճանապարհորդներու խումբ մը շարուած գրաւուած է այն կանաչ սեղաններով, կամ թղթախաղի կամ ալ. շահմատի (échecs) ծառայեցընելով իր ազատ ժամերը։ Նոյն դաւթին մէջ կայ ուրիշ գործիք մ՚ալ որ նոյնպէս ունի հետաքրքրուող-

ներ, այն է՝ պատի ծանրաչափը, ամենայն ոք ամենամեծ ուշադրութեամբ կը հետեւի անոր սլաքին, եւ ըստ այնմ զինքը կը կարգադրէ։ Մենք՝ եթէ լաւ կը գուշակէր՝ կ'ուրախանայինք. եթէ գէշ՝ կը տխրէինք, որ շատ ալ անբնական չէ, մանաւանդ ծովի վրայ։

Գաւթէն կը մտնենք առաջին կարգի շքեղ սրահն, որ թէ իբրեւ դահլիճ կը ծառայէ եւ թէ իբրեւ սեղանատուն։ Սրահը 10 ոտք բարձրութիւն ունի, շատ գեղեցիկ է զարդարուած, եւ այս մասին կրնայ ազատօրէն մրցիլ ամենէն ճաշակաւոր դահլիճներու զարդարանքին հետ։ Պատերը ծածկուած են մարմարով եւ հայելիներով, որոնց մէջտեղի կլորակ փոքրիկ պատուհաններէն լոյսն առատօրէն կը տարածուի ներս։ Պատերու բոլորտիքը՝ ճոխ կերպասով պատած թիկնաթոռներ են շարուած. իսկ սրահին ծայրը զետեղուած դաշնակը երաժիշտ ուղեւորներու տրամադրութեան ներքեւ է միշտ՝ իրենց թախիծը փարատելու կամ շրջապատողներուն հաճոյք պատճառելու համար։ Ո՜րչափ քաղցր կը հնչէ մեր ականջին դաշնակի կլավիէրներու—(clavier) արտադրած ձայնն, երբ ոչ մրրկի ահեղ հնչիւնն եւ ոչ անհանդարտ ծովի կատաղի մռընչիւնը կու գային խռովել մեր լսելիքն եւ պտոյտ տալ մեր գլխին։ Գաղղիացի տիկին մը կար Նովոռոսիյսկէն մեզի ընկերացած, որ սքանչելի կերպով կ'ածէր դաշնակին վրայ, եւ պահ մը մոռցնել կու տար ծովային ուղեւորութեան բոլոր անհանգիստ ժամերը։ Երաժշտութիւնը լսելէն վերջն ուղեւորը, նոյն գոհ տրամադրութեան մէջ՝ կրնար նստիլ այնտեղ փառաւոր գրասեղանի առջեւ եւ իր սիրելեաց նամակներ գրել, որոնք կը տարուին իսկոյն շոգենաւին թղթատարական սենեակն, ուր երկու պաշտօնեայք կան յատուկ՝ թղթակցութիւններ ընդունելու եւ ուղարկելու համար։ Իսկ երբ ուղեկիցդ զբաղեալ է իր պատրաստական

մոմերը թղթի վրայ առնելով, դու կարող ես գրասեղանին վրայի գրադարանէն գիրք մ'ընտրել առնուլ՝ մտաւոր պաշարդ ճոխացընելու կամ պարզապէս միտքդ զբաղեցընելու համար։ Այստեղ աւելորդ չէ ռուսերէն գիտնալ, վասն զի գրքերը մեծ մասով ռուսերէն են։ Իսկ երբ սեղանայարդարի զանգակը կը հնչէ, սրահն արդէն թողած է իւր հիւրանոցի եւ դահլճի դիրքն եւ առած սեղանատան կերպարանքը։ Արդէն փռուած են մէջտեղի ութ սեղաններն, որոնց շարժուն թիկունքով նստարաններուն վրայ հարիւր հոգի ալ կրնան տեղաւորուիլ։ Չմոռնամ յիշել նաեւ պատերէն կախուած երկու պատկերներն, որոնք կապ ունին շոգենաւի անուան հետ. մէկն՝ "առաքելոց հանգոյն սուրբ" ըսուած Կոստանդին իշխանն է, միւսը Մեծ իշխան՝ հանգուցեալ Կոստանդին Նիկոլայեվիչ։ Այս երկու պատկերները միշտ առանձին յարգանքով կը պահուին այստեղ։ Լոյսն այս սրահին մէջ փոքրիկ կողերու լուսամուտներէն (illuminateurs) չէ որ կու գայ. նաւուն յետսակողմէն չորս պատուհան եւ նաւայարկէն մեծ ապակեպատ լոյսիջոյցը կ'ամբողջացընեն սրահին լուսաւորութիւնը։ Սրահին կից են առաջին կարգի տիկնանց օթեակները, մինչդեռ էրիկ մարդոց օթեակները մտնելու համար պէտք է սանդուղքին դիմել եւ իջնել նաւին ստորին կամ երրորդ դստիկոնը։ Կանանց օթեակներուն մօտ ուրիշ առանձին օթեակներ ալ կան, որոնք կը յատկացուին շոգենաւաց ընկերութեան վարիչներուն կամ բարձրաստիճան անձանց. եւ եթէ մէկն ուզէ այս սենեակներէն մէկն ունենալ, պէտք է սովորականին եռապատիկը վարձ վճարէ։ Այս կարգի մէջ սենեակ մ'ալ բաղնիքի տեղ կը ծառայէ։ Մեր ննջարաններն երեք մինչեւ վեց մարդու համար էին, բարձր, լուսաւոր, անդորր մահճակալներով. մարմարեայ լուացարաններով, սիրուն հայելիներով եւ օթոցներով։ Գիշեր-

ները թէ ննջարանները, թէ սրահը, թէ գաւիթը եւ թէ բովանդակ շոգենաւը՝ ելեկտրական լուսով կը լուսաւորուէր, որ կը տեւէր կանոնաւորապէս մինչեւ կէս գիշեր. 12 որ կը լինէր ժամը՝ իսկոյն ամէն տեղ կը դադրէր ելեկտրականութեան հոսանքն, այն ժամանակ կամայ ակամայ ամէնքը կը քաշուէին իրենց օթեակները. Թէպէտ պակաս չէին նաեւ այնպիսիներն, որ առանձին հաճոյք կը զգային նաւայարկին ջինջ ու զով օդը վայելելով կամ խօսակցիլ եւ կամ մտածութեանց մէջ ընկղմիլ, այն միջոցին երբ մթին գիշերն իր սեւ վերարկուն ծածկած էր ամէն կողմ եւ բաց ի երկնային աշխարհաց ցոլացուցած մանրիկ փայլերէն ուրիշ տեղ երկրային լոյս չէր երեւար: Բայց միայն լոյս չէր ելեկտրականութեան մեզի տուածը. մենք զանգակներ ալ ունէինք մեր տրամադրութեան տակ, որոնց ձայնը կը հասնէր սպասուց սենեակը (buffet)՝ ծառաները մեր կարգադրութեան բերելու համար: Ելեկտրական զանգակները հաղորդակցութեան մէջ կը դնէին բոլոր օթեակներն ու սրահը՝ սպասուց սենեկին հետ: Ուղեւորներուն առհասարակ ոչ փոքր հաճոյքն էր նաեւ շոգենաւին մեքենական բաժինը: Այստեղ կրնայինք թէ՛ մեքենաներու յատակագիծները դիտել եւ թէ բուն մեքենաներն՝ իրենց ամէն գործողութիւններովը: Մեքենագէտին բացատրութեան համաձայն՝ մեր շոգենաւի մեքենան 2400 ազդարար ոյժ (force indicatrice) ունէր, 4 պղնձով, որոնց 3ը միշտ կը գործէին եւ մէկը կը մնար պահեստի: Մեքենան վայրկենի մէջ 58—60 թաւալում (tour de rotation) անելով, շոգենաւը 40—45 պուդ հանքածուխ կը սպառէր եւ 11—12 մղոն կը յառաջանար: Ամենարագ ընթացքը 16 մղոն է մէկ ժամու մէջ, բայց սպառած ածխոյն քանակութիւնը կրկինէն աւելի է այն ժամանակ, այսինքն մինչեւ 110 պուդ: Մեր մէջէն մէկը հար-

ցուց թէ ո՛րչափ է շոգենաւուն ամէն մէկ տոյլին մեծութիւնը: — 22 անգղ. ոտք, եղաւ պատասխանը. որ մեր սովորական քայլէն քիչ մեծ չէր:

Երկրորդ կարգը նոյնպէս մեծ յարմարութիւններ ունի: Ունի իւր սրահն, որ նոյնպէս սեղանատան տեղ կը ծառայէ, եւ ննջարաններն, որ աւելի ընդարձակ են, 8 հոգւոյ համար: Բայց ի հարկէ չունի առաջին կարգին շքեղութիւնն ու զարդարանքը:

Իսկ երրորդ կարգի ուղեւորներուն համար ննջարանի տեղ կը ծառայեն մեքենային երկու կողմը, երկրորդ կարգի՝ երկար գաւիթներն, մէջտեղէն տախտակամած զուգահեռական բաժանմունք եւ ամէնէն վարը՝ երրորդ յարկին մէջ ալ մէկ հասարակաց սենեակ: Ա. եւ Բ. կարգերու ուղեւորներն անպատճառ ճաշ կ'ընդունին, առանց ճաշի տոմսակ չի տրուիր. Բայց Գ. կարգի ճանապարհորդներն՝ ուտելիքն իրենց հետ ունին, թէեւ կարող են նոյնպէս օգտուիլ շոգենաւի խոհանոցէն, որոշ վճարքով ամէն անգամ, որ թանգ ալ չէ: Մենք եւս եթէ ճաշի համար որոշուած ժամերէն դուրս կերակուր պահանջէինք, պէտք էինք նմանապէս վճարել առանձին: —

Այս բոլոր բացատրութիւնները լսելէն վերջը՝ կը մնար իմանալ դեռ մեզ համար ամենակարեւորը, այսինքն. ի՞նչ ունէր "Մեծ Իշխ. Կոստանդին" իր հիւրերը ծովի աբշտանէ դէմ պաշտպանելու: Այս հարցման ալ գոհացում տրուեցաւ մեզ, որով տեղեկացանք, որ շոգենաւը կրկին յատակ ունէր, որոնց մէջտեղը 24) տակառաչափ ջուր կրնար ընդունիլ. 6 շեղ պողպատեայ պատեր կը բաժնէին շոգենաւը: Վերնայարկի կողերէն կախուած էին 7 մակոյկ, որոնց 4ը յատկապէս ազատարարի պաշտօն պիտի կատարէին, ունելով իրենց մէջ պատրաստական անամէջ արկղիկներ եւ ամբողջ կազմուածք, այսինքն կայմ, առագաստ, թիակ.

կողմնացոյց, եւ այլն։ — Այս 7 մակոյկներուն մէջ 300 հոգի կրնային մտնել, այո, բայց եթէ նաւն իր ճամապարհորդներու հաւաքածոյն ամբողջական ունենար կամ նոյն իսկ քիչ մ'ալ պակաս, որով միշտ գոնէ 600 մարդ կը հաշուի, եւ նաւաբեկութեան ժամանակ պտոյց կէսը մտնէր նաւակներն ազատուելու, միւս կէսն ի՞նչ պիտի ընէր։ Նաւապետն բնականապէս չըսաւ մեզ թէ այս մնացած 300 հոգին դատապարտուած էին ծովի ձկներուն կեր երթալու, բայց գոհացուցիչ պատասխան ալ չկրցաւ տալ։ Այս վերջիններուն բոլոր յոյսը պէտք է մնար այն 4 նստարաններուն վրայ, սնամէջ արկղիկներով, որոնք նաւին յետսակողմը դրուած են ծածկին վրայ, եւ որոնք լաստի պիտի կրնան փոխարկուիլ. այս նստարաններն ալ կ'ընդունին 50 հոգի։ Միւսնե՞րը։ Միւսներն ալ թող իրենց յոյսը դնեն սունկէ օղակներու վրայ, որոնցմէ բաւականաչափ կայ շոգենաւին մէջ։ Այս օղակներու վրայ յեցած՝ թէ միայն նաւաբեկեալը գիտէ գործածելը, (պէտք է թեւերու տակ անցընել, որ օղակը գլխի վրայ չանցնի եւ չխեղդէ), կարելի է առ ժամանակ մի դիմանալ ջրի երեսի վրայ, այն փրկարար յուսով թէ՝ շուտով եւ շատ շուտով, ազատիչ նաւը պիտի երեւայ հորիզոնին վրայ, եւ զիրենք մի առ մի քաշէ ծովէ երեսէն...։

Բայց թողնենք այս տխուր պատկերն, որ ո՛չ ինձ է հաճելի, եւ ո՛չ ալ անշուշտ իմ ընթերցողներուս, եւ դառնանք դիտել Խրիմի ծովեզերքը։

---

## ԺԲ.

## ԴԷՊԻ ԵԱԼԹԱ

Թէոդոսիայէ մեկնելէն վերջը՝ շոգենաւն իր ետին կը թողու Սուդակի ծովախորշն եւ կը դիմէ յառաջ։ Սուդակ նշանաւոր է իր ընդարձակ բարեբեր այգիներովն, որոնք խոշոր բաժին մ'ունին

Խրիմու գինիներու մէջ. պյատեղի գինին այնքան թունդ չէ, բայց շատ ախորժելի է, բուն vin de table։ Սուդակի մէջ, հոն, ուր երբեմն Ջենովացիք կ'իշխէին, եւ որոնց հիմնած հսկայ ամրութիւններու աւերակները դեռ մինչեւ հիմայ ուղեւորներու ուշադրութիւնը կը գրաւեն, այժմ գերմանական գաղթականութիւն է տարածած իր թեւերը։ Շնորհիւ իր դիրքին եւ պտղաբեր հովտին՝ Սուդակ եւս ունեցեր է իր պատմական անցեալը։

Այստեղ եւս Յոյները քաղաք էին հիմնած, որ յայտնի էր արդէն Է. դարուն Սուգդէէա անուամբ եւ մինչեւ անգամ կարողացեր էր իւր անունը տալ Սեւ Ծովուն,[1] զոր նաեւ Ռուսները՝ երբեմն Սուրօժեան ծով են կոչած, Սուդակի անունէն, որ իրենց մէջ Սուրօժ կոչումը կը կրէր։

Սուդակի հովիտն՝ իր ետեւի կողմէն պատուած է 4 բարձրագագաթ, ժայռապատ լեռներով, որոնք կը պաշտպանեն հովիտը ցուրտ հովերէ, այս լեռներէն մէկուն ծայրը մի ահագին ժայռ, որ զարմանալի ձեւ մ'առած կը մտնէ ծովի մէջ, — Ալչաղըն քայա (ցած մարդու ժայռ) կը կոչուի։ Առ հասարակ թաթարական տիրապետութեան յիշատակներն այնպէս անխախտ կը պահուին դեռ, որ Խրիմի որ կողմն ալ որ երթանք, կը գտնենք շարունակ թաթարական անուններ խորին կերպով դրոշմուած քաղաքներու, գեղերու, լեռներու, գետերու վրայ, եւ ամէն կողմ եւ անխախտ պահպանուած մինչեւ հիմայ։

---

[1] Միջին դարու արաբացի աշխարհագիրն Աբուլֆէդա՝ Սուրդակեան եւ Նիթաշի ծով կը կոչէ եւ Սուդակը կը համեմատէ Կաֆֆայի հետ, եւ հիմնուելով մի այլ արաբացի երկրագրի, Իբն Սաիդ Մահրեբիի որ կ'ապրէր ԺԳ. դարուն, կ'ասէ. “Սուրդակի բնակիչները զանազան ցեղերու եւ դաւանութիւններու կը բաժնուին, բայց տիրող կրօնը քրիստոնէութիւնն է։„

Սուդակէն վերջ՝ ծովեզերքի վրայ երեւան կ՚ելլէ Ալուշթա գիւղն որ իր մէջն այգիներով եւ շուրջը լեռներով է պատած։ Բնակիչները բոլոր Թաթարներ են, որոնք այգեպանութեամբ կը զբաղին եւ կը պատրաստեն Խրիմի գինիներուն լաւագոյնը. բայց խաղողի այգիները միայն իրենց ձեռքը չէ. բազմաթիւ կալուածատէրներ Հայ, ռուս կամ այլազգի, հետզհետէ իրենց ձեռքն են անցուցած ընտիր մասն այս այգիներուն։ — Ալուշտայի ետեւն է կանգնած, Սիմֆերոպոլէն ոչ շատ հեռու, Նշանաւոր Չադըր-դաղ (վրան-լեռ) սարն, ամենէն բարձրը Խրիմի լեռներու մէջ։ Խրիմի ամառանոցին այցելուներուն ամենէն զուարճալի պտոյտներէն մէկն ալ Չադըր դաղի վրայ բարձրանալն է. այս լեռան գագաթէն՝ դիտողի աչքի առջեւ կը պարզուին վերջին աստիճանի հմայիչ տեսարաններ. տեսութեան հորիզոնը կը հասնի մինչեւ 126 վէրստ, իր մէջն ունենալով Քէրչի թերակղզին, Ազովեան ծովը, Սեւաստոպոլի նաւահանգիստն իր նաւերով եւ դէպ ի երկրին ներսերն անվերջ տարածութիւն մութ կանաչ անտառներու, այգիներու մէջ պատած գիւղեր եւ ամառանոցներ, կաւճային բլուրներ, Եայլա կոչուած լեռնաշղթային բազմաթիւ գորշ ժայռերն, եւ վերջապէս իր ստորոտի վրայ Ալուշտան իր հին աշտարակներովն, ու սօսիէ (peuplier blanc) ծառուղիներով։ Բայց որ նուազ նշանաւոր չէ՝ Չադըր-դաղն իր մէջն 2 անձաւ ունի, որոնք ոչ թէ միայն Խրիմի այլ եւ գուցէ ամբողջ աշխարհի ամենահետաքրքրական եւ ամենամեծ շթաքարերը (stalactites) կը բովանդակեն։ Այս անձաւներէն մէկը կը կոչուի Բին-բաշ-քօբա (հազարգլխանի անձաւ) եւ միւսը Սօղուք-քօբա (պաղ անձաւ)։ Բին-բաշ-քօբայի մուտքը նեղ է եւ ցեխոտ. եւ ներս մտնելու համար պէտք է կատարելապէս սողալ. բայց երբ ներս կը մտնէ մարդ, ահա կը պարզուին իր առջեւ ընդար-

ձակ սրահներ շլթաքարերով զարդարած, ամբողջ սիւներ եւ ուրիշ սքանչելի բազմաձեւ զարդարանք շլթաքարերէ։ Անձաւի յատակը լի է մարդկային եւ անասնական ոսկրներով, կը պատմեն, որ Յունական Թուականին գտեր են այստեղ ամբողջ մարդկային կմախքներ պատերուն կռթնած, եւ բազմաթիւ գանգեր. բայց ամէն մի այցելու պարտ է համարեր իրեն մի մի կտոր առնել այս կմախքէն եւ գանգերէն, չգիտեմ ի՞նչ հաճոյքի համար եւ այժմ հատակոտոր ոսկրներ են միայն մնացեր։ Կարծիք կայ թէ այս անձաւը հեթանոսութեան ժամանակ կռատուն է եղեր, ուր մարդկային զոհեր կը մատուցուէին։ Բաց ի սրահներէն բազմաթիւ ուրիշ մուտքեր եւ գաւիթներ ալ կան անձաւի խորերը, բայց այցելուները խոհեմութիւն չեն համարիր շատ ներսերը խրիլ։ Միւս անձաւը Սօվուք-քօբա աւելի գեղեցիկ է. սառը սրահներուն մէջ կայ այնպիսին, որ 50 ոտք բարձրութիւն ունի. սրահներու եւ գաւիթներու շլթաքարերը վերին աստիճանի գեղեցիկ եւ բազմազան ձեւերով կը ներկայանան եւ ճրագի լոյսի առջեւ այնպէս կը փայլին ինչպէս զմրուխտ արեւի առջեւ։

Ալուշտայէն 15 վէրստ հեռու կանգնուած է ռուսական Կոզմա-Դամիանեան վանքը. տեղական աւանդութեան համեմատ այս երկու անարծաթ բժիշկներն այստեղ են նահատակուեր եւ վանականները մինչեւ հիմայ ալ կը պատմեն թէ ինչ հրաշքներ են կատարուեր վանքի շէնքի տակէն բղխող աղբիւրի ջրի մէջ։

Մեր շոգենաւն թողած է ալ եւս բաց ծովը եւ չ՚ուզեր եզերքէն բաժնուիլ, զոր քերելով պիտի հանինք Եալթա։ Գեղեցիկ է այստեղ Խրիմի ծովեզերքը։ Ահա կը բարձրանայ Կաստել բլուրն, որ լանջքը կատարելապէս ծածկած է խաղողի որթերով. այս գեղածիծաղ տեսարանէ վերջը յանկարծ մէջտեղ կ՚ելլէ ահագին քարաժայռ մի,

որ Թաթարական Այու-դաղ անունը կը կրէ։ Թաթարներն իրաւունք ունին այս կոչումը տալու, վասն զի ժայռն այնպիսի դիրք ունի, որ հեռուանց՝ կարծես արջ է պառկեր եզերքի վրայ եւ դունչը անկած ջուր կը խմէ ծովէն։

Եալթայէն հազիւ 10 վերստ անդին, կարծես այս նշանաւոր ամառնային քաղաքի մօտ լինելն իմացնելու համար մեզ կը ներկայանայ նախ անոր մանրանկարը (miniature), Գուրզուֆ գեղն, կանաչազարդ ամփիթէատրի դիրքով, որ չնայելով իր փոքրութեան կը բովանդակէ իր մէջ ամառնային բնակութեան յարմարութիւններու մեծ մասը. գեղեցիկ հասարակաց պարտէզներ եւ այգիներ սքանչելի հարաւային բոյսերով, ընտիր պանդոկներ, ելեկտրական լուսաւորութիւն, եւ զինուորական երաժշտութիւն։ Ռուսաց մեծ բանաստեղծը, Պուշկին, 1820ին ապրած է այստեղ եւ այժմ ամէն մի ռուս այցելու հասարակաց պարտէզէն հեռացած ժամանակ, պարտ կը համարի մի ճիւղի կտոր տանիլ հետն այն կիպարիսի ծառէն զոր կը սիրէր Պուշկին եւ որ մինչեւ հիմայ ալ իր անունով՝ "Պուշկինի կիպարիս" կը կոչուի։ Պուշկին յատուկ բանաստեղծութիւն ունի գրած Գուրզուֆի վրայ, որու մէջ չի մոռնար յիշել իր կիպարիսը։ À propos, կ'առնեմ շոգենաւի գրադարանէն Պուշկինի բանաստեղծութիւններու հաւաքածոյն եւ Մարտին Նիկիտիչի հետ կը կարդանք այն գողտրիկ տողերն, որ ռուս բանաստեղծը նուիրած է իր սիրած ամարանոցի բնութեան՝ եւ որոնցմէ մէկ տուն իբրեւ նմոյշ կը թարգմանեմ այստեղ՝ ընթերցողներուս համար.

Դու աստղ ինձ ծանօթ, կը յիշեմ թէ ինչպէս
Լուսափայլ կը ծագիս այն խաղաղ վայրի վրայ
Ուր ամէն բանէ միշտ՝ սիրտն հաճոյք կը զգայ,
Ուր հովիտներու մէջ կանգնած է յաղթ սօսին,

Ուր աղօտ կիպարիսն եւ աճիւ մրտենին
Փափկօրէն կը նիրհեն, եւ ուր հեզ ու քաղցրիկ
Կը ծփայ, կ'աղմկէ կէսօրուան մեղմ ալիք . . .

Ծանօթ է Այվազովսկիի նշանաւոր նկարն, որ կը ներկայացընէ բանաստեղծը Գուրզուֆի ժայռի վրայ կանգնած, այս տեսարանը դիտելով:[1]

Գուրզուֆէն մինչեւ Եալթա ծովեզերքը խաղողի ընդարձակ այգիներու եւ ամարանոցներու անընդհատ շարք մը կը կազմէ, որոնց մէջ նշանաւոր է արքունի այգին Մասանդրա: Կառավարութիւնն այստեղ շատ կանոնաւոր եւ ընդարձակ հիմանց վրայ հաստատուած այգետնտեսութիւն եւ գինեգործութիւն կը յառաջացնէ, ուսկից շատ անգամ օրինակ կ'առնեն մասնաւոր կալուածատէրեր:

Այս նպատակով, այս այգւոյն մօտերը յատուկ այգեպանութեան եւ գինեգործութեան դպրոց ալ է հիմնուած. ուր տեսական ուսման հետ գործնականն եւս զուգընթացաբար կ'ընթանայ: Այս վարժարանէն ելած գինեգործներն եւ այգեպաններն են, մեծ մասով, Խրիմի այգիներու մէջ գործողները: — Ինչպէս ինձ պատմեցին Մասանդրայի մէջ ռուսական փոքր եկեղեցի կայ, որուն ճիշդ խորանի տակէն յատակ եւ շատ պաղ ջրի աղբիւր կը բղխի եւ տաճարին պատի տակէն հոսելով՝ պարտիզի մէջ բարեպաշտ ժողովրդեան նիւթական մարմնական ծարաւը կը յագեցընէ: Չեմ տարակուսիր, որ այս եկեղեցին ջերմեռանդ այցելուներ շատ կ'ունենայ մանաւանդ ամառ ժամանակ:

Այժմ ուղղակի կը դիմենք Եալթա: Ծովեզերքի կանաչազարդ բարձունքի հովասուն ամա-

1 Այվազովսկիի այս նկարը ի ցոյց էր դրուած Վիեննայի երաժշտ. եւ թատեր. աշխարհահանդէսի (1892) Ռուսական բաժնի մէջ:

րանոցներու եւ ճոխ ու ընդարձակ այգիներու տեսքը գամած է զմեզ վերնայարկին եւ ոչ ոք կ'ուզէ մեզմէ այս հազուագիւտ տեսարանն անուշադիր թողուլ: Վարէն կապոյտ ծով, վերէն կապոյտ երկինք, երկուքն ալ ջինջ ու խաղաղ իսկ քովէն կանաչ եւ դեղազուարճ եզերք — ո՜վ արդեօք պիտի չհրապուրուէր այս տեսարանով: Բայց կար ուրիշ բան մ'եւս, որ մեր հետաքրքրութիւնը կը շարժէր եւ մեծ զուարճութիւն կը պատճառէր: Թռչուն ձուկեր էին, դելփիններ, որ մէկը միւսի ետեւէն ջրէն դուրս կը ցատքէին, կը խաղային եւ կարծես շոգենաւի հետ մրցիլ կ'ուզէին ամենայն ուժով թռչտելով եւ լողալով մեզի հետ դէպ ի յառաջ: Անօգուտ ջանք, վասն զի մենք դէպ ի ցամաք կը դիմէինք, իսկ դելփինները անշուշտ չէին մտածեր մինչեւ հոն մեզ ընկերակցելու, մեզի հետ ցամաք ելլելու:

---

ԺԳ.

## ԵԱԼԹԱ

Կէսօր էր, երբ շոգենաւը հանդարտ քայլերով մտաւ Եալթայի նաւահանգիստն եւ քարաշէն հաստատուն նաւամատոյցին կռթնելով նետեց իր խարիսխը: Մեր առջեւ պարզուած է նշանաւորն Եալթա, Խրիմի ծանօթ ամառնային քաղաքն, ուր ամէն կողմէն կը դիմեն հիւանդներ, այցելուներ եւ զբօսաշրջիկներ: Ետեւէն կանաչապատ լեռներով պատսպարուած, կիսաբոլոր ձեւով կանգնած է քաղաքն՝ ամբողջապէս ծառերու, անդաստաններու մէջ թաղուած եւ վերին աստիճանի նկարագեղ (pittoresque) դիրքով:

Երկու թեւերուն վրայ կը բարձրանան բլուրներ, որոնք կարգ կարգ եւ լաւ ճաշակով շի-

նուած ամարանոցներ ունին, իսկ մէջքը տուած է գերազանցապէս կանաչ, անտառապատ մեծ լեռան։

Պանդոկներու 2—3 յանձնակատար (commissionnaire) իսկոյն շրջապատեցին զիս, երբ ելայ նաւամատոյց՝ ամէն մէկն իւր պանդոկը կը հրաւիրէր, սակայն ոչ մէկը գոհ մնաց, վասն զի պանդոկ երթալու հարկաւորութիւն չունէի։

Հաճութեամբ քանի մը քայլ ոտքով չափեցի նաւամատուցին վրայ, աչքս՝ դէպ ի ծովեզերքն ուղղած, եւ ապա Մարտին Նիկիտիչի հետ դիմեցինք այնտեղ շարուած կառքերէն մէկուն, մտանք, նստանք եւ ահա թաթար կառապանը մտրակի խիստ հարուածով մը նշան տուաւ իր ձիերուն յառաջ վազելու, եւ սկսանք սուրալ։ Յունիսի վերջերու տաք արեւն զգացնել կու տար իր բոլոր ոյժը, բայց բարեբախտաբար այստեղ կառքերը տեսակ մի ամպհովանիով ծածկած են, որով անթափանցելի կը մնան ճառագայթներէն։ Բժիշկ ուղեկցէս աւելի լաւ առաջնորդ չէի կրնար գտնել Եալթայի համար, եւ մէկ ժամու մէջ կարողացանք ընդհանուր կերպով տիրել ամբողջ քաղաքին, որուն ամարանոցները մեծաւ մասամբ բլրոյ զառիվերի վրայ են հաստատուած։ Այս շրջանը կատարելէն վերջը լաւագոյն համարեցանք կառքն արձակել եւ մտանք Россія պանդոկին պարտէզը՝ զովանալու. եւ ապա ոտքով անցանք ամբողջ ծովեզերքի փողոցն, որ ամէնէն գեղեցիկն է Եալթայի։ Երկու առուակ կ'ոռոգանեն Եալթայի հովիտն, ուր կանգնած է բուն քաղաքն. Ուչան-սու[1] եւ Եալթա։

Եալթան իբրեւ ամառնային քաղաք առհասարակ, կենդանութիւն կը ստանայ այն ժամա-

---

1 Ուչանսու՝ ինչպէս անունն ալ ցոյց կու տայ (թռչող ջուր) կամ ինչպէս Յոյները կը կոչէին Կրեմաստօներօ (կախուած ջուր) կը բղխի Եալթայի շրջակայ լեռնաշղթայէն, եւ քաղաքէն 5 վերստ հեռու գեղեցիկ ջրվէժ մը կը ձեւացընէ, որ այժմ զբօսատեղի է եղած ամառնային այցելուներու։ Ջրվէժը 350 ոտք բարձրութիւն ունի։

նակ միայն՝ երբ այցելուները կը սկսին Ռուսաստանի ամէն կողմէն գալ. եւ կը նուազի՝ երբ այս վերջինները կը հեռանան: Եալթայի saison տուածն Օգոստոսի կէսէն կը սկսի, եւ կը տեւէ մինչեւ Հոկտեմբեր, թէեւ նոյն իսկ Յունիսի մէջ ալ այցելուներ պակաս չեն. եւ ես Յունիսի 25ին այնտեղ բաւական բազմութիւն տեսայ արդէն:

Առաջին կարգի հիւրանոցներ, որոնց մէջ մանաւանդ ծովեզերեայ Россiяյն, որ թէ արտաքին շքեղ դիրքովն եւ շինութեամբն եւ թէ ներքին կազմակերպութեամբն ու կարասիքովն ամենաճոխ պանդոկներէ ետ չի մնար, ամէն յարմարութիւններ կ'ընծայեն այցելուներուն: Պանդոկներէն զատ կան յատուկ կահաւորած սենեակներ (chambres garnies), որոնք գրեթէ նոյն պաշտօնը կը կատարեն եւ միշտ լի են յաճախորդներով: Այս պանդոկներէն ամէն մէկը՝ 40է սկսած մինչեւ 150 սենեակ ունի. պէտք է երեւակայել թէ ինչ ահագին դղրդում կը տիրէ այն միջոցին պանդոկներու մէջ:

Ապրուստն այստեղ անշուշտ շատ աժան չէ, բայց առասպելական թանգ գներ ալ չկան: Կահաւորած սենեակներու մէջ բուն saisonի միջոցին միսենեակի վարձքն ամսական 25էն մինչեւ 40 րուբլ է, իսկ ճաշը 25 րուբլ: Իսկ ձմեռ ժամանակ այս գները կէսէն ալ պակաս են:

Օգոստոսի միջիններէն մինչեւ Հոկտեմբերի վերջերը Եալթա կու գան յատկապէս այն հիւանդներն որոնց յանձնարարուած է խաղողով բուժում, այսինքն խաղող ուտելով բժշկուիլ, եւ միանգամայն ծովային բաղնիք[1]. եւ սա ամենալաւ եղանակն է Եալթայի: Իսկ աւելի յառաջ՝ Մայիսի մէկէն մինչեւ Օգոստոսի սկիզբները՝ շատ աւելի յարմար ժամանակ է ծովային բաղնիքներու եւ քումիսով (Кумис) բժշկուելու: Այս միջոցին գներն ալ անհամեմատ աւելի չափաւոր են:

Մարտին Նիկիտիչի հետ նստած ենք քաղաքային այգւոյն հովանաւոր ծառերուն տակ եւ Օդէսայի գարեջրի բաժակներ կը դատարկենք եռանդով. գարեջրի պաղութիւնը մէկ կողմէն՝ ծառուղւոյ զովութիւնը միւս կողմէն՝ բաւական հեռացուցին մեզմէ կէսօրուան տաքը, որ հասեր էր 21° Ռէոմիւրի: — Մարտին Նիկիտիչ, ի՞նչպէս կը բժշկէք դուք խաղողով Ձեր հիւանդները, հարցուցի ես: Եւ բժշկին բացատրութիւնը աւելորդ չեմ համարիր այստեղ յիշատակել:

— Հիւանդին կու տանք լաւ խաղող. նայելով հիւանդութեան ուժոյն, կը սկսինք օրական 1 ֆունտէն (2, 44 ֆունտ = 1 քիլօ), եւ ամէն օր կ'աւելցընենք կէս կէս ֆունտ, մինչեւ որ 8 ֆունտի հասնի օրական. եւ ապա այս քանակութիւնը կը շարունակուի մինչեւ յաջող արդիւնքն ստանալը. ընդ ամէնը կը տեւէ 4 մինչեւ 6 շաբաթ: Բայց միտ դնելու է, որ ուտելու ժամանակ խաղողի կեղեւն եւ կուտերը դուրս հանուին:

— Ի՞նչ հիւանդութեան դէմ կը գործածէք այս բուժումը:

— Խաղողով բուժումը՝ զանազան հիւանդութիւններու դէմ կը յանձնարարուի. օրինակ, շնչառութեան խողովակի հարբխային (catarrhal) վիճակին, որովայնի գործարանաց արեան շատութեան, լերդամիջի քարին, տեռատեսութեան (hémorroïdes), սրտի հիւանդութեան դէմ եւայլն:

— Է. կ'օգնէ՞ կը կարծէք:

— Շատ անգամ, պատասխանեց բժիշկս. ուստի այս՝ ի գիտութիւն այսպիսի հիւանդներու:

— Իսկ կումի՞սը:

— Կումիսը լատիներէն՝ (մեկնեց բժիշկը) vinum lactis կը կոչուի այսինքն կաթի գինի, կը պատրաստուի մատակ ձիու կաթէ, եւ կը տրուի սովորաբար արեան նուազութեան, բոլոր հնացած (chronique) հարբուխներու (catarrhe) եւ թանչքի

դէմ, նաեւ հիւծախտաւորներուն՝ եթէ թոքերու մէջ խոռոչներ չեն երեւցած կամ թարախ գոյացած չէ դեռ։ Կումիս խմելու ամենալաւ ժամանակը Մայիս եւ Յունիս է. օրական 1 բաժակէն սկսած մինչեւ 3 շիշ. կամ մինչեւ 6—8 շիշ խմողներ ալ։

Բայց շատ այցելուներէն լսեցի որ Եալթա կամ շրջակայ ծովեզերեայ ամարանոցներն եկող հիւանդներու վրայ շատ աւելի օգտակար կերպով կը ներգործէ այստեղի ընտիր օդը, քան թէ կումիսն ու խաղողը։ Օդին առաւելութիւնն այն է, որ բաց ի մաքրութենէն՝ այստեղ գարունը կանուխ կը սկսի, աշունը գրեթէ տաք եղանակ է, իսկ ձմեռն բարեխառն է։ Օդին մաքրութեան կողմէն եւ ծովային լողացումներու համար աւելի յանձնարարելի են Եալթայի մերձակայ ծովեզերեայ գիւղերը՝ քան թէ բուն քաղաքն, ուր նախ՝ սաստիկ բազմութիւն կը տիրէ՝ որ բնականաբար օդի անապականութեան չի ծառայեր, եւ երկրորդ՝ տեղւոյ սղութեան պատճառաւ, գլխաւոր ծովեզերեայ փողոցին վրայ եւ կողմնական անցքերուն մէջ, որ բնակութեան տներէն շատ հեռու չեն, ամէն տեսակ խանութներ կան հաստատուած, ձկնեղէնի, կանաչեղէնի, մրգեղէնի, նաեւ գինետուններ, մինչեւ . . . ապանդանոց. իսկ քաղաքին անմաքրութիւնները կը թափուին ուղղակի ծովեզերքն, եւ ծովն երբեմն փոխանակ իւր խորերը տանելու՝ կը բերէ ընդհակառակն ետ, դուրս կը նետէ։ Այս բոլորը կը վնասեն օդի մաքրութեան։

Ծովեզերքի վրայի լողարաններուն մէջ կարելի է նաեւ տաք ջրով բաղանիք ընդունիլ. արդէն ծովի ջուրն՝ աշնան եւ գարնան՝ 14°էն վար չ՛իջնար Ռէոմիւրի։ Այս աստիճանը կը մնայ երբեմն ձմեռուան մէջ ալ, եւ ամենացուրտ եղանակին իսկ՝ դարձեալ զրոյէն 9 աստիճան վեր տաքութիւն ունի։ Խրիմի եղանակին այս տաքութեան շնորհիւ՝ քիչ չեն այնպիսիներ որոնք ձմեռ կ՛անցընեն Եալթա եւ շրջակայքը։ Սեւ ծովի խրիմեան ծովեզերքը նշանա-

ւոր է իրօք այս կողմէն. Նոյն իսկ բնութիւնն իրեն օգնութեան կու գայ, Նոյեմբ., Դեկտ. եւ Նոյն իսկ Յունուար ամիսներուն մէջ, իր գրկէն՝ գետնէն, բուսցընելով եւ ծաղկեցընելով ոչ՛ միայն վարդ, այլ նաեւ մանուշակ, ռեզէդա (réseda), շահպրակ (giroflée) եւայլն: Արդէն փետրուարի մէջ այս կողման անտառները ծաղկած գլէ-ի տունկեր (amélanchier) ունին, իսկ տնային պարտէզներուն մէջ նշենին եւ դեղձենին իրենց կանաչութեան հոտը կը տարածեն: Ուշ կը քնի այս տեղ բուսականութիւնն եւ շուտ կ՚արթննայ: —

Եալթայի շրջակայքն զբօսնելու համար պէտք է դիմել կամ մօտակայ գեղազուարճ ծովափունքն եւ կամ մանաւանդ քաղաքը շրջապատող բլուրներն ու լեռը: Ծովափունք Յունաց ձեռքն են, իսկ լեռները Թաթարաց: Զբօսնուլ ուզողն այս երկուքէն մէկուն պէտք է դիմէ՝ նաւակ կամ ձի վարձելու համար:

Եալթա նախնապէս հիմնուած է Յոյներէն, որոնք դեռ մինչեւ հիմայ իր հին անուամբն Եալիտա կը կոչեն՝ Իալօս բառէն, որ կը նշանակէ ծովեզերք որմէ տճկ. Եալը: Միջինդարեան քարտէսներու վրայ Քալլիտա եւ Իտալիտա անուններով ալ կ՚երեւայ: Ինչպէս Խրիմի միւս տեղերն՝ Եալթա ալ անցած է Ջենովացիներուն, որոնք այստեղ իրենց կողմէն վարչութիւն ու հիւպատոս էին հաստատած, սակայն Տաճիկներն երբ քաղաքը գրաւեցին, բերդին մէջ զօրք սկսան պահել միշտ:

Այս հին Եալթան՝ երբեք առանձին ուշադրաւ դիրք չէ ունեցած պատմութեան մէջ: ԺԹ. դարուն երկրաշարժէ բաւական վնասուելէ ետքը՝ չկրցաւ կանգնիլ, եւ ներկայ դարուս երեսնական թուականին՝ քանի մի հին բերդերու եւ եկեղեցիներու աւերակներով միայն կը պահուէր իր յիշատակը. մի եկեղեցի յանուն Ս. Յովհաննու՝ առանձնապէս կը յիշուի 1774ի ռուս-տաճկական պատե-

բազմի ժամանակ խաղացած դերին շնորհիւ, երբ եկեղեցւոյս պարիսպներուն մէջ ապաւինած Ռուսք՝ ջարդուեցան թշնամիէ, անդին թշնամւոյն բանակն ալ դուրսը քաղաքին մէջ՝ աւելի մեծ հարուած կը կրէր Ռուսացմէ:.

Այն հրուանդանն որի վրայ կանգնուած էր Ս. Յովհաննու եկեղեցին, մինչեւ հիմայ կը կոչուի Քիլիսէպուրնու "եկեղեցւոյ հրուանդան":

Ռուսերը Խալթան վերջնականապէս իրենց տիրապետութեան անցնելէն ետքը՝ 1835ին նոր եկեղեցւոյ հիմ դրին, որ կայ եւ այժմ: Վորոնցով իշխանն՝ երկրին կառավարիչը՝ յարմար տեղ կը փնտռէր ծովափանց վրայ քաղաք կառուցանելու, եւ իր որոշումը տուաւ Խալթայի վրայ: Սակայն այս նոր քաղաքը շատ դանդաղ կը յառաջանար, մինչեւ որ 1861ին Ռուսաց կայսերական տունը գնեց մերձակայ Լիվադիան, այնտեղ բնակարան հաստատեց, եւ ամէն տարի ամառն սկսաւ հոն յաճախել: Այս թուականէն կը սկսի իրօք Խալթայի կենդանութիւնը, երբ ամէն կողմէն Ռուս հարուստներ եւ ազնուականներ թափուեցան քաղաք. տեղեր գնեցին, ամարանոցներ կանգնեցին կամ իրենց բնակութեան, եւ կամ ուրիշներուն վարձու տալու՝ մեծ գներով: Այժմ արդէն 10 հազար հոգւոյ չափ մշտական բնակիչ ունի քաղաքն. իսկ իւրաքանչիւր տարւոյ այցելուներու թիւը՝ 25 հազարէն պակաս չէ:

Առաջին անգամ երբ Խալթա քաղաք հրատարակուեցաւ, ընդ ամէնը 5 դեսեատին հող ունէր, բայց երբ 1874ին ինքնավարութիւն (autonomie) տրուեցաւ քաղաքին, այն տարածութիւնը հարիւրապատիկ աւելցուցին, եւ այնպէս 500 դեսեատին հողի տիրանալով՝ Խալթան սկսաւ ընդարձակիլ աջ ու ձախ. հիմնուեցան նորանոր տներ եւ պանդոկներ, կազմուեցան նոր փողոցներ, ամարանոցները բազմացան, հաստատուեցաւ քաղաքային այգի եւ զբօսարան, ելեկտրական լուսաւորութիւնը պայծա-

ռացուց զքաղաքն եւ բազմաթիւ հաստատուն ջրմուղներ մաքրեցին ներքին ապականութիւնը:

Բաթումէն մինչեւ այս տեղ 35.) աշխարհագրական մղոն է. եւ ամէն շաբաթ մի արագընթաց շոգենաւ ուղղակի կու գայ հոս Բաթումէն եւ ապա կը յառաջանայ դէպ ի Սեւաստոպոլ եւ Օդեսա:

Իսկ սովորական ուղեւորի շոգենաւներ՝ ամէն օր կան:

Ամէն այցելու պարտականութիւն կը համարի քանի մի գոնէ թեթեւ յիշատակներ իւր այցելութեան՝ հեռու առնուլ, ինչպէս խողունջէ զանազան մանր ու խոշոր գործուածներ, որոնց վրայ գծուած է Եալթան կամ պարզապէս անունը գրուած, տեղական փայտէ շինուած զանազան ձեւով գաւազաններ, եւ՝ որ ամէնէն աւելի դրաւիչն է ռուսական մայրաքաղաքներէն եկողներուն՝ **Մօ-լբօ-նքյէ** extra կոչուած ճերմակ ֆէսերը, մետաքսէ կախուած ճերմակ ծոպով (**ֆէ-օկէ-րով**) որոնցմէ առատութեամբ կ՚առնեն հետ կը տանին:

Այստեղ եւս Հայերը նշանաւոր թիւ չեն կազմեր, կարծեմ մօտ 200 հոգի, որոնք մեծ մասով խանութպան են. չունին ոչ դպրոց եւ ոչ եկեղեցի: Սակայն քանի մի տարիէ ի վեր հանգանակութիւն են բացած թէ իրենց եւ թէ մանաւանդ օտարերկրեայ այցելու Հայոց մէջ, գոնէ հայ մատրան մը հիմնարկութեան նպատակաւ: Առ այժմ իրենց հոգեւոր պիտոյքը կը հոգան՝ Թէոդոսիայէն երբեմն երբեմն եկող քահանաները:

Եալթայի բուն բնակիչները Թաթարներն են, որոնք ամէն քայլափոխին զանազան ձեւի տակ՝ բայց միշտ իբրեւ ծառայող կամ առ առաւելն խանութպան՝ դիմացդ կ՚ելլեն: Կ՚արժէ անոնց առանձին Գլուխ նուիրել:

Այստեղ մայրաքաղաքացիք իրենց հետ բերած են մայրաքաղաքի կեանքն ու սովորութիւնները: Ծանրապէս հիւանդները չէ անշուշտ, բայց

թեթեւ տկարութիւն ունեցողները, կամ պարզապէս զբօսաշրջիկները կը շարունակեն հոս ալ այն գիշերային կեանքն որ յատուկ է մեծ քաղաքներու։[1] Արեգակն իր մարը մտաւ թէ չէ՝ Եալթայի բովանդակ հասարակութիւնը՝ նաեւ մարմնով տկարները՝ խումբ խումբ կը հաւաքուին եւ կը զբօսնուն քաղաքային այգին երկար ժամանակ։ Այս այգւոյ մէջ ամառնային թատերասրահ կայ կառուցուած, որ զանազան շրջող դերասանական խմբեր երբեմն տխուր դրամայով հիւանդ հանդիսատեսներու տկար ջղերն եւս աւելի կը թուլցնեն, իսկ երբեմն ծիծաղաշարժ եւ թեթեւ օպերէտ (operette) ներկայացնելով զբօսաշրջիկներու զուարթ տրամադրութիւնը մինչեւ ծայրայեղութեան կը հասցնեն։ Եւ թատերասրահը երբեք գրեթէ անզբաղ չէ, քանի որ այստեղ ժողովուած հասարակութիւնը մեծ պահանջում ունի թատերական տեսարաններու։ Այսպէս՝ դերասանական թափառիկ խմբերն իրար կը յաջորդեն՝ բոլորն ալ գոհ իրենց այս տեղ անցուցած ժամանակէն թէ զբօսանքի եւ թէ նիւթական շահու տեսակէտով։

Երեկոյեան ժամանակ շատ գեղեցիկ տեսարան կ՚ընծայէ քաղաքային պարտէզը՝ նաեւ եթէ ներկայացում չկայ։ Զինուորական անվրէպ երաժշտութիւնը՝ սրտալի կը զուարճացնէ զբօսնողաց խմբերը, որոնք ոլորուն եւ մթին ծառուղիներու մէջ հանդարտ քալելով ազատ թռիչ կու տան իրենց սրտին ու մտքին, կամ հսկայ եւ խիտ առ խիտ կանգնած նոճիներու (cyprès) եւ հացիներու (érable) տակ մաքուր կլորակ սեղանին շուրջը բոլորած՝ զովացուցիչներով կ՚ամոքեն իրենց կոկորդը։ Ամէն կողմ ծիծաղ, խնդում եւ բարձրաձայն խօսա-

1 Բաց ի գուցէ մի միայն Վիեննայէն, ուր անձնական փորձով գիտեմ թէ մինչեւ երեկոյեան ժամը 10 գրեթէ ամէն մարդ արդէն իր տունը կը քաշուի, եւ ով որ ուշանայ՝ պարտաւորեալ է վճարել 10 քրայցեր դռնապանին։

կցութիւն։ Այս մի եւ նոյն տեսարանը կը կրկնուի՝ բաց ի քաղաքային այգիէն՝ նաեւ քաղաքին ծայրը գտնուող ուրիշ պարտէզի մը մէջ, որ առանձնական մարդու սեպհականութիւն է եւ տիրոջն անունով "Մորդվինովեան" կը կոչուի։ Եւ երբ վերջապէս ուշ ժամանակ այս երկու ծովեզերեայ պարտէզներէն դուրս կ'ելլէ զբօսող հասարակութիւնն, իւրաքանչիւր իր ամարանոցը, պանդոկը կամ տունը դառնալու համար, կ'անցնի ծովեզերեայ սալայատակին վրայէն, որու քովէն՝ խաւարով պատած ծովը՝ նոյն իսկ իր ամենախաղաղ ժամանակն ալ դարձեալ չի դադրիր անընդհատ բաղխել զինքը կապող քարափը. Եւ ծովուն այս շարունակեալ բախման ձայնը շատ ալ մխիթարական չէ այնպիսի հիւանդներու համար, որոնք արդէն ջղերու տկարութեամբ կամ այլ նոյնպիսի հիւանդութեամբ կը տառապին եւ դժուարութիւն կը զգան ննջելու, մանաւանդ եթէ կառքերու ձայնն ալ ասոր ընկերանայ։ Շատերու համար՝ գիշերային կեանքն այստեղ չի վերջանար դեռ։ Պարտէզներէն քաշուելէն վերջը կը սկսին թղթախաղերն եւ խմբովին ընթրիքներն, որոնց համար ոչ տեղ եւ ոչ որոշ ժամ կայ սահմանուած։

Եալթա՝ առեւտրական եւ ոչ մի նշանակութիւն ունի. զինքն ապրեցընողը միայն եւ միայն ամառնային այցելուներն են, որոնց մեծ մասը լի գրպաններով կու գան եւ քսակներն զգալապէս թեթեւցած կը հեռանան. եւ ասոր մեծապէս կ'օգնեն տեղացիք, Թաթարները։

Հիւանդներն այստեղ՝ իրենց բժիշկներուն խորհրդով՝ շատ անգամ ամառն ամբողջ բնակելէն վերջը նաեւ ձմեռը կ'անցընեն։ Հարաւային ջերմ օդը նոյն իսկ ձմեռ ժամանակ ալ երբեմն այցելուներ կը բերէ Եալթա՝ Ռուսաստանի հիւսիսէն։

Եալթա կապուած չէ երկաթուղիով, եւ իսկապէս կարեւորութիւն ալ չկայ, որովհետեւ ինչ-

պէս յիշեցի, ոչ մի առեւտրական վաճառականութիւն ունի. եւ երկաթուղւոյն դիմելու համար բաւական է քանի մի ժամ դէպ ի աջ կամ դէպ ի ձախ նաւել, որով Թէոդոսիա ու Սեւաստոպոլ՝ իր այս պակասը կը լնուն կատարելապէս։

---

ԺԴ.

## ԽՐԻՄԻ ԹԱԹԱՐՆԵՐԸ

Խրիմի՝ ամբողջ ծովեզերքին վրայ, բայց մանաւանդ Եալթայի մէջ եւ շրջակայքը՝ Թաթարները բնակիչներու մեծամասնութիւնը կը կազմեն։ Անոնք ալ իրենց անընդհատ ծառայութիւններովը տեսակ մը անհրաժեշտութիւն են դարձած ամառնային այցելուներու համար, իբրեւ Եալթայի կամ այլ ամարանոցներու բնութեան զաւակները՝ անբաժան կլիմայէն, խաղողէն եւ ծովէն, որոնց համար կը վազեն կու գան հիւանդներն եւ զբօսաշրջիկները։

Խրիմի Թաթարները պէտք է երկու կարգ բաժնել. ծովեզերեայ կամ լեռնային Թաթարներ, եւ ներքին՝ դաշտային Թաթարներ։ Այս բաժանումն այնու մանաւանդ հարկաւոր է, որ թէպէտեւ անոնք՝ թէեւ միեւնոյն՝ Թաթար անուամբ կը յիշուին, բայց ցեղական ծագմամբ մեծապէս կը տարբերին իրարմէ։ Լեռնային կամ ծովեզերեայ Թաթարները՝ Մոնղոլական (Մղուլեան) ցեղէն չեն սեռիր, այլ Յունականէն, որուն յայտնի ապացոյց է իրենց դէմքը (type)։ Եալթայի եւ շրջակայից Թաթարները հին յոյն գաղթականութեան մնացորդներն են՝ կրօնափոխ եղած։ Առողջակազմ են եւ թեթեւաշարժ. երկայնաձեւ ու բաւական կանոնաւոր գծերով դէմք ունին. իսկ բնաւորութեամբ յաջողակ են եւ նենգաւոր։

Այս Թաթարներուն լեզուն ալ մեծապէս կը տարբերի դաշտայիններէն, մինչեւ երբեմն զիրար

չեն հասկնար: Յունացեղ Թաթարներու բարբառին մէջ՝ թէեւ չափազանց աղաւաղած դիրքով՝ գործածութեան մէջ են բառեր եւ բացատրութիւններ՝ հելլենական եւ այլ հին գաղթականութեան, ինչպէս Ճենովացւոց լեզուէն առնուած: Նոյն իսկ բուն մոնղոլական բառերը Խրիմի Թաթարաց մէջ՝ այս տեղ մի նշանակութիւն ունին, եւ այլ տեղ բոլորովին տարբեր միտք կը յայտնեն: Մինչեւ անգամ այս ծովեզերքի վրայ կան գիւղեր, որոնց բնակիչները մեծաւ մասամբ պահած կ'երեւան այն բարքն ու սովորութիւնները, որ Հոմերոսի ժամանակուան Հելլէններն ունէին: Այժմեան այս տեղի Թաթար կանայք յար եւ նման են Ոդիսականի Նաւսիկէային, որ իւր բարեկամուհիներէն ընկերացած, ճերմակեղէն կը լուար գետի մէջ: Ի բաց առեալ ի հարկէ այն չափազանց բանաստեղծական երեւոյթն՝ որով կը ներկայացընէ Յունական մեծ երգիչն իւր Նաւսիկայիան եւ անոր շուրջը: Ես տեսայ Եալթայի մէջ Թաթար կանայք, որ իրենց երեսը չէին ծածկեր, հակառակ իսլամական նամեհրամին. իրենց վերնազգեստին վերին մասը յառաջ բերած, ծածկած էին իրենց գլուխը. ճակատէն փոքր ինչ դէպ ի վար իջեցուցած, եւ այսկերպով առանձին գլխոյ ծածկոց ալ չունէին:

Թաթարները թէպէտ բազմաթիւ՝ Եալթայի մէջ մզկիթ չունին, եւ իրենց բնակութիւնը հաստատած են քաղաքէն դուրս շրջակայ գիւղերը:

Թաթարներու սովորական պարապմունքը պարտիզպանութիւնն ու ծխախոտի մշակութիւնն է. բայց այս գործն իրենց այնքան եկամուտ չի բերեր, որքան այն ծառայութիւններն զոր կը մատուցանեն ամարանոցներու օտարերկրեայ հիւրերու: — Իրենց նախնական ցեղին յատուկ խորամանկութեամբն այնպէս վարպետօրէն կը վարուին ամառնային այցելուներու հետ, որ անզգալի կերպով զիրենք կը քամեն ինչպէս որ պէտք է: Շա-

տերն յատուկ այցետոմսեր ունին, որոնց վրայ գրուած է. "Ահմէդ Մեհմէդ օղլու, յանձնակատար (commissionnaire) Եալթայի մէջ. բնակարան եւ ամարանոց վարձելու կամ գնելու, Սիմֆերոպոլ եւ Սեւաստոպոլի համար կառքեր բռնելու, իրեղէններ, մրգեր ուղարկելու եւ այցելուներու ամէն յանձնարարութիւնները կատարելու. իւր ճշդապահութեանն եւ բարեխղճութեանը նկատմամբ՝ յարգելի հասարակութիւնն անձամբ փորձով կրնայ համոզուիլ:" Այսպիսի այցետոմսով կը ներկայանան այցելուներուն եւ ալ այնուհետեւ իրենք գիտեն թէ մինչեւ որ աստիճան են քարբխիզ:

Ոչ մի տեղ դուցէ այնչափ զարգացած է ամառնային հոծ կեանքի զեղծումն որքան Եալթայի մէջ, ուր անգործութեան յառաջ բերած անբարոյական հակումներն ընդարձակ ծաւալ գտած են: Այս հանգամանքէն մեծապէս կ'օգտուին Թաթար "առաջնորդներն" որոնք Բայրընի Դոն Ժուանին դերը կատարելու գործ կ'ածեն իրենց մէջ, խորամանկ եւ կեղծ ծառայական վարմունքով պճնելով իրենց գաղտնի նպատակները: Այստեղ երկար շարք մը կը կազմէ այն թեթեւօլիկ կանանց թիւն՝ որոնք զանազան գեղեցկադէմ "Ահմէդներու" կամ "Մուսթաֆաներու" գոճաղմի (turquoise, ֆիրուզէ) կամ ծովակապոյտ աչքերուն ազդեցութեան տակ չեն կրցած փորձութիւններու դիմադրել. եւ շատ անգամ այնպիսի տիկնանց անունները կը յիշուին այս շարքին մէջ, եւ այն ալ en toutes lettres, որ մարդ ակամայ զարմացած կը մնայ: — Թաթար յանձնակատարն՝ իբրեւ յանձնակատար ներկայանալէն վերջը՝ ալ անբաժան առաջնորդն է զբօսաշրջիկ ձիավարող տիկիններուն. կը պատմեն նաեւ որ այս Դոն Ժուանները սաստիկ նախանձոտ ալ են իրենց մայրաքաղաքացի մրցակիցներուն դէմ, որոնք նոյնպէս պակաս չեն այստեղ եւ շատ անգամ չեն դանդաղիր թփի կամ մացառի ետեւ պա-

հուած՝ քարի կտորներ արձակել այս վերջիններու գլխուն։

Չնայելով որ մեկ դարէն աւելի է Ռուսաց տիրապետութիւնը կը կրեն, Թաթարները չեն կրցած դեռ ռուսերէնը փոքր ի շատէ իւրացընել։

Խրիմի Թաթարներու բնակութեան կեդրոնն է Բաղչէ-սարայ քաղաքն (12.000 բնակ.), ուր 35 մզկիթ ունին եւ միակ հասարակութիւնը կը կազմեն։ Այստեղ են հաւաքուած նաեւ այն քանի մի Թաթարներն, որոնք քիչ շատ կրթութիւն են առած ռուսական վարժարաններու մէջ։ Բաղչէ-սարայի մէջ այսպիսի կրթեալ Թաթար մը, որու անունը օֆէ կը վերջաւորի[1] (լեհականի նման), յատուկ լրագիր կը հրատարակէ Պերեվօդ-չիկ Թերճիման անունով, կէսը ռուսերէն եւ կէսը թաթարերէն, ինչպէս յիշեցի արդէն. եւ այս միջոցով ռուսերէնի ընթերցանութիւնը կամաց կամաց կը տարածուի ամբոխին մէջ ալ։

Այսու ամենայնիւ եթէ այս Թաթարները համեմատենք մտաւոր զարգացման աստիճանի մասին Կովկասիոյ Թուրքերու եւ Պարսիկներու հետ, առաւելութիւնը պիտի գտնենք Թաթարներու կողմը։ Խրիմիններուն խորամանկութեան եւ անբարոյական հակումներէ յառաջ եկած կեղծ վարմունքին եւ շողոքորթութիւններուն դիմաց՝ Կովկասիոյ մահմետականները զուրկ են այն կեղծիքներէն եւ պակասութիւններէն, բայց տաոնց մէջ ալ կոպիտ ոյժն եւ աւազակաբարոյ վարքը կը տիրեն, եւ ուսումն ու կրթութիւնը չափազանց հեռու են դեռ իրենցմէ։

Թաթարները շատ չեն տարբերիր Խրիմ-Քարաիմ կոչուած հրեաներէն, որոնք երկայն ժամանակ ապրելով Թաթարներու մէջ, իւրացուցած են թաթարական լեզուն, բարքն, զգեստն եւ այլն։

---

1 Իմանալ Գասպրինսքի։

Քարաիմներն միւս հասարակ Հրեաներէն անով կը զանազանին, որ միայն հին կտակարանը կ՚ընդունին եւ հաստատ կը պահեն, իսկ Թալմուդին եւ այլ գրքերուն բնաւ հաւատ չեն ընծայեր։ Քարաիմ կամ Քարայիմ անունն անգղիական միսիոնէր Հէնդէրսոնի բացատրութեան համեմատ՝ եբրայական Քարա բառէն կը ծագի, որ կը նշանակէ ընթերցում՝ այսինքն սուրբ Գրոց։

Քարաիմները պահած են եբրայական գրերն բայց եբրայեցերէն ոչ կը խօսին եւ ոչ կը գրեն, այլ կը գործածեն եբրայական տառերով Թաթարերէն։ Իրենց գլխաւոր բնակատեղին էր Չուֆութ-կալէ գիւղաքաղաքը՝ Բաղչէ-սարայի քով, որ կը նշանակէ Հրէական բերդ. եւ իրօք դեռ մինչեւ հիմայ կը պահէ իր ամրութիւններն եւ անառիկ բերդ կը համարուի շնորհիւ իր բնական ժայռոտ անմատոյց դիրից եւ երկաթէ դռներուն։ Մի միայն հաղորդակցութեան ճանապարհ ունի արտաքին աշխարհի հետ. եւ այն ալ թեթեւակի կերպով հարթուած է ապառաժի վրայ եւ երկաթէ դռնէն կը մտցնէ ներս գիւղաքաղաքը։ — Բայց Քարաիմներն այժմ մեծ մասով հեռացած են Չուֆութ-կալէէն եւ տեղափոխուած մերձակայ Բաղչէ-սարայն եւ ուրիշ քաղաքները։ Չուֆութ-կալէի մէջ հիմայ մէկ քարաիմ ընտանիք կայ միայն, որուն հայրը կամ գլխաւորն Աբրահամ Ֆիրքովիչ՝ կը զբաղէր հին եբրայական ձեռագիրներ հաւաքելով, որոնցմէ իրօք ահագին բազմութիւն էր ձեռք բերեր. ասոնց մէկ մասը Պետերբուրգի հասարակական գրատունը գնեց իրմէ։ Ֆիրքովիչ ընդօրինակած ու հրատարակած է Չուֆութ-կալէի պարիսպներուն արձանագրութիւններն, որոնք իրեն լաւ հասոյթ բերին, բայց եբրայագէտներու քննութեամբ իմացուեցաւ վերջապէս՝ որ Թաթար-հրեայ ուսումնական արձանագրութիւններու մէջ կեղծերը պակաս չէին։ Չուֆութ-կալէն կը կոչուէր նաեւ Քըրքէրա, ուր

կ՚ապաստանէին Թաթարաց խաները՝ պատերազմի ժամանակ, բայց թէ երբ է կառուցուած եւ այս քարաիմներն ինչպէս եւ երբ են այսպէս առանձին աղանդ ձեւացուցած, հաստատուն վկայութիւն չկայ։

Քարաիմները գլխաւորաբար առեւտրի եւ մանրավաճառութեան կը զբաղին։ Իրենց բարոյականութիւնը բուն Թաթարներու վարքին տեղի չի տար։

Թաթարներու հոգեւոր վարչութեան կեդրոնը Սիմֆերոպոլն է, կամ ինչպէս իրենք մինչեւ ցայժմ կը կոչեն՝ Աք-Մէչիտը, ուր կը նստի Մուֆթին, վարչութեան նախագահը։ Այստեղ ունին ինն մզկիթ եւ իրենց լաւագոյն վարժարանը։ Թաթարաց իշխանութեան ժամանակ Բաղչէ-սարայը՝ Խանի, իսկ Աք-Մէչիտը Քալկա-սուլթանի բնակատեղի էր, որ Խանէն վերջը մեծագոյն հրամանատարն էր իրենց։ — Թաթարներու թիւը Խրիմի մէջ 1854ի պատերազմէն վերջը պակսեցաւ. որովհետեւ շատերն այն ժամանակ գաղթեցին Տաճկաստան, եւ դեռ մինչեւ ցայսօր պակաս չեն գաղթողները, բայց շատ փոքր թուով, եւ ծածուկ։

---

## ԺԵ.

## ԼԻՎԱԴԻԱ

Շատ ճշմարիտ է որ Եալթայի ամենէն հրապուրիչ կողմն իր շրջակայքն է՝, որ ամառնային եւ նոյն իսկ աշնանային կենաց վերին աստիճանի օգտակար, հաճելի եւ հանգստաւէտ վայրերու խումբ մը կը ներկայացընէ։ Այս խումբին պարագլուխն է Լիվադիա, որ Ռուսիոյ կայսերական գերդաստանին կը վերաբերի ամբողջապէս, եւ Եալթայէն 4 քիլոմեդրի չափ հեռու, ծովափնեայ բլրոյ վրայ կանգնած, սքանչելի գեղազուարճ դիրք ունի։ Այս տեղն, ինչպէս վերը յիշեցինք, 1861ին

միայն անցած է Ռուսաց կայսրուհւոյն, որ նոյնը գնած է կոմս Լ. Պոտեցկիէն։ Իսկ նախնապէս Եալթայի ամբողջ շրջակայքը՝ մինչեւ Բալաքլաւա Կատարինէ Բ. կայսրուհին յատկացուցած էր մասնաւորապէս Արքիպեղագոսի կղզիներէն բերել տուած յոյն գաղթականութեան։

Երկու պալատ կայ կառուցուած այստեղ, որոնց մէկը շինել տուած է Աղեքսանդր Գ. կայսրն եւ միւսն իւր մայրը. կայ եւ 2 եկեղեցի։ Այս շէնքերու ճարտարապետն է եղած իտալացին Մոնիգէտտի, որ բիւզանդական ոճի բոլոր շքեղութեամբ կարողացած է պայծառացընել։ Այս պալատները կանգնած են բարձրաւանդակի վրայ՝ շրջապատած խիտ անտառով, եւ մինչեւ ծովափն գետնափոր ուղի (tunnel) մի ունին, որու ծայրը ծովեզերքի վրայ արեւելեան ոճով գեղեցիկ սպիտակ քէօշք մի կայ կառուցուած։ Լիվադիայի շինութիւնները տեսնողն ինք զինքը Կ. Պոլսոյ ծովափանց վրայ կը կարծէ, այնքան նման են իրենց ճարտարապետութեամբը՝ Կ. Պոլսոյ պալատներուն եւ քէօշքերուն։ Պալատներուն կից հաստատուած են օդային առկախ ճեմելիք (gallerie), ճոխ վարդերով հիւսած, եւ ծաղիկներն ու գետնի կանաչն առոգանելու համար ալ շքեղ աւազաններ են շինուած։ Յատուկ ծաղկանոց (orangerie) մ'ալ կայ, ուր ամէնէն հազուագիւտ հարաւային բոյսերն հաւաքուած են։ Գեղեցիկ են նաեւ աղբիւրները, մանաւանդ մէկն որ նախնի վիմափոր դագաղ (sarcophage) մի է՝ վրան հիանալի կանացի դէմքով։ Այս հնութիւնը Լիվադիայի նախկին սեփականատէր Պոտեցկի կոմսն է բերած Իտալիայէն, ուր գտնուած էր Պոմպէի քաղաքին աւերակներուն մէջ։

Լիվադիան այժմ արդէն պատմական կարեւորութիւն ստացած է շնորհիւ վերջին աղէտալի անցքին։ Յիշատակը դեռ ջերմ է ամէնուն մտքին մէջ։ Այստեղ Հոկտեմբերի 20ին (Հ. Տ.) վախճա-

նեցաւ Ռուսաց կայսրն Աղեքսանդր Գ. որ իրաւամբ ժառանգած է խաղաղարար տիտղոսը: Հանգուցեալ կայսրն անձամբ չէր սիրեր Լիվադիան, ուր արդէն իրեններէն երկուքը զոհ էր տուած մահուան, բայց իր հիւանդութիւնը սաստկանալով ի Սպալա, բժիշկներու առխպմամբ հարկադրեցաւ դիմել Խրիմ եւ բնակիլ Լիվադիայի ամարանոցը: Այս միջոցին Լիվադիան եւ առ հասարակ Եալթայի ամբողջ շրջակայքը կայսերազուն իշխաններու եւ օտար բարձրաստիճան հիւրերու կայարան էր եղած: Արդէն մինչեւ հանգուցեալ կայսեր գալը՝ իր նորապսակ դուստրը Քսենիա եւ ամուսինը Աղեքսանդր Միխայիլովիչ՝ (Կովկասիոյ նախկին փոխարքայ մեծ իշխ. Միքայէլի որդին) եկած էին Այ-Թոդոր՝ Եալթայի մօտ, իրենց մեղրալուսինն անցընելու: Իսկ կայսեր հիւանդութիւնը հետզհետէ հաւաքած բերած էր իր բոլոր ներքին ու արտաքին ազգականներն, որոնցմէ Անգղիոյ Թագաժառանգն եւ իր կինը, Ուէլսի իշխանն եւ իշխանուհին մահուանէ վերջը միայն կրցան հասնիլ: Այս այցելութիւններու մէջ ամենէն սրտառուչ հանդիպումն էր անշուշտ այն, երբ ծանրապէս հիւանդ Միապետն՝ առաջին անգամ կը տեսնէր եւ կ'ընդունէր իր հարսը, անդրանիկ գահաժառանգ որդւոյն նշանածը, Հեսսէն-Դարմշտադի իշխանուհին: Այս պարագայն, որ արդէն կանխապէս ծանր հոգ կը պատճառէր բժիշկներուն, մեծ յուզում պատճառած է հիւանդին:

Աղեքսանդր Գ. իր Լիվադիա գալուն հետեւեալ օրերն կառքով կը զբօսնուր Եալթայի շրջակայքը, լեռները, ծովափն եւ ջրվէժները:[1] Հան-

[1] Խրիմի այս ջրվէժներէն մէկը հայ անունը կը կրէր Ջուր-Ջուր, որու կոչումը շատ բնական է. բայց թէ ինչ առթիւ է տրուած՝ անծանօթ է ինձ: Ջուր-Ջուրի ջրվէժին բարձրութիւնը 50 ոտք է. իր աւազանը նշանաւոր է կարմրախայտի առատութեամբը, զոր Թաթարներն ուղղակի ձեռքով կ'որսան այստեղ:

դուցեալ կայսեր կենաց համար աղօթելու եկած էր Կրոնշտադի Հ. Եօան Սերգիեվ քահանան, որ ամբողջ Ռուսիոյ մէջ սուրբի համբաւ կը կրէ։ Աշխարհի ամէն կողմ, բոլոր եկեղեցիներու մէջ աղօթքներ կ՚ուղղուէին այս նպատակով։ Հայոց կաթողիկոսն՝ Խրիմեան Հայրիկ եւս հեռագրով ծանոյց կայսրուհւոյն Մարին Ֆէոդորովնային՝ թէ ինքն եւս ջերմագին աղօթած է։ Ի սկզբան քանի մի օր լաւութեան նշաններ կ՚երեւային կայսեր վիճակին վրայ, բայց այս երեւոյթը խաբուսիկ էր եւ ժամանակաւոր. շատ չանցաւ՝ հիւանդութիւնք (երիկամունքի բորբոքումն) ստացաւ իւր բովանդակ ոյժն եւ վերջապէս տարաւ անողոքելի յաղթանակը։

Եւ իբրեւ հետեւութիւն այս անցքիս՝ Խրիմի այս անկիւնը յիշատակելից օրեր տեսաւ իւր մէջ. նոր կայսեր բազմիլն եւ յուղարկաւորութեան հանդէսն այնքան տխուր՝ որքան փառայեղ։ Ռուսաց հիմնական օրինաց համեմատ՝ Աղեքսանդր Գ. կայսեր մահուանէն վերջը գահ պիտի բարձրանար իւր անդրանիկ որդին թագաժառանգ Նիկոլա Ալեքսանդրովիչ. եւ նոյն օրն՝ մահուանէ 3 ժամ վերջը՝ նոր կայսրն Նիկոլա Բ. իւր գահակալութիւնը ծանուցանող հրովարտակը կ՚արձակէր եւ Լիվադիայի պալատական եկեղեցւոյ դիմացի հրապարակին վրայ հաւատարիմ հպատակութեան երդում կ՚ընդունէր կայսերական տան իշխաններէն, աստիճանաւորներէն եւ ներկայ գտնուող զօրքէն։ Ամբողջ 3 շաբաթ բովանդակ քաղաքակիրթ աշխարհի ուշադրութիւնն ուղղուած էր դէպ ի Լիվադիա, նախ Աղեքսանդր Գ.ի վրայ՝ անոր հիւանդութեան ժամանակ, եւ ապա Նիկոլա Բ.ի՝ իւր գահակալութեան առաջին օրերը։ Նիկոլա Բ.ի գահ բարձրանալովն իրեն գահաժառանգն եղաւ իւր եղբայրն Գէորգի Ալեքսանդրովիչ, "մինչեւ առա-

կցութիւն։ Այս մի եւ նոյն տեսարանը կը կրկնուի՝ բաց ի քաղաքային այգիէն՝ նաեւ քաղաքին ծայրը գտնուող ուրիշ պարտէզի մը մէջ, որ առանձնական մարդու սեպհականութիւն է եւ տիրոջն անունով "Մորդվինովեան" կը կոչուի։ Եւ երբ վերջապէս ուշ ժամանակ այս երկու ծովեզերեայ պարտէզներէն դուրս կ՚ելլէ զբօսող հասարակութիւնն, իւրաքանչիւր իր ամարանոցը, պանդոկը կամ տունը դառնալու համար, կ՚անցնի ծովեզերեայ սալայատակին վրայէն, որու քովէն խաւարով պատած ծովը՝ նոյն իսկ իր ամենախաղաղ ժամանակն ալ դարձեալ չի դադրիր անընդհատ բաղխել զինքը կապող քարափը. Եւ ծովուն այս շարունակեալ բախման ձայնը շատ ալ մխիթարական չէ այնպիսի հիւանդներու համար, որոնք արդէն ջղերու տկարութեամբ կամ այլ նոյնպիսի հիւանդութեամբ կը տառապին եւ դժուարութիւն կը զգան ննջելու, մանաւանդ եթէ կառքերու ձայնն ալ ասոր ընկերանայ։ Շատերու համար՝ գիշերային կեանքն այստեղ չի վերջանար դեռ։ Պարտէզներէն քաշուելէն վերջը կը սկսին թղթախաղերն եւ խմբովին ընթրիքներն, որոնց համար ոչ տեղ եւ ոչ որոշ ժամ կայ սահմանուած։

Եալթա՝ առեւտրական եւ ոչ մի նշանակութիւն ունի. զինքն ապրեցընողը միայն եւ միայն ամառնային այցելուներն են, որոնց մեծ մասը լի գրպաններով կու գան եւ քսակներն զգալապէս թեթեւցած կը հեռանան. եւ ասոր մեծապէս կ՚օգուեն տեղացիք, Թաթարները։

Հիւանդներն այստեղ՝ իրենց բժիշկներուն խորհրդով՝ շատ անգամ ամառն ամբողջ բնակելէն վերջը նաեւ ձմեռը կ՚անցընեն։ Հարաւային ջերմ օդը նոյն իսկ ձմեռ ժամանակ ալ երբեմն այցելուներ կը բերէ Եալթա՝ Ռուսաստանի հիւսիսէն։

Եալթա կապուած չէ երկաթուղւով, եւ իսկապէս կարեւորութիւն ալ չկայ, որովհետեւ ինչ-

պէս յիշեցի, ոչ մի առեւտրական վաճառականութիւն ունի. եւ երկաթուղւոյն դիմելու համար բաւական է քանի մի ժամ դէպ ի աջ կամ դէպ ի ձախ նաւել, որով Թէոդոսիա ու Սեւաստոպոլ՝ իր այս պակասը կը լնուն կատարելապէս։

---

## ԺԴ.

## ԽՐԻՄԻ ԹԱԹԱՐՆԵՐԸ

Խրիմ՝ ամբողջ ծովեզերքին վրայ, բայց մանաւանդ Եայլթայի մէջ եւ շրջակայքը՝ Թաթարները բնակիչներու մեծամասնութիւնը կը կազմեն։ Ասոնք ալ իրենց անընդհատ ծառայութիւններովը տեսակ մը անհրաժեշտութիւն են դարձած ամառնային այցելուներու համար, իբրեւ Եայլթայի կամ այլ ամարանոցներու բնութեան զաւակները՝ անբաժան կլիմայէն, խաղողէն եւ ծովէն, որոնց համար կը վազեն կու գան հիւանդներն եւ զբօսաշրջիկները։

Խրիմի Թաթարները պէտք է երկու կարգ բաժնել. ծովեզերեայ կամ լեռնային Թաթարներ, եւ ներքին՝ դաշտային Թաթարներ։ Այս բաժանումն այնու մանաւանդ հարկաւոր է, որ ինչպէս անոնք՝ թէեւ միեւնոյն՝ Թաթար անուամբ կը յիշուին, բայց ցեղական ծագմամբ մեծապէս կը տարբերին իրարմէ։ Լեռնային կամ ծովեզերեայ Թաթարները՝ Մոնղոլական (Մղուլեան) ցեղէն չեն սերիք, այլ Յոնականէն, որուն յայտնի ապացոյց է իրենց դէմքը (type)։ Եայլթայի եւ շրջակայից Թաթարները հին յոյն գաղթականութեան մնացորդներն են՝ կրօնափոխ եղած։ Առողջակազմ են եւ թեթեւաշարժ. երկայնաձեւ ու բաւական կանոնաւոր գծերով դէմք ունին. իսկ բնաւորութեամբ յաջողակ են եւ նենգաւոր։

Այս Թաթարներուն լեզուն ալ մեծապէս կը տարբերի դաշտայիններէն, մինչեւ երբեմն զիրար

չեն հասկնար։ Ցունացեղ Թաթարներու բարբառին մէջ՝ թէեւ չափազանց աղաւաղած դիրքով՝ գործածութեան մէջ են բառեր եւ բացատրութիւններ՝ հելլենական եւ այլ հին գաղթականութեան, ինչպէս Ճենովացւոց լեզուէն առնուած։ Նոյն իսկ բուն մոնղոլական բառերը Խրիմի Թաթարաց մէջ՝ այս տեղ մի նշանակութիւն ունին, եւ այլ տեղ բոլորովին տարբեր միտք կը յայտնեն։ Մինչեւ անգամ այս ծովեզերքի վրայ կան գիւղեր, որոնց բնակիչները մեծաւ մասամբ պահած կ'երեւան այն բարքն ու սովորութիւնները, որ Հոմերոսի ժամանակուան Հելլէններն ունէին։ Այժմեան այս տեղի Թաթար կանայք յար եւ նման են Ոդիսականի Նաւսիկէայէային, որ իւր բարեկամուհիներէն ընկերացած, ճերմակեղէն կը լուար գետի մէջ։ Ի բաց առեալ ի հարկէ այն չափազանց բանաստեղծական երեւոյթն՝ որով կը ներկայացընէ Յունական մեծ երգիչն իւր Նաւսիկայիան եւ անոր շուրջը։ Ես տեսայ Եալթայի մէջ Թաթար կանայք, որ իրենց երեսը չէին ծածկեր, հակառակ իսլամական նախնհրամին. իրենց վերնազգեստին վերին մասը յառաջ բերած, ծածկած էին իրենց գլուխը. ճակատէն փոքր ինչ դէպ ի վար իջեցուցած, եւ այսկերպով առանձին գլխոյ ծածկոց ալ չունէին։

Թաթարները թէպէտ բազմաթիւ՝ Եալթայի մէջ մզկիթ չունին, եւ իրենց բնակութիւնը հաստատած են քաղաքէն դուրս շրջակայ գիւղերը։

Թաթարներու սովորական պարապմունքը պարտիզպանութիւնն ու ծխախոտի մշակութիւնն է. բայց այս գործն իրենց այնքան եկամուտ չի բերեր, որքան այն ծառայութիւններն զոր կը մատուցանեն ամարանոցներու օտարերկրեայ հիւրերու։ — Իրենց նախնական ցեղին յատուկ խորամանկութեամբն այնպէս վարպետօրէն կը վարուին ամառնոյին այցելուներու հետ, որ անզգալի կերպով զիրենք կը քամեն ինչպէս որ պէտք է։ Ղա-

տերն յատուկ այցետոմսեր ունին, որոնց վրայ գրուած է. "Ահմէդ Մէհմէդ օղլու, յանձնակատար (commissionnaire) Եալթայի մէջ. բնակարան եւ ամարանոց վարձելու կամ գնելու, Սիմֆէրոպոլ եւ Սեւաստոպոլի համար կառքեր բռնելու, իրեղէններ, մրգեր ուղարկելու եւ այցելուներու ամէն յանձնարարութիւնները կատարելու. իւր ճշդապահութեանն եւ բարեխղճութեանը նկատմամբ՝ յարգելի հասարակութիւնն անձամբ փորձով կրնայ համոզուիլ:„ Այսպիսի այցետոմսով կը ներկայանան այցելուներուն եւ ա՛լ այնուհետեւ իրենք գիտեն թէ մինչեւ ո՛ր աստիճան են քօրէխիլճ:

Ոչ մի տեղ գուցէ այնչափ զարգացած է ամառնային հոծ կեանքի զեղծումն որքան Եալթայի մէջ, ուր անգործութեան յառաջ բերած անբարոյական հակումներն ընդարձակ ծաւալ գտած են: Այս հանգամանքէն մեծապէս կ'օգտուին Թաթար "առաջնորդներն„ որոնք Բայրընի Դոն Ժուանին դերը կատարելու գործ կ'ածեն իրենց մէջ, խորամանկ եւ կեղծ ծառայական վարմունքով պճնելով իրենց գաղտնի նպատակները: Այստեղ երկար շարք մը կը կազմէ այն թեթեւօլիկ կանանց թիւն՝ որոնք զանազան գեղեցկադէմ "Ահմէդներու" կամ "Մուսթաֆաներու„ գոճազմի (turquoise, ֆիրուզէ) կամ ծովակապոյտ աչքերուն ազդեցութեան տակ չեն կրցած փորձութիւններու դիմադրել. եւ շատ անգամ այնպիսի տիկնանց անունները կը յիշուին այս շարքին մէջ, եւ այն ալ en toutes lettres, որ մարդ ակամայ զարմացած կը մնայ: — Թաթար յանձնակատարն՝ իբրեւ յանձնակատար ներկայանալէն վերջը՝ ա՛լ անբաժան առաջնորդն է զբօսաշրջիկ ձիավարող տիկիններուն. կը պատմեն նաեւ որ այս Դոն Ժուանները սաստիկ նախանձոտ ալ են իրենց մայրաքաղաքացի մրցակիցներուն դէմ, որոնք նոյնպէս պակաս չեն այստեղ եւ շատ անգամ չեն դանդաղիր թփի կամ մացառի ետեւ պա-

հուած՝ քարի կտորներ արձակել այս վերջիններու գլխուն։

Չնայելով որ մէկ դարէն աւելի է Ռուսաց տիրապետութիւնը կը կրեն, Թաթարները չեն կրցած դեռ ռուսերէնը փոքր ի շատէ իւրացընել։

Խրիմի Թաթարներու բնակութեան կեդրոնն է Բաղչէ-սարայ քաղաքն (12.000 բնակ.), ուր 35 մզկիթ ունին եւ միակ հասարակութիւնը կը կազմեն։ Այստեղ են հաւաքուած նաեւ այն քանի մի Թաթարներն, որոնք քիչ շատ կրթութիւն են առած ռուսական վարժարաններու մէջ։ Բաղչէ-սարայի մէջ այսպիսի կրթեալ Թաթար մը, որու անունը սքի կը վերջաւորի[1] (լեհական նման), յատուկ լրագիր կը հրատարակէ Պերեվօտչիկ Թերճէման անունով, կէսը ռուսերէն եւ կէսը թաթարերէն, ինչպէս յիշեցի արդէն. եւ այս միջոցով ռուսերէնի ընթերցանութիւնը կամաց կամաց կը տարածուի ամբոխին մէջ ալ։

Այսու ամենայնիւ եթէ այս Թաթարները համեմատենք մտաւոր զարգացման աստիճանի միասին Կովկասի Թուրքերու եւ Պարսիկներու հետ, առաւելութիւնը պիտի գտնենք Թաթարներու կողմը։ Խրիմեցիներուն խորամանկութեան եւ անբարոյական հակումներէ յառաջ եկած կեղծ վարմունքին եւ շողոքորթութիւններուն դիմաց՝ Կովկասի մահմետականները զուրկ են այն կեղծիքներէն եւ պակասութիւններէն, բայց անոնց մէջ ալ կոպիտ ոյժն եւ աւազակաբարոյ վարքը կը տիրեն, եւ ուսումն ու կրթութիւնը չափազանց հեռու են դեռ իրենցմէ։

Թաթարները շատ չեն տարբերիր Խրիմի Քարաիմ կոչուած Հրեաներէն, որոնք երկայն ժամանակ ապրելով Թաթարներու մէջ, իւրացուցած են թաթարական լեզուն, բարքն, զգեստն եւ այլն։

---

1 Իսմայիլ Գասպրինսքի։

Քարաիմներն միւս հասարակ Հրեաներէն անով կը զանազանին, որ միայն հին կտակարանը կ'ընդունին եւ հաստատ կը պահեն, իսկ Թալմուդին եւ այլ գրքերուն բնաւ հաւատ չեն ընծայեր: Քարաիմ կամ Քարաիմ անունն անգղիական միսիոներ Հէնդերսոնի բացատրութեան համեմատ՝ եբրայական քարա բառէն կը ծագի, որ կը նշանակէ ընթերցողք՝ այսինքն սուրբ Գրոց:

Քարաիմները պահած են եբրայական գրերն բայց եբրայեցերէն ոչ կը խօսին եւ ոչ կը գրեն, այլ կը գործածեն եբրայական տառերով Թաթարերէն: Իրենց գլխաւոր բնակատեղին էր Չուֆութ-կալէ գիւղաքաղաքը՝ Բաղչէ-սարայի քով, որ կը նշանակէ Հրէական բերդ. եւ իրօք դեռ մինչեւ հիմայ կը պահէ իր ամրութիւններն եւ անառիկ բերդ կը համարուի շնորհիւ իր բնական ժայռոտ անմատոյց դիրքին եւ երկաթէ դռներուն: Մի միայն հաղորդակցութեան ճանապարհ ունի արտաքին աշխարհի հետ. եւ այն ալ թեթեւակի կերպով հարթուած է ապառաժի վրայ եւ երկաթէ դռնէն կը մտցընէ ներս գիւղաքաղաքը: — Բայց Քարաիմներն այժմ մեծ մասով հեռացած են Չուֆութ-կալէէն եւ տեղափոխուած մերձակայ Բաղչէ-սարայն եւ ուրիշ քաղաքները: Չուֆութ-կալէի մէջ հիմայ մէկ քարաիմ ընտանիք կայ միայն, որու հայրը կամ գլխաւորն Աբրահամ Ֆիրքովիչ՝ կը զբաղէր հին եբրայական ձեռագիրներ հաւաքելով, որոնցմէ իրօք ահագին բազմութիւն էր ձեռք բերեր. ատոնց մէկ մասը Պետերբուրգի հասարակական գրատունը գնեց իրմէ: Ֆիրքովիչ ընդօրինակած ու հրատարակած է Չուֆութ-կալէի պարիսպներուն արձանագրութիւններն, որոնք իրեն լաւ հասոյթ բերին, բայց եբրայագէտներու քննութեամբ իմացուեցաւ վերջապէս՝ որ Թաթար-Հրեայ ուսումնական արձանագրութիւններու մէջ կեղծերը պակաս չէին: Չուֆութ-կալէն կը կոչուէր նաեւ Քըրքէէրա, ուր

կ'ապաստանէին Թաթարաց խաները՝ պատերազմի ժամանակ, բայց թէ երբ է կառուցուած եւ այս քարախիճներն ինչպէս եւ երբ են այսպէս առանձին աղանդ ձեւացուցած, հաստատուն վկայութիւն չկայ։

Քարախիճները գլխաւորաբար առեւտրի եւ մանրավաճառութեան կը զբաղին։ Իրենց բարոյականութիւնը բուն Թաթարներու վարքին տեղի չի տար։

Թաթարներու հոգեւոր վարչութեան կեդրոնը Սիմֆերոպոլն է, կամ ինչպէս իրենք մինչեւ ցայժմ կը կոչեն՝ Աք-Մէջիտը, ուր կը նստի Մուֆթին, վարչութեան նախագահը։ Այստեղ ունին իննմզկիթ եւ իրենց լաւագոյն վարժարանը։ Թաթարաց իշխանութեան ժամանակ Բաղչէ-սարայը՝ խանի, իսկ Աք-Մէջիտը Քալկա-սուլթանի բնակատեղի էր, որ խանէն վերջը մեծագոյն հրամանատարն էր իրենց։ — Թաթարներու թիւը Խրիմի մէջ 1854ի պատերազմէն վերջը պակսեցաւ. որովհետեւ շատերն այն ժամանակ գաղթեցին Տաճկաստան, եւ դեռ մինչեւ ցայսօր պակաս չեն գաղթողները, բայց շատ փոքր թուով, եւ ծածուկ։

---

## ԺԵ.

## ԼԻՎԱԴԻԱ

Շատ ճշմարիտ է որ Եալթայի ամենէն հրապուրիչ կողմն իւր շրջակայքն է, որ ամառնային եւ նոյն իսկ աշնանային կենաց վերին աստիճանի օգտակար, հաճելի եւ հանդստաւէտ վայրերու խումբ մը կը ներկայացընէ։ Այս խումբին պարագլուխն է Լիվադիա, որ Ռուսիոյ կայսերական գերդաստանին կը վերաբերի ամբողջապէս, եւ Եալթայէն 4 քիլոմեդրի չափ հեռու, ծովափնեայ բլրոյ վրայ կանգնած, սքանչելի գեղազուարճ դիրք ունի։ Այս տեղն, ինչպէս վերը յիշեցինք, 1861ին

միայն մնացած է Ռուսաց կայսրուհւոյն, որ նոյնը գնած է կոմս Լ. Պոտեցկիէն։ Իսկ նախնապէս Եալթայի ամբողջ շրջակայքը՝ մինչեւ Բալաքլաւա Կատարինէ Բ. կայսրուհին յատկացուցած էր մասնաւորապէս Արքեպեղագոսի կղզիներէն բերել տուած յոյն գաղթականութեան։

Երկու պալատ կայ կառուցուած այստեղ, որոնց մէկը շինել տուած է Աղեքսանդր Գ. կայսրն եւ միւսն իւր մայրը. կայ եւ 2 եկեղեցի։ Այս շէնքերու ճարտարապետն է եղած իտալացին Մոնիգէտտի, որ բիւզանդիական ոճի բոլոր շքեղութեամբ կարողացած է պայծառացընել։ Այս պալատները կանգնած են բարձրաւանդակի վրայ՝ շրջապատած խիտ անտառով, եւ մինչեւ ծովափն գետնափոր ուղի (tunnel) մի ունին, որու ծայրը ծովեզերքի վրայ արեւելեան ոճով գեղեցիկ սպիտակ քէօշք մի կայ կառուցուած։ Լիվադիայի շինութիւնները տեսնողն ինք զինքը Կ. Պոլսոյ ծովափանց վրայ կը կարծէ, այնքան նման են իրենց ճարտարապետութեամբը՝ Կ. Պոլսոյ պալատներուն եւ քէօշքերուն։ Պալատներուն կից հաստատուած են օդային առկախ ճեմելիք (gallerie), ճոխ վարդերով հիւսած, եւ ծաղիկներն ու գետնի կանաչն առոգանելու համար ալ շքեղ աւազաններ են շինուած։ Յատուկ ծաղկանոց (orangerie) մ'ալ կայ, ուր ամենէն հազուագիւտ հարաւային բոյսերն հաւաքուած են։ Գեղեցիկ են նաեւ աղբիւրները, մանաւանդ մէկն որ նախնի վիմափոր դագաղ (sarcophage) մի է՝ վրան հիանալի կանացի դէմքով։ Այս հնութիւնը Լիվադիայի նախկին սեփականատէր Պոտէցկի կոմսն է բերած Իտալիայէն, ուր գտնուած էր Պոմպէի քաղաքին աւերակներուն մէջ։

Լիվադիան այժմ արդէն պատմական կարեւորութիւն ստացած է շնորհիւ վերջին աղէտալի անցքին։ Յիշատակը դեռ ջերմ է ամենուն մտքին մէջ։ Այստեղ Հոկտեմբերի 20ին (Հ. Տ.) վախճա-

նեցաւ Ռուսաց կայսրն Աղեքսանդր Գ. որ իրաւամբ ժառանգած է խաղաղարար տիտղոսը։ Հանգուցեալ կայսրն անձամբ չէր սիրեր Լիվադիան, ուր արդէն իրեններէն երկուքը զոհ էր տուած մահուան, բայց իւր հիւանդութիւնը սաստկանալով ի Սպալա, բժիշկներու ստիպմամբ հարկադրեցաւ դիմել Խրիմ եւ բնակիլ Լիվադիայի ամարանոցը։ Այս միջոցին Լիվադիան եւ առ հասարակ Եալթայի ամբողջ շրջակայքը կայսերազուն իշխաններու եւ օտար բարձրաստիճան հիւրերու կայարան էր եղած։ Արդէն մինչեւ հանգուցեալ կայսեր գալը՝ իւր նորապսակ դուստրը Քսենիա եւ ամուսինը Աղեքսանդր Միխայիլովիչ՝ (Կաւկասիոյ նախկին փոխարքայ մեծ իշխ. Միքայէլի որդին) եկած էին Այթոդոր՝ Եալթայի մօտ, իրենց մեղրալուսինն անցընելու։ Իսկ կայսեր հիւանդութիւնը հետզհետէ հաւաքած բերած էր իւր բոլոր ներքին ու արտաքին ազգականներն, որոնցմէ Անգղիոյ Թագաժառանգն եւ իւր կինը, Ուէլսի իշխանն եւ իշխանուհին մահուանէ վերջը միայն կրցան հասնիլ։ Այս այցելութիւններու մէջ ամենէն սրտառուչ հանդիպումն էր անշուշտ այն, երբ ծանրապէս հիւանդ Միապետն՝ առաջին անգամ կը տեսնէր եւ կ՚ընդունէր իւր հարսը, անդրանիկ գահաժառանգ որդւոյն նշանածը, Հէսսէն-Դարմշտադի իշխանուհին։ Այս պարագայն, որ արդէն կանխապէս ծանր հոգ կը պատճառէր բժիշկներուն, մեծ յուզում պատճառած է հիւանդին։

Աղեքսանդր Գ. իւր Լիվադիա գալուն հետեւեալ օրերն կառքով կը զբօսնուր Եալթայի շրջակայքը, լեռները, ծովափն եւ ջրվէժները։[1] Հան-

1 Խրիմի այս ջրվէժներէն մէկը հայ անունը կը կրէր Ջուր-Ջուր, որու կոչումը շատ բնական է. բայց թէ ինչ առթիւ է տրուած՝ անծանօթ է ինձ։ Ջուր-Ջուրի ջրվէժին բարձրութիւնը 50 ոտք է. իւր աւազանը նշանաւոր է կարմրախայտի առատութեամբը, զոր Թաթարներն ուղղակի ձեռքով կ՚որսան այստեղ։

գուցեալ կայսեր կենաց համար աղօթելու եկած էր Կրոնշտադի Հ. Եօան Սերգիէվ քահանան, որ ամբողջ Ռուսիոյ մէջ սուրբի համբաւ կը կրէ։ Աշխարհի ամէն կողմ, բոլոր եկեղեցիներու մէջ աղօթքներ կ'ուղղուէին այս նպատակով։ Հայոց կաթողիկոսն՝ Խրիմեան Հայրիկ եւս հեռագրով ծանոյց կայսրուհւոյն Մարիին Ֆէոդորովնային՝ թէ ինքն եւս ջերմագին աղօթած է։ Ի սկզբան քանի մի օր լաւութեան նշաններ կ'երեւային կայսեր վիճակին վրայ, բայց այս երեւոյթը խաբուսիկ էր եւ ժամանակաւոր. շատ չանցաւ՝ հիւանդութիւնը (երիկամունքի բորբոքումն) ստացաւ իւր բովանդակ ոյժն եւ վերջապէս տարաւ անողոքելի յաղթանակը։

Եւ իբրեւ հետեւութիւն այս անցքին՝ Խրիմի այս անկիւնը յիշատակալից օրեր տեսաւ իւր մէջ. Նոր կայսեր բազմիլն եւ յուղարկաւորութեան հանդէսն այնքան տխուր՝ որքան փառայեղ։ Ռուսաց հիմնական օրինաց համեմատ՝ Աղեքսանդր Գ. կայսեր մահուանէն վերջը գահ պիտի բարձրանար իւր անդրանիկ որդին թագաժառանգ Նիկոլա Աղեքսանդրովիչ. եւ նոյն օրն՝ մահուանէ 3 ժամ վերջը՝ նոր կայսրն Նիկոլա Բ. իւր գահակալութիւնը ծանուցանող հրովարտակը կ'արձակէր եւ Լիվադիայի պալատական եկեղեցւոյ դիմացի հրապարակին վրայ հաւատարիմ հպատակութեան երդում կ'ընդունէր կայսերական տան իշխաններէն, աստիճանաւորներէն եւ ներկայ գտնուող զօրքէն։ Ամբողջ 3 շաբաթ բովանդակ քաղաքակիրթ աշխարհի ուշադրութիւնն ուղղուած էր դէպ ի Լիվադիա, նախ Աղեքսանդր Գ.ի վրայ՝ սաստ հիւանդութեան ժամանակ, եւ ապա Նիկոլա Բ.ի՝ իւր գահակալութեան առաջին օրերը։ Նիկոլա Բ.ի գահ բարձրանալովն իրեն գահաժառանգն եղաւ իւր եղբայրն Գէորգի Աղեքսանդրովիչ, “մինչեւ առա-

ջիկայ ամուսնութենէն զաւակ ունենալը,„ ինչպէս սատուած էր կայս. Հրովարտակին մէջ:[1]

Ինչպէս վերն յիշեցինք, Աղեքսանդր Գ.ի վերջին ժամերուն ներկայ գտնուած էր նաեւ իւր հայրը: Իշխանուհի Ալիս՝ Ռուսաց օրինաց համեմատ՝ չէր կրնար ամուսնանալ Թագաժառանգի հետ՝ եթէ չընդունէր յունադաւանութիւնը, պետութեան կրօնը: Եւ ահա՝ կայսեր մահուան հետեւեալ օրը՝ Լիվադիան հանդիսատես եղաւ գերմանացի բողոքական իշխանուհւոյ յունադաւանութիւն ընդունելու ծիսին, որ յատկապէս այս առթի համար իբրեւ բացառութիւն՝ Ռուսական Սինոդի կողմանէ կրճատուած էր: Իշխանուհի Ալիս իւր օծմանէն վերջը կոչուեցաւ Աղեքսանդրա Ֆէոտորովնա. Կ. Բ. Մեծ իշխանուհի տիտղոսով:

Հոկտեմբերի 25ին (Հին Տ.) հանգուցեալ Թագաւորին մարմինը պալատէն դուրս բերելով տարին Լիվադիոյ եկեղեցին: Դագաղն որ ծածկած էր ոսկեհուռ դիպակով եւ կայսերական Թագով, իրենց ուսերուն վրայ կը կրէին նոյն ինքն Նիկոլա Բ. կայսրն եւ իւր եղբայրն ու Թագաժառանգը, անգղիական գահաժառանգը, Յունաց Թագաւորի որդին եւ կայսերական իշխանազունք: Դագաղին ետեւէն կ'երթային այրիացեալ կայսրուհին, Ուէլսի իշխանուհին, Յունաց Թագուհին, իշխանուհի Ալիսա, եւ այլ կայսերական տան իշխանուհիներն ու պալատական տիկնայք: Յուղարկաւորութիւնը կը կատարուէր երեկոյեան մթուն, ուստի.

[1] Մեծ իշխան Գէորգի Աղեքսանդրովիչ իւր բնակութիւնը հաստատած է այժմ Աբասթուման Կաւկասիոյ նշանաւոր հանքային ջրի եւ ամառնային բնակավայրը, ուր ընտիր լեռնային օդ կը տիրէ: Ռուսիոյ ներկայ գահաժառանգն իւր վատառողջութեան դէմ զգալի բուժում գտած լինելով այստեղ՝ հանգուցեալ կայսրն յատուկ պալատ կառուցանել տուաւ, եւ այս վերջին տարիներս կայսերական անդամները շատ յաճախ կու գան Աբասթուման: Ո գիտէ գուցէ վերջին դէպքերէն ետեւ՝ Լիվադիան կը կորսնցնէ իւր հրապոյրքն եւ Կաւկասիա գրաւէ անոր տեղը:

ճանապարհին ամբողջ երկայնութեան վրայ կայսերական թիկնապահները ձեռքերնին ջահեր բռնած տխուր գնացքը կը լուսաւորէին։ Ճանապարհին երկու կողմն արմաւենիներ, դափնիներ եւ վարդասարդի ծառեր էին տնկուած։ Եկեղեցականաց երկայն շարքը՝ արծաթէ շուրջառներով դիմաւորեց դագաղն եկեղեցւոյ առջեւ, եւ անընդհատ զանգահարութիւնն ու երաժշտութեա նողբարձակ եղանակները աննման վեհութիւն կու տային տխուր հանդիսին։ Այն օրն Լիվադիան անթիւ բազմութիւն էր հաւաքեր, որ խռնած էր եկեղեցւոյն բոլորտիքը։ Եկեղեցական արարողութիւնը կատարուելէն վերջը՝ այս մեծ բազմութեան ալ թոյլ տրուեցաւ մտնել եկեղեցի եւ հանգուցեալ կայսեր աճիւնին առջեւ ծնրադրել։

Հետեւեալ երկու օրը 26ին եւ 27ին Տաւրիական (Խրիմի) եպիսկոպոսը բազմաթիւ եկեղեցականաց հետ՝ պատարագ մատոյց. եւ հոգեհանգիստ կատարեց, որուն ներկայ էին կայսրը, կայսրուհին եւ բոլոր բարձրաստիճան անձինք. եւ ապա դարձեալ թոյլ տրուեցաւ որ Լիվադիայի, Եալթայի եւ շրջակայից ժողովուրդը մտնէ եկեղեցին իւր երկրպագութիւնը կատարելու։ Իսկ Հոկտ. 28ին կայսերական դագաղը թնդանօթից որոտմամբ մեծ հանդէսով եկեղեցիէն հանուելով՝ Լիվադիայէն մինչեւ Եալթայի նաւամատոյցը՝ ամբողջ 4 քիլոմետր տեղ ձեռքերու վրայ տարուեցաւ։ Երբ հանդէսը հասաւ Եալթա, եկեղեցիներն սկսան զանգահարել, իսկ թնդանօթից ձայները շարունակուեցան մինչեւ հոգեհանգստի վերջը։ Նաւամատոյցի առջեւ կը սպասէր Պամեատ Մերկուրիա պատերազմական նաւը, ուր դրուեցաւ դագաղը։ Նաւ մտան նաեւ Նիկոլա Բ., իւր կայսրուհի մայրը, հարսնացու իշխանուհին, գահաժառանգն եւ իւր կրտսեր եղբայրները՝ Միքայէլ եւ Ալեքսի իշխանները, եւ Պամեատ Մերկուրիա՝ ուղեկցութեամբ

"Երկոտասան Առաքեալք" կոչուած գըահաւոր նաւին՝ բաժանուեցաւ Եալթայէն դէպի Սեւաստոպոլ, ուսկից եւ յատուկ երկաթուղւոյ սգազգեաց գնացքով դագաղը փոխադրեցաւ Մոսկուա եւ ապա Պետերբուրգ: Եւ այսպէս Լիվադիա՝ չնայելով իւր բոլոր կլիմայական յարմարութիւններուն, Ռուսաց կայսեր կենաց վերջին օրերուն հանգստարանն եղաւ, եւ ո՜վ գիտէ թէ այս պարագային ազդեցութիւն պիտի չունենայ անոր եւ միանգամայն նաեւ Եալթայի ապագային վրայ:

---

## ԺԶ.

## ՄԻՆՉԵՒ ՍԵՒԱՍՏՈՊՈԼ

Մտանք դարձեալ նաւն, որ ծանօթ շառաչմամբ վեր առաւ իւր խարիսխը. ցուցկը սկսաւ պտտտուել նաւահանգստին խաղաղիկ ծովն եւ յառաջ դիմել: Մենք կանգնած էինք նաւուն խելաց վրայ (poupe) եւ դեռ անյագ կը դիտէինք Եալթան, որ հետզհետէ փոքրանալով վերջապէս՝ լերան ստորոտին տակ ինկած փոքրիկ գեղի կերպարանք առաւ, մինչեւ որ բոլորովին անհետացաւ մեր աչքէն, երբ մենք բացուեցանք ծովի խորն եւ յետոյ սկսանք քերել Լիվադիայի եզերքը: Լիվադիայէն վերջ՝ Խրիմի եզերքը՝ սքանչելի դիրքով ամարանոցներու անընդհատ շարք մը կը կազմէ, որ ժամեր կը տեւէ: Ահա բացուեցաւ մեր առջեւ Օրէանդան՝ խիտ կանաչի մէջ թաղուած եւ հսկայ ժայռերու վրայ կանգնած: Այս տեղը կը վերաբերի Մեծ իշխան Կոստանդին Նիկոլայեվիչին, որ ընտիր խաղողի այգիներ եւ սեպհական գեղեցիկ ամարանոց ու մատուռ է կառուցած իրեն համար:

Օրիանդայի (Ճենովացիներէն casale Oreanda կոչուած) ապառաժներու վրայ մինչեւ հիմայ մնացեր են Կիկլոպեան շինութեան (construction cyclopéenne) աւերակներ, որոնք անշուշտ Խրիմի

նախապատմական ժամանակի բնակիչներու յիշատակարաններն են եւ Մեծ իշխանին ամարանոցին քով ալ 1882ին այրած պալատին մնացորդները կը կենան դեռ եւս։ Օրեանդայէն վերջ կու գայ Վէրէն Օրէանդան՝ անմշակ եւ դեռ իր վայրի դիրքը պահած, Մեղոբէ կոչուած ահագին ժայռի տակ, որու գագաթան վրայ մետաղեայ ոսկեզօծ մեծ գունդ կայ հաստատուած, վրան նոյնպէս մետաղեայ ոսկեզօծ խաչով։ Իսկ Օրիանդայի վրայէն կախուած է Այէ-Նիկօլա սարի բարձունքը։

Ծովեզերքը զանազան ձեւերով ու մեծութեամբ ապառաժներու ցոյցէն ետքը մեր աչքիս կը հանէ Այէ-Թօդօրի հրուանդանին իր լուսատու աշտարակովը (phare)։ Վերեւ յիշուած Կիկլօպեան շինութեանց մնացորդներն այստեղ եւս եւ աւելի առատ ամէն կողմ կը տիրեն։ Այի-Թոդորի՝ (որ միջնադարեան իտալական քարտէսներու վրայ կը յիշուի՝ capo sti todari, santo doro,) ծածկուած է այնպէս այգիներու եւ ծաղկանոցներու մէջ եւ ինչպէս վերը յիշեցի՝ այս տարի (1894) ամարանոցի տեղ է ծառայած Կաւկասիոյ նախկին փոխարքայի որդւոյ, Աղեքսանդր Միխայիլովիչ Մեծ իշխանին եւ իւր նորապսակ կնոջ Մեծ իշխանուհւոյն Քսենիա Ալեքսանդրովնայի (այժմեան կայսեր՝ Նիկոլա Բ. ի քրոջ), որոնք եկած էին իրենց մեղրալուսինն անցընելու այս տեղ։

Այի-Թոդորէն վերջ կու գան Գասպրա եւ Խորէիզ[1] եւ Միսխոր թաթարական գիւղերը,

---

1 Գաղղիացի ճանապարհորդ մը շատ հետաքրքրական պատմութիւն մը կը պատմէ Խորէիզի նախկին կալուածատէր Գոլիցին իշխանին վրայ։ Իշխանն եւ մանաւանդ իր ամուսինը՝ Աղեքսանդր Ա.ի ժամանակ Պետերբուրգի բարձրագոյն շրջաններուն մէջ մեծ ազդեցութեան տէր էին։ Բայց իշխանուհին յանկարծ երկրային կեանքէն զզուած՝ կը մտածէ երկնային կենաց նուիրել իր անձն եւ գործունէութիւնը, եւ ընկերանալով Կրիւդներ Պարոնուհւոյն եւ այլոց՝ կը սկսի խորհրդապաշտութեան աղանդի (mysticisme) տարածման պարապիլ, նպատակ ունենալով բոլոր աշ-

որոնք նմանապէս շատ ակնահաճոյ տեսարաններ են, ընտիր ամարանոցներ ունին, մանաւանդ Միսխոր կամ Միսօ խօրի (Միջագիւղ) ուր կը գտնուին Շուվալով, Բոբրինսկի եւ Վորոնցով-Դաշկով կոմսերուն նշանաւոր տներն ու այգիները։ Միսխորի գրօսանաց այգին՝ դափնիներու ամբողջ անտառ մ՚ունի. ասկէ զատ կան այնտեղ նաեւ ձիթաստաններ։ Եւ այս բոլորը շոգենաւէն դիտողին առ–

խար՞նանյապաղ Քրիստոսի "վարդապետութեան" դարձընել։ Բայց այնչափ եռանդ կը գործածեն այս աղանդաւորները իրենց վախճանին հասնելու համար, որ կառավարութիւնը հարկ կը համարի հրաւիրել զիրենք հեռանալ Պետերբուրգէն եւ երթալ բնակիլ Խրիմ։ Գոլիցի իշխանուհին՝ այս աքսորն իբրեւ երկնային հրաւէր է ընդունէր՝ բովանդակ Խրիմի Թաթարները քրիստոնեայ ընելու եւ աղանդին պարագլուխ Կրիւդներ տիկնոջ հետ աւելի մեծ եռանդով ձեռնարկեր են գործի։ Այս տեղ այս ինքնակոչ առաքելուհիները հանդիպեր են ուրիշ աւելի տարօրինակ այլ տիկնոջ մը, որ Կոմսուհի Գաշէ (Guacher) անուանուած առանձնացած եւ վերին աստիճանի այլակերպ կեանք կ՚անցընէր։ Այս անծանօթ օտարական տիկինը, ուրիշ մէկը չէր՝ եթէ ոչ նշանաւոր կոմսուհին De Lamothe, որ հրապարակական պատժի ենթարկուեցաւ Փարիզ՝ իբրեւ գլխաւոր մասնակցողներէն մին՝ le collier de la Reineի այսինքն Մարի-Անտուանէտ թագուհւոյն ադամանդեայ ապարանջանին ծանօթ գայթակղական գործոյն մէջ (1775)։ Արդ այս մեր երեք առաքելուհիները՝ վանական կուսանաց հագուստ հագած, ձեռքերնին խաչ եւ աւետարան բռնած կ՚անցնէին յառաջ, եւ լեռնէ լեռ անցնելով կը մտնեն Թաթարաց գիւղերը, եւ բաց երկնքի տակ՝ ծայրայեղ եռանդով կը սկսին քրիստոնէութիւն քարոզել մահմետականներուն։ Բայց այս տարապայման ձեռնարկութիւնը շատ ախորժելի չերեւցաւ Խրիմի Թաթարներուն եւ ոչ քրիստոնեաներուն, եւ դարձեալ կառավարութիւնը ստիպուեցաւ միջամտել եւ արգիլել այս նորատեսակ առաքելութեան գործը։ Առաքելուհիներն այնչափ վրդովեցան՝ այս արգիլմամբ, որ իրենց գլխաւորը Կրիւդներ չդիմանալով հիասթափման, հիւանդացաւ ու մեռաւ։ Իսկ իշխանուհին Գոլիցի թողուց իւր ձեռնարկութիւնն եւ կէս կնոջ կէս այր մարդու զգեստ հագած՝ այնուհետեւ առանձնացաւ իւր Խոռէյզի ամարանոցը, եւ այնտեղ վախճանեցաւ։ Ընդայելով այս անյաջողութեան, այս տիկիններու շնորհիւ խորհրդականութեան աղանդը մուտ գտաւ Խրիմ, ուր երկար ժամանակ իր հետքերը կ՚երեւային դեռ։ (Les Steppes de la mer caspienne, le Caucase, la Crimée et la Russie méridionale. Par Xavier Hommaire de Hell, Vol. III. Paris, 1845). —

ջեւ սքանչելի կերպով կը պարզուի ու շատ ակնահաճոյ տեսարան կ'ընծայէ։ Բայց այս գիւղերէն եւ ոչ մին այնպէս գեղազուարճ դիրք եւ կացութիւն ունի՝ ինչպէս մերձակայ Ալուպկա գիւղը։ Ալուպկա, որ Ճենովացւոց Lupico կոչածն է՝ դարուս սկիզբը բոլորովին վայրենի դիրք ունէր։ Ծովեզերքի վրայ՝ աւելի քան երկու քիլոմէտր տարածութեամբ՝ մի միայն ժայռեր էին կանգնած այնքան հսկայ եւ մէկը միւսի վրայ այնպէս դիզուած, որ կարծես Տիտաններու գործը լինէր։ Այս ժայռերու մէջ այն ժամանակ ալ կը բուսնէին նոճենի, կիպարիս, դափնի եւ այլ ծառեր, զորոնք անշուշտ նախկին յոյն գաղթականութիւնն էր տնկած, որու յաջորդ սերունդն այսօր ինք զինք իբրեւ Թաթար կը ներկայացընէ։ Եւ մեծագործ իշխանն Վորոնցով (Հարաւային Ռուսիոյ՝ կամ ճշդագոյն՝ Նովռոսիայի եւ Բեսարաբիայի՝ ընդհանուր կուսակալն էր) որ առաջին անգամ ուշադրութիւն դարձուց եւ Անգղիայէն, Գերմանիայէն ու Գաղղիայէն վարպետներ բերել տալով կանգնեց Ալուպկան, որ այնուհետեւ՝ իր դրացի Լիվատիայի արքունավայր լինելուն շնորհիւ՝ բայց մանաւանդ վերջին 5—6 տարիները՝ հետզհետէ ծաղկեցաւ եւ ամառնային բնակավայր եղաւ ընդարձակ տներով, պարտէզներով, ծաղկանոցներով։ Ալուպկայի պարտէզներն իրենց գեղեցկութեամբն եւ դիրքովը՝ համարձակ կրնան մրցիլ ուրիշ աւելի հռչակաւոր պարտէզներու հետ, իսկ պալատն, որ տեղական ժայռերէն պրծուած եւ յղկուած գրանիտի եւ պորփիւրի քարերէն եւ մաւրիտանական ոճով է կառուցուած, իր հոյակապ շէնքովը տեղի չի տար անգղիացի ազնուականաց ամենալաւ դղեակներուն առջեւ։ Ծովէն 155 ոտք բարձր կանգնած, եւ սքանչելի պարտէզներով շրջապատած, որոնք մինչեւ ծովեզը կ'իջնեն, մանաւանդ իր կանաչ գրանիտ ճակատովը՝ նաւէն նայողին վե-

րին աստիճանի հրապուրիչ տեսարան կ'ընծայէ։
— Պալատն այժմ կոմս Շուվալովին կը վերաբերի։
— Մեր ուղեկիցներէն մէկն, որ Եալթայէն մտած
էր նաւ, իր ամառնային բնակութիւնը հաստա-
տած էր Ալուպկա եւ հիացմամբ կը պատմէր այն-
տեղի զբօսավայր պարտէզին կամ աւելի ճիշդ՝
անտառին գեղեցկութիւնը։ Հարաւային բոյսերու
ամենահարուստ տեսակները կան այդտեղ։ Մագ-
նոլիներն (magnolier) կը բարձրացնեն իրենց սէգ
գլուխը պալատին քով, բարձրաբերձ կիպարիս-
ներն, դափնիներն, լայնարձակ սօսիներն (platane)
եւ նարնջիները աննման եւ հովասուն անտառ մը
կը ձեւացնեն պալատին կից։ Ամենաջերմ եղանակի
միջոցին այցելուներն այստեղ անհամեմատ ախոր-
ժելի զովութիւն կը զգան մտնելով պարտէզին
յատկապէս շինուած քարայրներն, որոնց քովերէն,
խիտ կանաչի մէջէն կամ քարերու ճեղքերէն վճիտ,
պաղ եւ յորդահոս առուակներ ջրվէժներու ձեւով
կը սահին, կը սողան եւ տեղ տեղ հայելւոյ նման
թափանցիկ մակերեւոյթով լճակներ կը ձեւաց-
նեն, ուր կարմրախայտն ամբողջ երամներով կը
վխտայ։ Ալուպկա բնակողները գլխաւորաբար Պե-
տերբուրգի եւ Մոսկուայի հարուստներն են եւ
դիւրին է երեւակայել թէ որքան հաճելի եւ մանաւ-
անդ թէ հիանալի է այս հիւսիսային այցելուներու
համար այս ամէնը՝ հարաւի տաք կլիման, ծով
դիրքն, եւ հարուստ բուսականութիւնն տեղ տեղ
արուեստական կատարելութեամբ կարգի բերու-
ած, եւ տեղ տեղ իրենց բնական վայրի դրից մէջ
դիտմամբ թողուած եւ ուր հանդարտութիւն եւ
կատարեալ անդորրութիւն կը տիրէ՝ հակառակ
Եալթայի զեղուն եւ շարժուն կենաց։ Այս պատ-
ճառով ալ ընտանեաց տէրերը կը նախընտրեն
իրենց գերդաստանով գալ՝ Ալուպկա անցընել
ամառն քան թէ Եալթայի մէջ, ուր կեանքն իբրեւ
փոթորիկ մըն է եւ աւելի սուղ. իսկ օդի կողմանէ,

Ալուպկան աշնան եւ ձմեռ ժամանակ աւելի տաք է, քան այս ծովեզերքի միւս բոլոր հովիտները, որովհետեւ միայն ծովի կողմէն է բաց եւ երեք կողմէն Այի-Պետրի լեռն իր թեւերովը պաշտպան է ցրտաշունչ հովերու դէմ։ Շատ անգամ հիւանդներն ամառուան վերջը եւ մնալու աշունն ու ձմեռը կ'անցրնեն այստեղ. եւ ահա այն ժամանակ տխուր է Ալուպկայի կերպարանքն, երբ հիւծախտաւորներն եւ այլ յուսահատական վիճակի հիւանդներն իրենց գոյութեան վերջին ամիսներն եւ շաբաթները կը քաշքշեն, թէեւ շատերու վրայ ալ բարերար ազդեցութիւն կ'անէ։

Ալուպկայի հովիտը հարուստ է նաեւ լեռնային վտակներով, որոնք կամ լեռան գագաթէն հանդարտիկ կը սահին դէպ ի ստորոտն, եւ կամ մեծ մասով շրջակայ ժայռերուն տակէն բղխելով դուրս կը սողան, եւ կ'ոռոգեն իրենց առջեւի բերրի ցամաքը։ Այս վտակները դեռ հաւատարմութեամբ կը պահեն իրենց յունական եւ թաթարական անունները՝ Քրօնիւրէս, Սուալաս, Մոհա-սու, Սուաճրը-Ուզէն եւ այլն։

Ծովեզերքին վրայ բնականաբար կան շատ յարմար լոգարաններ, ուր մեծ բազմութիւն կու գայ ծովային բաղնիքներու համար։ Մեր յիշեալ ուղեկիցը կը պատմէր որ Ալուպկայի այցելուաց ամենամեծ հաճոյքը՝ որուն իր դժուարութեան պատճառով, առանձնապէս կը ձգտին շատերը, Այ-Պետրիի գագաթը ելլելն է, որ հարթուած ճանապարհով, ձիով, 30 քիլոմէտր է, իսկ ոտք՝ նեղ ու ծուռ շաւիղներով՝ 18 քիլոմէտր։ Բայց այցելուն իր յոգնածութիւնը կը մոռնայ, կ'ասեն, երբ կը հասնի լեռան գագաթը, ուսկից հորիզոնը հրաշալի տեսարաններ կը պարզէ աչքի առջեւ։ — Ալուպկայի հազուագիւտ առարկաներուն կարգը կը համարուին նաեւ 2 շատ հսկայ կիպարիսի ծառեր, որոնք տնկուած են եղեր 1787ին, Ռուսաց Նշա-

նաւոր կայսրուհւոյն Եկատերինէ Բ. ի այցելութեան ժամանակ։ Այս կիպարիսները շրջապատուած են թզենի, նռնենի եւ ձիթենի ծառերով, որոնք նոյնպէս ահագին խոշորութեան են հասեր շնորհիւ իրենց տակի տաք բարեբեր հողին։

Ալուպկայէն վերջը ծովեզերքի վրայ թաթարական գիւղերը եւ առանձնականաց գեղազուարճ կալուածները դեռ կը շարունակուին։ Այս կարգի մէջ յիշատակաց արժանի է Մերտվէնը կամ Շէյթան-Մերտվէնի, որ Խրիմի հնութեանց ամենէն հետաքրքրական յիշատակարաններէն մէկն է։ Այստեղ կայ՝ ինչպէս անունն ալ ցոյց կու տայ, (Մերտվէն, սանդուղ,) զանազան երկայն ճանապարհներ՝ հսկայագործ վիմափոր սանդղաձեւ եւ իրարմէ բաւական հեռու աստիճաններով։ Այս սանդուղը 40էն աւելի կրմաններով (zigzag), մօտ 1500 մետր բարձրութեան կը հանէ՝ ամբողջապէս ապառաժի մէջ, եւ այս կրմանները դատիկոններու նման շարուած են իրար վրայ, այնպէս, որ շատերը խիստ գլխու պտոյտ կը զգան վեր ելլելու ժամանակ, ուստի շատ անգամ ձիով կ'ելլեն, եւ ինչպէս կ'երեւայ տեղական ձիերն այնպէս սովորեր են այս վերնային ուղեւորութեան, որ առանց դժուարութեան եւ առանց սայթաքելու կ'ելլեն սանդուղի աստիճանները։ Այս հսկայական աշխատութիւնն եւս անշուշտ կիկլոպեան շինութեան մնացորդ է, զոր ոչ միայն բուն կառուցանողները, նախապատմական ժամանակի բնակիչները, կը գործածէին այլ նաեւ Ճենովացիք, որոնք եւ իրենց լեզուով կոչած են scala թէ սանդուղն եւ թէ մերձակայ գեղը, որ մինչեւ հիմայ ալ նոյն անունը կը կրէ։ Խրիմի այցելուները բնականաբար ոչ ինչ կը կորսնցընեն, եթէ ի մէջ այլոց այս նախապատմական սանդուղով բարձրանան հսկայ ապառաժներու գլուխն, ինչպէս կ'անեն իրօք շատերը. իսկ տեղացիք արդէն միշտ օգուտ կը քաղեն՝ իբրեւ

ամենակարճ ճանապարհ մէկ ձորակէն միւսն անցնելու համար։ Ժայռերու անմատչելի տեղերն ալ՝ հարաւային վայրի ծառերու ամէնէն ընտիրը կը բուսնի՝ օրձուտուն (arbutus andrachne), որ իր շատ գեղեցիկ կանաչի գոյն տերեւներովն ու ճիւղերովն եւ արենագոյն կարմիր բունովն այն ապառաժներու ամենալաւ զարդը կը կազմէ։ — Եւ բոլոր այն ամարանոցներն ու կալուածներն առհասարակ իրենց մէկ կողմն այս վայրի հոյակապ ժայռերն ունին, իսկ միւս կողմը սքանչելի մշակուած ծառաստաններ, որոնց ստորոտն ալ կապուտակ խաղաղ ծովը կը թանայ։

Գեղեցիկ է նաեւ Սիմէիզ՝ Ալուպկայէն 4 քիլոմէտր հեռու, ուր՝ ծովափի վրայ կառուցուած "վանակնեայ (cristal) պալատը" նաւէն դիտողին ուշադրութիւնը կը գրաւէ։ Այս "պալատը" մի պարզ պանդոկ է ամառնային այցելուներու համար, եւ վանակնեայ կոչուելուն պատճառն այն է, որ տանիքը եւ շրջապատի ամբողջ գաւիթը ապակիով է ծածկած։

Սիմէիզէն վերջը մեր առջեւ կ'ելլէ միմեանց վրայ խորդուբորդ ցցուած ժայռերու ուրիշ խումբ մի, որ իր առաջը փոքրիկ ծովախորշ մ'ունի, եւ երեւի այս պատճառով կը կոչուի այստեղը Լիմէնա (անշուշտ Լիման = Նաւահանգիստ) ուր ժայռերու առանցքի մէջ կորսուած ամարանոցներ եւ ձիթենիներ կ'երեւան։

Այս բոլոր մշակեալ ծաղկեալ անդաստաններու եւ գեղազուարճ բնակավայրերու իբրեւ խիստ հակապատկեր՝ քիչ յետոյ մեր դէմը կ'ելլեն երկրաբանական սարսափելի յեղաշրջումներու հետքեր. վերէն վար խորտակուած եւ գլորած-ահագին ժայռեր, հեղեղուած հովիտներ եւ խոր վիհեր։ Այստեղ անցեալ դարու վերջերն, տեղական սարսափելի շարժմամբ՝ 2 քիլոմէտր երկարութեամբ եւ 1 քիլոմէտր լայնութեամբ տեղ,

երկիրը տեղ տեղ պատառուելով, ամէն կողմէն, վերէն վարէն, լեռ, ժայռ սկսեր են վար իջնալ եւ ծով թափուիլ, իրենց տակն առնելով մի մեծ թաթարական գեղ։ Այս երկրային սոսկալի յեղաշրջման հետքերը դեռ մինչեւ հիմայ կ՚երեւան, եւ նախկին թաթարական մեծ գեղին փոխարէն մօտերը հիմնուեր է մի փոքրիկ գիւղ, որու անունն ալ արդէն նոյնը կը յայտնէ Քէչիւք-քէօյ (փոքր գեղ)։

Քանի մի ուրիշ փոքր եւ աննշան տեղերէ վերջ, ինչպէս Միխալատկա, Մշատկա, Կիկէնէիզ, Ֆօրոս եւ Լասպի, (այս վերջինը նոյնպէս շատ գեղեցիկ դիրք ունի), կը տեսնենք Այիա-Բուրուն հրուանդանը, որ շնորհիւ իր 1920 ոտք բարձրութեան նոյն իսկ ծովու բացէն, 60 մղոն հեռաւորութենէն կ՚երեւայ, յետոյ կու գայ Բալակլավա, ուսկից մինչեւ Սեւաստոպոլ 12 քիլոմէտր միայն կը մնայ։ Բալակլավա՝ 2000 բնակիչներով, աննշան փոքր գիւղաքաղաք է, որու նաւահանգիստը շատ յարմար է ծովային բաղնիքի համար եւ շատերը կու գան այստեղ լողանալու։ Այս աննշան քաղաքը որ պատմութեան մէջ իր էջն ունի այժմ, իբրեւ Խրիմի 1854ի պատերազմի թատերավայրերէն մէկը, բնակութիւն սկսած է ունենալ 1774ին Կատարինէ Բ. կայսրուհւոյ ժամանակ, որ զայն յատկացուցած էր արքիպեղագոսի յոյն գաղթականներուն, որոնցմէ յետոյ մի փոքրիկ զինուորական խումբ ալ էր կազմուած։ Բալակլավա նախնապէս արդէն յունական գաղթականութիւն ունէր[1], ուսկից Ճենո-

---

1 Ստրաբոն այս տեղը “խորհրդական նշանաբերու Նաւահանգիստ„ կ՚անուանէ (Συμβόλων λιμήν) եւ կը պատմէ թէ աւազակներու, ծովահէններու մշտական ապաստանարանն էր։ Ստրաբոնի այս խօսքին վրայ հիմնուելով կարծողներ կան, որ Հոմերոսի Ոդիսականի մէջ (Երգ Ժ.) մանրամասնօրէն նկարագրուած Լէստրիգոններու Նաւահանգիստը՝ (Lestrygons) այս Բալակլավան էր, որովհետեւ իրօք դժուար է գտնել աւելի յարմար աւազակական բոյն, մանաւանդ ծովահէններու համար։

վայրերուն է անցած, ապա Թուրքերու եւ վերջապէս Ռուսաց ձեռք։ — Խրիմի պատերազմի ժամանակ անգլօ-գաղղիական բանակն եւ նաւատորմիղը յարձակմամբ առին քաղաքն, զոր վերեւ յիշուած յունական՝ Բալաքլավայի կոչուած փոքրիկ զինուորական խումբը միայն կը պաշտպանէր։ Երբ Սեւաստոպոլի պաշարումը յուսացուածէն շատ աւելի՝ (11 ամիս) տեւեց, Անգղիացիք Բալաքլավան կատարեալ անգղիական քաղաք դարձուցին՝ իրենց ժամանակաւոր գրաւման ժամանակ, հիմնելով այստեղ հեռագրատուն, զանազան գործարաններ, երկաթուղի որ տեւեց մինչեւ իրենց հեռանալը։

Շոգենաւը՝ ձախ կողմն ունենալով Խրիմի այս սքանչելի ծովափն եւ աջ կողմն՝ հարկ է ասել, անհուն ծովն, որ մինչեւ փոքր Ասիոյ եզերքը կը տարածուէր, արագօրէն կը դիմէ յառաջ։ Ծովն որ յառաջ սաստիկ կատղած էր, չգիտեմ ինչ պատճառով, — այժմ իր ալիքները մեղմելով դիւրութիւն կու տայ մեզի՝ հանդարտօրէն առանց ստամոքսի նեղութիւն զգալու՝ նաւայարկի վրայէն դիտելու մեր շրջապատն եւ ուղեկիցներուն իրար հետ քաղցր զրոյցներ անելու։ Այժմ կ՚երեւան ընդարձակ դաշտեր, որոնք ծովեզերքի վրայ ուղղաձիգ բնական հողային պատնէշներով կը պատսպարուին, օրը սկսած է խոնարհիլ եւ երբ Սեւաստոպոլն երեւաց հեռուէն՝ ժամն արդէն երեկոյեան 8ը կ՚անցնէր։ Ելեկտրական լոյսը՝ փայլուն եւ հանդարտ յանկարծ լուսաւորեց շոգենաւը. իսկ դուրսը հեռուն, մեր հորիզոնի վերջին ծայրը պայծառ արեգակը կարծես վաղաժամ մայր մտնելէն տժգոհ, յամառաբար կը շարունակէր արձակել իր կարմրուկ շառաւիղները, վարէն դէպ ի վեր, բայց, վերջապէս քաշեց տարաւ նա ալ իր վերջին ճառագայթները, տեղ տալով գիշերուան թագուհւոյն որ պատրաստ կեցած էր երկնակամարի վրայ, եւ իր

հզօրագոյն քրոջ վերջնական հեռանալուն կը սպասէր, որպէս զի ազատօրէն երեւան գար եւ խաղար ու մեղմիկ լողար կանաչագոյն ծովի անհուն եւ վճիտ խորութեանը մէջ։

Ինչպէս ըսի, նստած նաւի խելքին վրայ՝ կը դիտէինք այս պատկերն երբ զանգակի ձայնը հրաւիրեց զմեզ սեղանատուն, երեկոյեան թէյն ընդունելու։ Կին, մանուկ, տղամարդ շարուեցանք այդտեղ երկար սեղանի բոլորտիքը եւ սպասաւորները մի առ մի մատուցին մեզ թէյի բաժակները։ Սեղանի վրայ՝ լիմոնը, քաղցրաւենիքը, կարագն եւ փափուկ հացը ուղղակի կարծես կը խնդային մեր երեսին եւ մենք առատօրէն պատիւ արինք իրենց՝ հետզհետէ ուղարկելով ադոնց մեծ մասը՝ դէպ ի մեր դիւրահաճոյ ստամոքսը։ Ամէն մարդ իր դրացւոյն կամ դիմացինի հետ կը խօսէր, մայրերը զաւակները կը կշտացնէին եւ միանգամայն կը մասնակցէին խօսակցութեան։ Ոմանք կը վերջացնէին կ՚ելլէին, կը հեռանային, իսկ ուրիշները նոր կու գային, մէկը վերնայարկի սանդուղէն վար իջնալով, միւսը վարի օթեակներէն վեր սողալով։ Շատերու հետ միասին ես ալ մեծ ախորժակով՝ կարագն ու քաղցրաւենիքն, առատ հացով՝ ընկերացուցի քանի մի բաժակ թէյին, որովհետեւ այն օրը ճաշին գրեթէ ոչինչ էի կերած։ Դեռ Բալակլավա չհասած՝ նաւը հեռացած էր բաւական եզերքէն, եւ այդ միջոցին ծովն առանց ալիքի չէր եւ մենք հաւաքուած էինք ճաշելու։ Նաւը կ՚օրօրար, սեղանը նոյնպէս. եւ այս անհաճոյ պարի ժամանակ մեր առջեւ դրուած պնակները վար ընկնելէն ազատելու համար, յատուկ պատրաստուած քառակուսի երկար վանդակներու մէջ էին զետեղուած։ Առաստաղէն կախուած լամպարներն ուժգին կը ճօճային. սպասաւորները՝ աղանդերի եւ կերակրոյ պնակները բերած ժամանակ բռնութիւն կը բանեցնէին իրենց անձի վրայ, որ դեռին չտարա-

ծուխն։ Քովս սահմանապահ զօրքի պաշտօնակալ մը նստած էր, որ Անդրկասպեան նահանգէն, կարծեմ Ասխաբադէն կու գար եւ նոյնպէս ենթակայ էր ծովային հիւանդութեան։ Ես ու այս պաշտօնակալը մեծ ճիգեր գործ կը դնէինք չշարժուելու համար եւ նաւապետի խորհրդով՝ լամպարներուն մօտիկ չէինք տար, որ օրօրումը չտեսնենք. փորձեցինք մինչեւ անգամ աներկիւղ եւ վստահ կերպով, մօտենալ կերակուրներուն. մէկ մէկ բաժակ վօտկա խմելէն վերջը նախ չալբառի եւ ապա ուրիշ աղանդերներուն դիմեցինք մինչեւ տաք կերակուրներու մատուցուիլը, բայց մեր բոլոր ջանքերն ի զուր մնացին։ Գլուխս սկսեր էր տատանուիլ, մըտքերս կը շփոթէին. ստամոքսս անհանգիստ էր. վերջապէս գլխուս պտոյտ տալն այնքան աւելցաւ որ աւելի դառն եւ սեղանակիցներուս համար անհաճոյ տեսարանի առիթ չտալու համար, խոհեմութիւն համարեցայ Մարտին Նիկիտիչի խորհրդին անսալ եւ ամէն ինչ թողած, քաշուեցայ սեղանէն, ռուս պաշտօնակալի հետ միասին երերալով սանդուղի գլուխը գտանք եւ՝ իջանք մեր օթեակն, ուր կօշիկներս հանելն եւ ուղղակի հագուստով անկողնիս վրայ պառկիլը րոպէական գործ մ՚եղաւ։ Բայց այս վիճակը մի ժամ միայն տեւեց. ծովը խղճացեր էր մեր վրայ եւ "Մեծ իշխ. Կոստ.„ նուազեցուցեր էր իր պարելու եռանդն, որով կարելի եղաւ դարձեալ թողնել նեղ օթեակի խեղդած մթնոլորտն ու նաւայարկը վեր գալով մաքուր օդ ծծել. սակայն ճաշը գնացեր էր արդէն, ուստի երբ 2—3 ժամ վերջը թէյի սեղանի վրայ միացանք, պաշտօնակալս պակաս պատրաստականութիւն չունէր ճաշելու եւ քաջ զինուորականը նախանձելի եռանդով յարձակում գործեց . . . հաց ու կարագի վրայ եւ կարմիր տաք . . . թէյով առատօրէն ողողեց իր ներքին պատերազմի դաշտը։

Թէյէն վերջը ամէն մարդ ցրուեցաւ: Այն ճանապարհորդներն, որոնք Սեւաստոպոլ պիտի դուրս գային, սկսան պատրաստել իրենց իրեղէնները, իսկ միւսները սիգար կամ սիգարէթ ծխելով կը քալէին վերնայարկի վրայ եւ կամ կը խօսակցէին զանազան նիւթերու վրայ, կամ հետաքրքրանօք կը դիտէին Սեւաստոպոլի նաւահանգիստն, որ արդէն մօտեցած էր մեզի լոյսի մէջ լողալով եւ որու երկու կողմն, այսինքն հիւսիսային եւ հարաւային եզերքն իրենց լեռնային դիրքէն աստիճանաբար կ'իջնային դէպ ի ծովեզերքը: Երկու կողմի եզերքն ալ բաւական բարձր են, տեղ տեղ ժայռոտ եւ սուր հրուանդաններով ծովի մէջ դրուած:

Հոգենաւն սկսաւ սուլել՝ իմաց տալու համար քաղաքին իր մօտենալը. ծովը կատարելապէս խաղաղ է եւ մեր մէջէն ստամոքսային անհանգստութեամբ կամ գլխու պտոյտով հիւանդացողներն անհամբեր կը սպասեն այն վայրկենին, երբ իրենց մարմինը հաստատուն հողի վրայ զգալով ծովային հիւանդութիւնն վերջնականօրէն հրաժեշտ պիտի տայ իրենց:

---

## ԺԷ.

## ՍԵՒԱՍՏՈՊՈԼ

Մտանք նաւահանգիստ՝ ձախ կողմէն մեզ սպառնացող ահագին ամրութեանց հովանաւորութեան տակ: Քաղաքը՝ լեռներու, բլուրներու վրայ փռուած՝ ամփիթէատրոնի դիրքովն եւ ծովեզերքը շքեղ շինութիւններով շատ հաճելի տպաւորութիւն կը գործեն ուղեւորի վրայ: Բայց ամէնուն աչքերը՝ նաւահանգստին ամրութիւններէն վերջը կ'ուղղուին այնտեղ պատրաստ կանգնած 3 զրահաւոր նաւերուն, որոնց ազդած արհաւիրքը չ'անհետանար սպիտակազգեստ Էքիփաժին տեսքովն ալ,

որ կայսերական զբօսնաւի պաշտօնն ունի։ Բաց աստիցմէ կան նաեւ մեծ թուով առեւտրական շոգենաւեր եւ առագաստաւոր նաւեր։

Սեւաստապօլ մտնողի առաջին գործն է միշտ տեսնել թէ ինչ աւերածներ են մնացած վերջին ահեղ պատերազմէն, եւ թէ ճշմարիտ է, որ անկէ 40 տարի ետքն ալ քաղաքը դեռ կը կրէ այն ահեղ եւ երկարատեւ պաշարման եւ սոսկալի ռմբակոծութեան հետեւանքները։ 1854ի պատերազմին գլխաւոր յիշատակարան Մալախովի բլրոյն վրայ՝ զոր Գաղղիացւոց հետեւութեամբ սովորական է Malakoff կոչել, Ալբիոնն ի յիշատակ իր այնտեղ զոհած որդւոց գեղեցիկ դամբան մ'ունի կանգնած։[1] Մալախովն այժմ ցանկապատ է մասամբ եւ աւերակներու պահպանութեան համար յատուկ պահապան կայ, որ լաւ հմուտ է թէ պատերազմի միջոցին որ մարտկոցն ուր էր կանգնած, ուր էին վա-

[1] Շատ հետաքրքրական եւ միանգամայն շատ պարզ է այս բլուրին՝ Մալախով կոչուելու պատմութիւնը։ — Այստեղ, բլրին գլուխը՝ ռուսական կոբակ (գինետուն) մի կար, որու ամենամեծ յաճախորդն էր նաւարանի պաշտօնեաներէն առագաստաւորի նաւապետ մի Մալախով անունով, որ որչափ գործունեայ մարդու հռչակ ունէր՝ նոյնչափ ալ գինովի, եւ որ վերջապէս իր բնակութիւնը հաստատած էր գինետան մէջ։ Ով որ իրեն պէտք ունենար՝ զինքը կ'երթար նոյն բլրակին գինետան մէջ կը գտնէր. եւ որովհետեւ այս այսպէս տարիներ տեւած է, ուստի բլրակն եւ Մալախով նաւապետը ժողովրդեան յիշողութեան մէջ անբաժան տպաւորուելով, բլրակին անունը մնացեր էր Մալախովի Թումբ (Малаховъ Курганъ)։ 1854 Սեպտ. 13ին, գաղղ. անգղ. եւ տաճկ. դաշնակից բանակին երեւնալու օրը, Մալախովի բլրան վրայ երկյարկեան աշտարակ մի կար միայն 5 թնդանօթով, ուսկից քիչ անդին այժմ նոր մարտկոց մի կը բարձրանայ յանուն Կոռնիլովի, Սեւաստոպոլի արի պաշտպանողին։ Այնտեղ նոյն աշտարակին քով՝ Նախիմով ծովապետն, որ այնքան նշանաւոր է հանդիսացած 1853 տարին, Սինոպի նաւամարտին մէջ, ճակատէն գնդակահար սպանուած է, երբ հեռադէտը ձեռքին՝ թշնամի բանակին ամրութեան գիծը կը դիտէր։ (Д. Афанасьевъ, “Путеводитель по Севастополю, на его развалинахъ„. Դ. Աֆանասեւ. “Առաջնորդ Սեւաստոպոլի աւերակներու վրայ„. Էջ 35—36։) — Մալախովի բերդն առնուեցաւ միայն 1855ին Օգոստ. 27ին՝ 3 օրուան ահեղ ռմբակոծութենէ վերջը։

ռօդի շտեմարանները, պատնէշներու ծածկոյթները (blindes), ուր ինկան Կոռնիլով ու Նախիմով՝ պատերազմին դիւցազունքն, եւ այլն։

Սեւաստոպոլի բոլոր շրջակայքը ծածկուած է գերեզմաններով. քաղաքէն դուրս որ կողմն որ երթաս՝ կը հանդիպիս ցանկապատ շիրիմներու, որոնք կենդանի բողոք են պատերազմի՝ մարդկութեան այս ահռելի պատժին դէմ։

Խրիմի պատերազմին մասնակցող ամէն տէրութիւնները՝ բաց ի Թիւրքիայէն՝ ունին այստեղ իրենց յատուկ գերեզմանոցներն, ուր ամփոփած են իրենց զոհերուն ոսկրները։ Ամէնէն յառաջ Գաղղիա եղած է այս մասին հոգացողը։ Գաղղիական դամբանն, որու տակ կը հանգչին 10 զօրապետ եւ բազմաթիւ պաշտօնականներ, շրջապատած է խիտ ծառաստանով եւ ծաղկանոցով. յատուկ Գաղղիացի պահապան մը կայ շրջակայից ծաղիկներուն ու բոյսերուն։ Իտալական գերեզմանոցն աւելի հեռու է, ուր վերջերս մատուռ մը կառուցուած է։ Իսկ Ռուսներն իրենց զոհերուն անկման, որ տուել է նախկին ամրութեանց տեղերուն վրայ, թէ Մալախովին եւ թէ քաղաքին կենդրոնը պարտէզ են շինած, եւ այս վերջինին, որ իր բարձր դիրքէն զբօսողներու ոչ աննշան բազմութիւն կը գրաւէ, Պատմական պարտէզ (Историческій садъ) անունն է տրուած։ Բայց Սեւաստոպոլի պաշտպաններուն իսկական հանգստարանը՝ քաղաքին հիւսիսային կողմն է, եւ այս "Եղբայրական գերեզմանոցին„ մէջ (Братское кладбище) ինչպէս կը կոչուի, կարմիր պորփիւրէ բրգաձեւ գեղեցիկ տաճար կառուցուած է, ուր 1890ին աւելցած է հռչակաւոր Տոթլեբէն (Totleben) զօրապետին մարմարեայ արձանը[1]։

---

1 Տօտլէբէն թէեւ մասնակցած է Խրիմի պատերազմին, բայց գլխաւորաբար վերջին 1877—8 ռուս-տաճկական պատերազմին մէջ ծանօթ եղած է։

Եւ այսպէս Սեւաստոպոլի շրջակայքն ու բարձրաւանդակները՝ քաղաքին վերի մասերը՝ կենդանի կերպով կը յիշեցընեն սոսկալի պաշարումը. փողոցներու մէջ ալ հոս հոն դեռ կը տեսնուին այրած կամ կործանած տներ եւ քանդած շէնքերու մնացորդներ, որոնց տխուր աւերակայը պատերուն ճեղքերէն դուրս պրծած թարմ բոյսերու ոստերը միայն՝ փոքր ինչ նորութեան հոտ կու տան։

Սեւաստոպոլի պատերազմն իր ամէն պարագաներովն հանրածանօթ՝ աւելորդ է այստեղ յիշեցնել, բայց ուղեւորին մտաց մէջ այս բոլորը կ'արթննայ կը մարմնանայ՝ երբ մտնէ քաղաքին թանգարանն, որ ինքնին աւերակ շէնքի վրայ հիմնուած, աւերակներու յիշատակները կը պահպանէ, եւ ունի գլխաւորաբար՝ պատերազմին վերաբերեալ զանազան հեղինակութիւններու, յատակագծերու, եւ քարտէսներու մեծ հաւաքածոյ մը։ — Այս յիշատակներէն զատ Սեւաստոպոլ՝ իր դիւցազանց գերեզմաններուն վրայ, բլրոյն գլուխը շատ շքեղ նոր մայր եկեղեցի կառուցած է, որու մէջ մարմարեայ տախտակներու վրայ քանդակուած են Լազարէվ, Նախիմով, Կոռնիլով, Իստոմին, Կարպով, Շէստակով եւ Բուտանով անունները։ Այս տաճարը նուիրուած է յանուն ռուսական Ս. Վլադիմիրի, եւ մէջը գետնի հաւասար երկրորդ եկեղեցի մ'ալ ունի, ուր կան իսկապէս յիշեալ զօրապետներուն եւ ծովապետներուն դամբանները։

Սեւաստոպոլի ծովեզերեայ մասը հակապատկերն է իր բարձրաւանդակներուն, գեղեցիկ եւ միանգամայն տարօրինակ ճարտարապետութեամբ կառուցուած բազմաթիւ նոր շէնքերովն եւ սալայատակներովն, որոնք ծառերու կանաչութեան մէջ շատ հաճելի տեսք ունին։ Քաղաքին այս մասը միայն տեսնողը՝ անկարող է երեւակայել թէ ինչ զարհուրելի հարուածի է ենթարկուած եղեր նա՝

Հազիւ 40 տարի յառաջ։ Ծովափունքէն փոքր ինչ բարձր՝ նաւահանգստին վրայ շինուած է «Ծովեզերեայ բուլվարը», ուր զբօսնողներու թուին մէջ անշուշտ աննշան տեղ չեն գրաւեր նաւաստիներ, նաւապետներ, եւ մանաւանդ ծովային զինուորական պաշտօնեայք, որ յայտնի կը ցուցընեն քաղաքին ծովային պատերազմական դիրքը։ Այս պարտէզի մէջն են ամառնային թէատրոնն եւ Yacht-club, որ այստեղի ամէնէն աւելի յաճախուած եւ յարգուած հաստատութիւններէն մէկն է, եւ անդամներ ունի նաեւ օտար քաղաքներէ։

Շատ նշանաւոր է եւ իսկապէս Սեւաստոպոլի գլխաւոր արժանաւորութիւնն է մեծ նաւահանգիստն որ շատ խոր մտած է ներս, եւ ինքն իր մէջ եւս զատ զատ ճիւղերու կը բաժնուի, որոնք նոյնպէս նաւահանգստի անուն կը կրեն. ինչպէս՝ Карантинная бухта (Կարանթինի նաւահանգիստ,) որ առաջինն է ծովէն մտնելուն պէս, յետոյ կու գայ Артиллерійская (Թնդանօթաձգական) որ այժմ կը ծառայէ իբրեւ առեւտրական նաւերու ապաստանարան, ապա ամենամեծը՝ Южная (Հարաւային), որ $3\frac{1}{2}$ քիլոմէտրի մօտ երկայնութիւն, 300 մէտրի չափ լայնութիւն եւ 35 մինչեւ 56 ոտք խորութիւն ունի։ Այս Հարաւային կոչուած նաւահանգիստն՝ իր ամէն կողմէ պաշտպանուած դիրքը շնորհիւ՝ մեծամեծ դիւրութիւններ ու յարմարութիւններ կ'ընծայեցընէ. այստեղ են պատերազմական նաւերը։ «Հարաւայինին» մի ճիւղն ալ աւազանաձեւ ուրիշ փոքրիկ նաւահանգիստ մի կը ձեւացընէ, որու ափանց վրայ հաստատուած են զօրանոցներն ու յարակից շէնքերը։ Իսկ ամբողջ նաւահանգստին երկայնութիւնը 7 քիլոմէտր է։ Բայց ի վերագոյն յիշուած ճիւղերէն՝ ուրիշ աւելի փոքր խորշեր ալ կան, որոնք ազատօրէն կրնան իբրեւ ապաստանարան ծառայել ամէն կարգի նաւերու։ Այսպիսի խորշերէն մէկուն՝ եւ յատկապէս Կ-Պէլ մօտ՝ 1854ի

պատերազմին ժամանակ, Գաղղիացիք փոքր քաղաք մի հիմնած էին բուն իրենց ազգային ոճով, ուր կային պանդոկներ, խանութներ, թէատրոններ նաեւ cafés chantants, որոնք վերջացան՝ պատերազմին դադարելովն եւ Գաղղիացւոց հեռանալովը։ Նաւահանգստին այս ճիւղաւորութեան հետեւութեամբ Սեւաստոպոլ եւս 3 մասի բաժնուած է, հիւսիսային, հարաւային եւ նաւական։

Սեւաստոպոլի մէջ դիտելու արժանի տեղերէն մէկն է՝ Ռուսաց նաւագնացական ընկերութեան հսկայաձեւ նաւական աւազանը՝ Мортоновъ Эллингъ (Մորթոնով Էլինգ), իւր վերաքարշ մեքենայովը, ձուլարանովն եւ այլ զանազան գործարաններովը։ Նշանաւոր է մանաւանդ վերաքարշ մեքենան, որ եւրոպական այսօրինակ նաւարաններու մէջ ալ իր պատուաւոր տեղն ունի անշուշտ։ Այս մեքենային պաշտօնն է՝ մեծ, մինչեւ 2000 տակառաչափ ծանրութեամբ նաւերը ծովէն ցամաք հանել եւ փոխադրել նաւարանին այն մասն՝ ուր նորոգութիւնք կը կատարուի. Էլինգը այս նպատակի համար երկու երկաթուղի ունի, իւրաքանչիւրն 850 ոտք երկայնութեամբ, որոնց 420 ոտքը ջրի վրան է, եւ 430ը ջրի տակ։ Այստեղ կը նորոգուին այս շոգենաւուց ընկերութեան նաւերը։ Նաւարանին մէջ շինուած են եւ կը շինուին նաեւ բազմաթիւ նաւեր, նոյն իսկ պատերազմական, ինչպէս են Սեւ ծովու նաւատորմղին՝ Չեսմա, Սինոպ եւ Գէորգէի Պոբեդոնոսեց (Ս. Գէորգ Յաղթական) զրահաւորները (ամէն մէկը 10 հազար տակառաչափ) եւ Կուբանեց, Տերեց եւ Ուրալեց թնդանօթակիր նաւերը (cannonière)։ Նաւարանն ունի իր յատուկ մեքենագործական բաժինն, ուր նաւերու մեքենաներ կը ձուլուին եւ կը նորոգուին։ Ընկերութիւնն այստեղ արուեստագիտական դպրոց ունի բացած, ուր 50 աշակերտ կ'ուսանին՝ պատրաստուելով՝ նաւարանի վարպետ եւ այլ շոգենաւ-

ներու մէջ մեքենապետ լինելու։ Նաւարանէն քիչ վեր՝ բարձրաւանդակի վրայ՝ Սեւ ծովու նաւատորմղին նախկին հրամանատար Լազարեվ ծովապետին արձանը կը բարձրանայ։

Սեւաստոպոլի հիմնարկութիւնը շատ հին չէ, եւ այն ալ շնորհիւ իր աննման նաւահանգըստին է եղած։ Երբ 1783ին Ռուսները Ղրիմ վերջնականապէս գրաւեցին, նաւահանգստին ներքին ծայրը միայն Թաթարաց գեղ մի կար աննշան, եւ վիճակին արժանի կոչմամբ՝ Էխթիյար (ծեր) ասուած. բայց նաւահանգիստն այնպիսի էր՝ որ յաղթականաց ուշադրութենէն չէր կրնար վրիպիլ. եւ ահա հետեւեալ տարին Կատարինէ Բ. կայսրուհին յատուկ հրովարտակով կը հրամայէր "Թաթարական Ախթիյար գիւղին տեղ՝ զինուորական նաւահանգիստ կառուցանել, ծովապետութեամբ, նաւարանով եւ ամրութիւններով.„ եւ ժամանակին ոգւոյն հետեւելով դասական անուամբ կը կնքէր զայն՝ — Սեբաստոպոլ,[1] թէեւ մինչեւ 1825 նորակառոյց քաղաքն դեռ իր Էխթիյար անունը կը կրէր։ 1804ին Սեւաստոպոլ Սեւ ծովու նաւատորմղին գլխաւոր նաւահանգիստն եղաւ, եւ 1826ին քաղաքի եւ նաւահանգստի ամրութիւններուն մեծ ոյժ տրուելով, այն ժամանակէն սկսաւ հետզհետէ ծաղկիլ եւ աճիլ։ Զարգացման վերին կէտն էր հասեր՝ երբ 1855ին պաշարումն ու ռմբակոծութիւնը ծաղկեալ քաղաքն աւերակաց կոյտ դարձուցին։ Այնուհետեւ թէպէտ Սեւաստոպոլի կըրկին շինութիւնն եռանդեամբ յառաջ տարուեցաւ, բայց՝ ինչպէս յիշեցինք՝ աւերակներուն թողած յիշատակները դեռ թարմ են մնացած, մանաւանդ շրջակայից վրայ։ Այսու ամենայնիւ Սեւ-

[1] Յունական բառ. որ կը նշանակէ Մեծափառ քաղաք։ Սեւ ծովու եզերաց վրայ կայ արդէն հին յունական քաղաք մի նոյն անուամբ, բայց ոչ այստեղ, ինչպէս գուցէ սխալմամբ կարծեր են հիմնադիրներն, այլ Սուխումի մօտ։

տոպոլ իր այժեան վիճակին մէջ ալ՝ իւր նաւահանգստին դիրքը շնորհիւ շատ գեղեցիկ քաղաք է, եւ կարեւոր՝ իբրեւ պատերազմական ծովային նաւահանգիստ, որ երկրորդն է Սեւ ծովու վրայ՝ Օդէսայէն վերջը։ Քաղաքն այժմ 16 հազար բնակիչ ունի, որոց մէջ Հայոց թիւը 500ի հազիւ կը հասնի, մեծաւ մասամբ եկուորներ, որոնք քահանայ եւ եկեղեցի չունին, եւ թէ այստեղի, թէ Եալթայի սակաւաթիւ Հայերը՝ Եւպատորիայի քահանան է որ կը հովուէ։

Սեւաստոպոլ՝ երկաթուղւով կապուած է Օդէսայի եւ միւս գծերու հետ, եւ Ռուսիոյ ներքին նահանգներէն, նոյն իսկ մայրաքաղաքներէն Կաւկասիա եկողներու համար՝ ընտրելի է ուղղակի Սեւաստոպոլի վրայէն գալ քան Օդէսայի, իբրեւ աւելի կարճ ճանապարհ։

Սեւաստոպոլի փողոցներուն վրայ ակամայ յիշեցի Կ. Պոլսոյ Եիւքսէք-գալտըրըմը։ Այստեղ ոչ թէ մէկ այլ տասնեակներով կան այնպիսի «գալտըրըմներ» թէեւ ոչ այնչափ «եիւքսէք» (բարձր), բայց քալողին դարձեալ զգալի։ Ամփիթէատրի ձեւով շինուած քաղաքն ուրիշ կերպ ալ չէր կրնար վարուիլ իր բնակիչները ծովեզերքի հարթութենէն մինչեւ վերին բարձրաւանդակները հանելու համար, եւ տեղացիք փիլիսոփայական անտարբերութեամբ կ՚իջնեն ու կ՚ելլեն շարունակ այս աստիճանաւոր դարվէրներէն։

Բուլվարէն նաւամատոյց անցայ Սեւաստոպոլի յաղթական կամարին տակէն։ Այս «Յաղթական կամար» կոչածս՝ երկու կարգ սիւներու վրայ հաստատուած կամար մի է, որու ճակատին վրայ կը կարդացուի 1846 թուականը։ Այս կամարը «Կոմսի նաւամատոյց» կը կոչուի, ի յիշատակ Վոյնովիչ կոմսին, որ երբեմն Սեւ ծովու նաւատորմղին հրամանատարն է եղեր։

Թողլով Սեւաստոպոլն իր աւերակներովն, իր նաւարանովն եւ ծովեզերեայ գեղեցիկ շէնքերովն ու փողոցներովը՝ մտայ նաւ։ Բուլվարէն կը հասնի զինուորական երաժշտութեան ձայնն, ու կը խառնուի մեր շոգենաւի սուլոցին. ապա մեքենաները կը մտնեն շարժման մէջ, եւ մենք կը սկսինք կամաց կամաց մօտենալ ծովային եւ ցամաքային ամրութիւններուն։ Ցամաքի մարտկոցներն եւ ծովու զրահաւորներն անտարբեր աչօք կը դիտեն զմեզ՝ իւր ուժոյն վստահ եղողի յատուկ գոռոզութեամբ, եւ մենք բնականաբար առանց զանոնք գրգռելու կը սահինք դէպ ի բաց ծով։ Օդը փառաւոր է. պայծառ աստեղազարդ երկնից վրայէն՝ գիշերային թագուհին իր մեղմ լոյսը կը սփռէ ջրեղէն դաշտին վրայ։ Մէկ կողմէն Սեւաստոպոլի հետզհետէ հեռացող լոյսերն, եւ միւս կողմէն՝ խաղաղիկ ահագին տարածութեան վրայ փայփլացող լուսնի ճառագայթները դիտելով մնացինք նաւայարկին վրայ՝ մինչեւ որ ծովային թեթեւ զեփիւռն եկաւ ծանրացաւ փափկօրէն մեր արտեւանանց վրայ, եւ հանգստեան պէտքն զգացուց մեզի։

---

## ԺԲ.

## ԴԷՊ Ի ՕԴԷՍԱ

Սեւաստոպոլէն մինչեւ Օդէսա փոքրիկ քաղաք մի եւս կայ՝ Եւպատորիա, ըստ Տաճկաց Գէօզլէվէ, զոր Ռուսերը շիներ են Կոզլով անուամբ, որ այնպէս ալ կը յիշուի ժողովրդեան մէջ։ Եւպատորիա խեղճուկ փոքր քաղաք է, 8000 բնակչով, որոնց մի փոքր մասը հայ է, որ ունի այստեղ եկեղեցի եւ ծխական դպրոց։ Բնակիչներու մեծ մասը Կարաիմ են, որոնց գլխաւոր Խախամն այստեղ հաստատած է իր իշխանութեան կենդրոնը։ Թէ արտաքին եւ թէ ներքին տեսքովն՝ Եւպատորիա ոչինչ ուշադրութեան արժանի է, բաց ի թաթա-

բակյան մզկիթէն, որ շինուած է 1552ին, նմանողութեամբ Կ. Պոլսոյ Այիա Սոֆիային, եւ ըստ այնմ ալ շատ գեղեցիկ ճարտարապետութեամբ կառուցուած. բայց մինարէները՝ սաստիկ հովէն վերջին ժամանակ ինկեր են գետին: Քաղաքին գլխաւոր առեւտրի նիւթն է աղն որ մերձակայ աղային լճերէն կը հանուի տարեկան 16 միլիոն փութէն աւելի: Այս առեւտրով զբաղող՝ գլխաւորաբար Քարաիմներն եւ Յոյներն են: Գէօզլէվէ Տաճկաց իշխանութեան ժամանակ աւելի էր ծաղկած, եւ կը ծառայէր իբր կենդրոն վաճառահանութեան եւ վաճառաբերութեան՝ Խրիմի որոշ մի մասին համար: Բայց 1736ին ռուսական արշաւանքը զայն աւերակ է դարձուցած եւ դարուս կիսէն ետքը միայն սկսած է քիչ քիչ նորոգուիլ, բայց մեծ ապագայ չի խոստանար՝ քանի որ Սեւաստոպոլի եւ Օդէսայի նման հզօր դրացիներ ունի:[1]

---

1 Եւպատորիայէն 19 վերստ հեռու դէպ ի Սիմֆերոպոլ՝ կը գտնուին նշանաւոր՝ Սակիի տղմաջրոյ հանքային ճախինները: Սակիի ծովային լճի ջուրն, յունիս, յուլիս եւ օգոստոս ամիսներուն՝ կը շոգիանայ արեւուն սաստիկ ջերմութենէն, եւ ափունքէն ներս կը քաշուի կէս քիլոմէտր տեղ, երբեմն ալ աւելի: Այս ջրազուրկ ափանց ցեխն է ահա, որ ծանօթ է տղմաջրոյ փէղմ անուամբ, եւ ուր ամէն կողմէն կը թափուին բազմաթիւ հիւանդներ: Այս տիղմը շատ սեւ է, կակուղ եւ թանձր, եւ կը յանձնարարուի մանաւանդ յօդացաւի դէմ եւ անկէ յառաջ եկած ձեռքի եւ ոտքի կաթուածահարութեան, խոյլքի (scrofules) եւ խոյլքէն ու syphilisէն յառաջ եկած վէրքերու եւ պալարներու, դժուար մարսողութեան, ինչպէս նաեւ չափազանց գիրութեան դէմ. եւ հիւանդներուն մեծ մասը կատարեալ գոհութեամբ կը հեռանան, թէեւ բնակարանի եւ ռահասարակ տեղական կենաց անյարմարութիւնները զիրենք մեծապէս տժգոհ կը թողուն: Հիւանդները՝ յուլիս եւ օգոստոս ամիսներու մէջ, լճին այս ջրազուրկ եզերքին վրայ իրենց համար փոս կը փորեն՝ որ մինչեւ իրենց կէս մէջքը հասնի, եւ այն փոսին մէջ՝ բոլորտիքը տիղմով լաւ պատած, ներմնուած կը մնան 10 վայրկեանէն մինչեւ 2 ժամ, բժշկի որոշման համեմատ. տիղմէն ելլելէն ետքը հիւանդը կը լուացընեն լճի աղի ջրով, եւ ապա կը պառկեցընեն անկողին, ուր 2 ժամու չափ մնալով սաստիկ քրտինք կու գայ: Բժիշկներու խորհրդին համաձայն՝ հիւանդն ըստ իր տկարութեան, օրը մէջ 3էն

Սեւաստոպոլէն մինչեւ Եւպատորիա ծովը ողողնաձեւ երկայն խորշ մը ձեւացուցած է, որու ակիզբն է Եւպատորիա. եւ այս խորշն այնուհետեւ բացուելով՝ տեղի կու տայ Տարխանկուտի Հրուանդանին, որմէ անդին շոգենաւն այլ եւս կանգ չ'առներ եւ ուղղակի կը դիմէ յՕդէսա։

Ես հանգիստ քնած էի, երբ շոգենաւը սահեր է Տարխանկուտի առջեւէն, ետին թողլով Խրիմը։

Առաւօտն երբ արթնցայ՝ առաջին գործս եղաւ վերնայարկն ելլել՝ որ իմանամ թէ ուր ենք եւ թէ շատ ճանապարհ ունինք դեռ մինչեւ Օդէսա։ Ինձմէ զատ երեք հոգի եւս կային այնտեղ, որոնց մէջ էր մեր նաւի հրամանատարը։ Զիս որ տեսաւ նաւապետը, մօտեցաւ քովս եւ թեւն ուսիս վրայ դնելով՝ Պարոն, ըսաւ, դուք որ այնչափ հետաքըրքիր էիք այս ծովեզերքին, շարունակ ուշի ուշով դիտելով եւ աջ ու ձախ հարցումներ ընելով, երեւակայեցէք որ ձեր խոր քնոյն մէջ. մենք կատարեալ հանդարտութեամբ անցանք այնպիսի եզերքէ որ նաւաստեաց մէջ "անիծեալ տեղի" տխուր կոչումն առած է, եւ Սեւ ծովու ամենէն վտանգաւոր տեղերէն մէկը կը համարուի։

— Եւ ո՞րն է այն տեղը, Պր. Նաւապետ։

— Այն է՝ Տարխանկուտի Հրուանդանը, զոր մենք կէս գիշերին անցանք։ Այստեղ՝ Հրուանդանին ծայրը՝ մեծ փարոս մի կայ, եւ ճիշդ այն փարոսին քով քանի՜ քանի՜ շոգենաւներ (ինչպէս Լէճօզիէ, Վէսթա եւ այլն,) եւ առագաստաւոր նաւեր են ընկղմած։[1]

---

մինչեւ 15 անգամ կ'ընդունի իր անձին վրայ այս տղմային կեղեւը։

Այս առողջարար տիղմերն անծանօթ չեն նաեւ Եւրոպայի։

1 Յետագայ ահռելի արկածը կ'ապացուցանէ թէ որքան իրաւացի էր Տարխանկուտի Հրուանդանին "անիծեալ տեղի" անունը։ 1894 Յունիսի 27ի գիշերն ճիշդ այս-

Ցարխանկում՝ այսպիսի անհախանձելի համբաւ ունենալէն վերջն ալ դեռ ամէն օր կը տեսնէ բազմաթիւ բազմազան նաւերու անցուդարձն իւր «սեւ-քթին» առջեւէն, ինչպէս կը կոչեն Թաթարներն եւ Նաւաստները (Կարա բուրուն):

Այլ եւս տեղ չունինք հանդիպելու, եւ նաւն ուրախ ուրախ եւ արագ կը դիմէ դէպ ի Օդէսա, ճիշդ այնպէս ինչպէս որ ձին կ՚երագէ՝ երբ իր բնակարանին հոտն առնու հեռուանց:

Սեղանայարդարի տկարաձայն զանգակն հնչեց եւ մենք վերջին անգամ կը հաւաքուէինք սեղա-

տեղ, Իտալական «Կոլումբիա» եւ ռուսական «Վլադիմիր» շոգենաւներն իրար բախեցան, Կոլումբիա իր ցռուկը մխեց Վլադիմիրի կողքը: Երբ իտալական նաւն ետ քաշուեցաւ, «Վլադիմիրի» մեքենական բաժինն սկսած էր արդէն ջուր առնել, եւ 1½ ժամէն ռուս շոգենաւն ընկղմեցաւ: Ճանապարհորդները քնէն արթնցած՝ անմեկնելի շփոթութեան մէջ՝ ինկան ծով: Իրենց մի մասն ազատեց Կոլումբիա, միւս մասն ապաւինեցաւ նոյն ընկերութեան Սինէուս շոգենաւուն, որ դժբախտ արկածէն ետքը հասաւ. բայց 70 հոգի խեղդուեցաւ: Այն ժամանակ ամբողջ Ռուսաստանի վրայ սոսկալի տպաւորութիւն գործեց այս արկածն՝ եւ իրաւամբ սաստիկ յարձակումներ եղան ռուսական շոգենաւաց ընկերութեան վրայ, թէ գոհացուցիչ կազմակերպութիւն չունի իր նաւերուն վրայ. եւ բախման գլխաւոր յանցաւորը կը նկատուէր Վլադիմիրի նաւապետը, որ սխալ ուղղութիւն էր տուած իր նաւին, այսինքն Կոլումբիային իր վրայ գալը տեսնելէն վերջը՝ փոխանակ դէպ ի աջ ուղղելու իր նաւն, ինչպէս կը պահանջէ ծովային օրէնքն եւ ինչպէս արեր էր Կոլումբիայի նաւապետը, դէպ ի ձախ էր տուեր: Կոլումբիայի նաւապետն ալ յանցաւոր կը համարուէր այնու որ բաւական չէ աշխատած Վլադիմիրի նաւաբեկեալներն ազատելու: Օդէսայի նահանգական դատարանը չորս չորս ամսոյ բանտարկութեան դատապարտեց երկու նաւապետները հաւասարապէս յանցաւոր դատելով երկուքն ալ. խեղդուածներուն ազգականացն ալ պահանջմամբ՝ դատարանը վճռեց յօգուտ իրենց՝ 270 հազար րուբլի, 230 հազարը ռուսական ընկերութենէն եւ 40 հազարն իտալական նաւուն տէրերէն: Բայց պարագայից զուգադիպութեամբ՝ երկու նաւապետներն ալ Նիկոլա կայսեր ամուսնութեան հրատարակուած մանիֆեստին համաձայն, որ զանազան շնորհներ կ՚անէր նաեւ այս կարգի դատապարտեալներուն, թէ ռուս նաւապետն եւ թէ իտալացին իրենց բանտարկութեան վճռէն ազատ արձակուեցան: Իսկ այն դժբախտ 70 հոգին զոհ գնացին երկու նաւապետներուն սխալմանն եւ անհոգութեան՝ անդառնալի կերպով:

նին շուրջը։ Ծովը թէպէտ իր փոքրիկ մութ կապոյտ ալեացը վրայ դարձեալ ջանքեր կը ցուցընէր մեր նաւն օրօրելու, բայց ուշադրութիւն դարձնող չկար, եւ ամէնքս ալ խմբովին բոլորեցանք այնտեղ՝ իւրաքանչիւր իր թէյին կամ կաթով խահուէին զբաղած։ Խօսակցութեան գլխաւորնիւթն էր դեղֆին ձուկն, որ նախընթաց օրն եւ այն առաւօտ երամովին ուղեկցած էր եւ դեռ կ՚ուղեկցէր մեզ, երբեմն կէս մէջքը ջրէն վեր, երբեմն միայն գլուխը, թէեւ իր սեւ մարմինը միշտ կը տեսնուէր թափանցիկ ջրոյն մէջ եւ շարունակ ոստումներով կը թռչէր դուրս եւ դարձեալ մէջքը կորացուցած կը նետուէր ի ծով, կարծես առանձին հաճոյք կը զգար իր խաղերը մեզ ցոյց տալով։ Հոն կը պատմէին թէ դեղփինն առագաստաւոր նաւի հետ լողալ շատ չի սիրեր, եւ երբ անոր ընկերացած ժամանակ յանկարծ շոգենաւ տեսնէ, իսկոյն կը թողու եւ կը վազէ շոգենաւուն քով։ Նաւապետին օգնականը կը պատմէր թէ դեղփինը շատ զգայուն սիրտ ունի, եւ եթէ զինքը վիրաւորեն՝ — ի հարկէ ոչ խօսքով, — եւ նոյն իսկ եթէ միայն ծեծեն՝ կը խռովի եւ մինչեւ աղիողորմ արտասուք ալ կը սկսի թափել աչքերէն։

Երբ նաւայարկն ելանք՝ օդին մէջ փոփոխութիւն էր մտած։ Քիչ յառաջուան բաց, կապոյտ երկնից երեսին վրայ եռեւէ եռեւ կը սուրային թեթեւ ամպեր, բամբակի նման ճերմակ։ Կամաց կամաց այս ամպերը խտացան, վարագոյր ձգեցին արեւուն զուարթ երեսին վրայ. չանցաւ կէս ժամ՝ եւ ահա նախ հատիկ հատիկ, ապա աւելի արագ, անձրեւի կաթիլները սկսան մեր նաւը ցօղել։ Իսկոյն նաւաստիներն առագաստներով ծածկեցին նաւայարկն, եւ մենք՝ թրջելէն ապահով՝ անխռով աչօք սկսանք դիտել այս անակնկալ անձրեւը։ Զմեզ շրջապատող ջրային անհուն անապատը կը ծփար, կը տատանէր եւ իր ներքին անհանգստու-

թիւնը մեղմ բայց շարունակեալ մռնչիւնով միայն
կը յայտնէր։ Անձրեւի իրար յաջորդող կաթիլները
շըլթայօրէն վար թափուելով՝ անողորմաբար կը
լուծէին եւ կը ցրուէին կոհակներու գլխին գոյա-
ցող օղակ օղակ փրփուրները։ Իսկ մեր շրջուն ժա-
մանակաւոր բնակարանն արբածի նման մէկ կողմէն
միւս կողմը օրօրուելով հանդերձ, աներկիւղ եւ
վստահ ուղղութեամբ շարունակ կը յառաջանար
առջեւը պարզուած հեղուկ եւ սահուն անհուն ճա-
նապարհով։ Նաւայարկի ծածկութին տակ մենք
անվրդով կը շարունակէինք նստած ծխել եւ խօ-
սակցիլ։ Նոյնպիսի ծածկոյթի տակ էին ապաս-
տանած նաեւ երրորդ կարգի ուղեւորներու մի մասը՝
մինչ մեծագոյն մասը երկրորդ յարկին՝ նկուղի
նման բաժանմունքին մէջ իրար վրայ շարուած կամ
իրենց իրեղէններուն մէջ թաղուած փիլիսոփայօրէն
կը համբերէին խեղդուկ օդին եւ այլ զանազան
անհանգստութեանց, մանաւանդ որ մէկ ժամէն
պիտի հասնէր արդէն ամէնաւս ուղեւորութեան
վերջնակէտն եւ բոլորս պիտի ազատէինք ծովի հո-
վի եւ անձրեւի քմահաճոյքներէն։

Առաջին կարգի ուղեւորներու մի խումբը՝
չորս պետական պաշտօնեայք՝ դահլիճին կից խա-
ղարանի կանաչ սեղանին շուրջը բոլորած վինթ կը
խաղային եռանդով, արտաքին աշխարհի բովան-
դակ անցուդարձին անզգայ։ Իսկ նաւապետին օգ-
նականը՝ երկայն անթափանցիկ վերարկուն կռնակը
նետած՝ անհանգիստ շտապաւ կը քալէր նաւուն
բարձր դիտարանին վրայ, երբեմն երբեմն աչքերը
դարձընելով այն կողմն, ուր պիտի տեսնէր ամէնուս
անհամբերութեամբ սպասած նաւահանգիստը։

Անձրեւը դադրեցաւ այն ժամանակ՝ երբ հե-
ռուէն երեւցաւ Օդէսայի ծովեզերքն իր առջեւ
տարածուած սքանչելի նաւահանգստովը։ Ծած-
կոյթները վերցան. մենք ազատ շունչ առինք եւ
շոգենաւուն երկարատեւ սուլոցէն առաջնորդուած՝

կամաց կամաց մօտեցանք Ռուսական շոգենաւաց ընկերութեան նաւամատոյցը, ուր արդէն մեծ բազմութիւն էր հաւաքուած։ Բանուորներն եւ նաւաստիներն աղմկով հաստատեցին սանդուխները նաւէն դէպ ի նաւամատոյց, եւ մենք արդէն Օդէսա էինք։

---

## ԺԹ.

## ՕԴԷՍԱ

Պարզեցաւ մեր առջեւ Ռուսաստանի ամենէն գեղեցիկ քաղաքներէն մէկը, կամ ինչպէս սովորաբար կ'անուանեն, հարաւի մայրաքաղաքը՝ Օդէսա։ Իր գեղանկար դիրքովը եւ ծովային բազմազան տեսարաններովը Օդէսան՝ ճանապարհորդին վրայ նոյն իսկ առաջին անգամէն, դեռ ներս չմտած, շատ հաճելի տպաւորութիւն կը գործէ։

Շոգենաւը հանեց զմեզ ռուս. նաւական ընկերութեան նաւամատոյցին վրայ, ուր բազմաթիւ միաձի եւ երկձի այլեւայլ կառքեր անհամբեր կը սպասէին յաճախորդի։ Առաջին նայուածքով կը տեսնուէր, որ Օդէսա՝ գերազանցապէս առեւտրական քաղաք էր, որովհետեւ իր լաւագոյն մասը, ընդարձակ ծովեզերքը, կատարելապէս յատկացած է վաճառականութեան։ Շարք շարք նաւամատոյցներ, նաւահանգիստներ եւ ծովեզերեայ ու ծովամիջի քարափունք, բոլորն ալ գրաւուած էին ծովու կողմէն ամէն տեսակ նաւերով եւ ցամաքէն երկաթուղւոյ կառքերով, շտեմարաններով ու գործարաններով եւ զանազան բեռներով։

Հրաժեշտ տալով Մ. Ի. Կ.ին, առի իրեղէններս եւ նստայ ամենէն յառաջ դիմացս ելած կառքը, որ մէկ քառորդէն բերաւ զիս կենդրոնական պանդոկը։ Պանդոկապետը լաւ սենեակ մի յատկացուց ինձ, փողոցի վրայ նայող, գին նշանակելով օրական 2 ր. 50 կ։ Շատ նշանաւոր դիրք ունէր

այս պանդոկը. մէկ կողմը թէատրոն, միւս կողմը ոստիկանութիւն, դիմացն ալ ռուսական մայր եկեղեցի, — երեք իրարմէ բոլորովին տարբեր հիմնարկութիւններ։

Քաղաքին բոլորովին անծանօթ՝ ես իսկոյն դիմեցի այնտեղ բնակող Կ. պոլսեցի Գ. եւ Օ. Ա—ճեան եղբարց տունը, որոնք քաղաքին ընտրելագոյն՝ Դէրիպասովսկի փողոցին վրայ սեպհական կալուածներ ունէին եւ անոնց եկամուտով կ'ապրէին։ Ես Ա—ճեան եղբարց հետ չորս օր ամբողջ՝ բանուգործ արի ինձ Օդէսա շուրջ գալ եւ ուսումնասիրել — որոնց կը յայտնեմ այստեղ իմ անկեղծ շնորհակալութիւնս իրենց հիւրասիրութեան եւ օգնութեան համար։

Օդէսա իր մեծութեամբն Ռուսաստանի մէջ՝ չորրորդ տեղը կը բռնէ, եւ կու գայ Պետերբուրգէն, Մոսկուայէն եւ Վարշավայէն վերջը. բայց իր մաքրութեամբը, կանոնաւորութեամբն եւ գեղեցկութեամբն եւ ոչ մէկ քաղաքէ վար կը մնայ. աւելի եւրոպական քաղաքի կը նմանի՝ քան ռուսականի։

Փողոցները մեծ մասով լայն են, ուղիղ եւ աւելի կանոնաւոր քան տեղ տեղ նոյն իսկ Պետերբուրգինները։ Մէջտեղն ամբողջ 5 սաժէն (10 մետր) սալայատակ է ընտիր սեւ գրանիտէ եւ երկու կողմն ալ ընդարձակ ճեմելիք կայ, նոյնպէս կարգաւորեալ սալայատակ եւ երկու կարգ ալ հովանաւոր ծառեր, որոնց շնորհիւ Օդէսայի գրեթէ բոլոր փողոցները բուլվարի երեւոյթ են առած։ Գիշերային լուսավառութիւնը դեռ եւս գազով է, բայց տեղ տեղ ելեկտրական լոյսն արդէն կ'իշխէ, եւ գուցէ մօտ ապագայի մէջ աւելի ալ ընդարձակի։

Օդէսայի փողոցներուն առանձին յատկութիւններէն մէկն ալ այս է՝ որ տեղ տեղ կամուրջներով իրարու կապուած են։ Այս կամուրջներուն տակէն ոչ թէ ջուր կը վազէ, այլ նոյնպէս կանո-

նաւոր ցամաքային անցուղարձ կայ։ Ինչպէս կ'երեւ-
այ՝ քաղաքին դէպ ի ծովեզերք տանող մասը խա-
չաձեւ կտրուած է երկու ձորով, կամ խրամատով,
զորոնք իրարու հետ միացընելու եւ փողոցներուն
շարունակութիւնը չընդհատելու համար հարկա-
դրուած են այս նորօրինակ կամուրջները կառու-
ցանելու, որ հինգ են թուով։

Ճաշէն վերջ, իրիկուան դէմ, Պր. Ա—ճեան
տարաւ զիս Օդեսայի զբօսավայրերը։ Գնացինք նախ
ծովափնեայ "Նիկոլայեվսկի" կոչուած բուլվարը,
որ ծովեզերքէն բարձր է կանգնած։ Այստեղէն
նայելով ամբողջ ծովն ու նաւահանգիստը շատ գե-
ղեցիկ տեսարան կ'ընծայեն։ Երեք կարգ ծառուղի
ունի, որոնց մէջտեղինը բաւական ընդարձակ է եւ
իր լայնատերեւ սօսիները (platane) լայնարձակ շու-
քով կը հովանաւորեն իրենց արմատին քովերն
հաստատուած բազմաթիւ նստարանները, որոնք
միշտ գրաւուած են զբօսողներով։ Ահագին երկար
բուլվարը նեղ կու գար այստեղ ճեմող մեծ բազ-
մութեան, որ մէկ կողմէն երաժշտութեան եւ միւս
կողմէն զանազան զուարճացուցիչ ըմպելիքներու ընկե-
րակցութեամբ ինքնագոհ կը զբօսնուր եւ կը հան-
գստանար։ — Բուլվարին մէջտեղը կանգնած է քա-
ղաքին հիմնադիր Ռիշլիէօ (Richelieu) դքսին ար-
ձանը, իսկ մուտքին վրայ՝ Ռուսաց մեծ բանաստեղծ
Պուշկինինը։ Ահեղ միանգամայն եւ հաճելի
տպաւորութիւն կը գործէ զբօսողի վրայ այն ահա-
գին սանդուղն, որ կառուցուած է բուլվարէն մին-
չեւ բուն ծովեզերք։ Այս քարաշէն հսկայ սան-
դուղը 200 աստիճան ունի, 10 կարգի բաժնուած
եւ միակ է իր տեսակին մէջ՝ ամբողջ Ռուսաստան։

Ոչինչ նուազ եւ ինձ համար աւելի ալ դիւ-
րեկան էր միւս բուլվարը, Ալէքսանդրովսկի պարկը
(parc) որ իբրեւ նոր հաստատութիւն՝ չունի այն
բոլոր յարմարութիւններն որ առաջնոյն մէջ կան
առատութեամբ. ինչպէս՝ պատշաճաւոր լուսավա-

ռութիւն եւ կարգաւորութիւն, բայց իր բնական դիրքովը եւ բուսականութեան ճոխութեամբը կը գերազանցէ առաջինը։ Այստեղէն ծովային հորիզոնն աւելի մեծ շրջանակ ունի եւ տեսարաններն աւելի ընդարձակ են։ — Անշուշտ ապագային՝ այս այգին աւելի սիրելի պիտի ըլլայ Օդէսացիներուն։ Ալեքսանդրեան պարկին մէջ կանգնած է Օդէսայի ամենէն գեղեցիկ յիշատակարանը՝ Աղեքսանդր Բ. կայսեր արձանը։ Յիշատակարանը հաստատուած է բարձրադիր բլրոյ վրայ, ուր կայսրն 1875ին անձամբ կեցած եւ առաջին ծառը տնկած է, կաղնի մի՝ որ մինչեւ հիմայ կանգուն է։ Յիշատակարանը մեծ կլորակ սիւն է ընդարձակ պատուանդանով, ուր կ՚ելլուի չորս կողմէն՝ կարմիր գրանիտ աստիճաններէ շինուած սանդղով։

Պատուանդանի մէկ երեսին վրայ կան՝ բրոնզեայ թագ, որու տակը Աղեքս. Բ.ի մենագրերը ճերմակ մարմարէ, եւ ոսկի շրջանակի մէջ, եւ այս՝ "Աղեքսանդր Բ.ի երախտագէտ Օդէսա" արձանագրութիւնը։ Այս տախտակին տակը դրուած է Օդէսայի քաղաքական զինանշանը՝ (երկգլուխ արծիւ՝ թագով եւ ներքեւը կրկին խարիսխ)։ Յիշատակարանին գագաթը մեծ խաչ կայ հաստատուած՝ մութ բրոնզէ։ — Բովանդակ յիշատակարանը շատ շքեղ կազմուած է, այնչափ բարձր է՝ որ ծովէն ալ կ՚երեւայ քանի մի մղոն հեռաւորութեամբ։

Բաց ի վերեւ յիշուածներէն երկու ուրիշ յիշատակարան ալ ունի Օդէսա, մէկը Վորոնցով իշխանին որ Օդէսայի կուսակալն էր 1823—1854, եւ միւսը Րադէցկի զօրապետին, վերջին ռուս-տաճկական պատերազմի ժամանակ Շիպկայի դիւցազնին։

Երեկոյին գնացինք թէատրոն, ուր այն միջոցին Մոսկուայի կայսերական թատեր. խմբին դերասանները կը խաղային։

Օդէսայի ամենամեծ զարդն եւ պարծանքն է իր թէատրոնը, որ ամբողջ Ռուսաստանի մէջ մեծ հռչակ կը վայելէ հրաշակերտ շինութեամբն ու կարգաւորութեամբը։ — Արտաքին ճակատը իտա-լական վերածնութեան դրոշմը կը կրէ, եւ առջեւէն կիսաբոլոր ձեւով բաց պատշգամբներ ունի, որոնք լոյս եւ մաքուր օդ կը բերեն թէատրոնի ֆօայէն (foyer)։ Թէատրոնին մուտքը վրայ գեղարուեստական արձաններ կան, որոնց ամենէն մեծն եւ սիրունն է թատերական Մուսայի խումբը, որ կը ներկայացընէ Մուսան՝ չորս յովազէ լծուած կառքի վրայ, երկու քովերը՝ Հանճարները, իսկ պատուանդանին վրայ Երաժշտութիւնն եւ Պարը պատկերացընող խմբեր։ Այստեղ դրուած են նաեւ Ռուսաց նշանաւոր թատերական հեղինակներուն կիսարձանները, որ են՝ Գրիբոյեդով, Պուշկին, Գոգոլ եւ Գլինկա երաժիշտը։ Շատ գեղեցիկ է մանաւանդ թէատրոնի ներքին մասը, ուր ամենայն ինչ շքեղ է, զարդարուն եւ կանոնաւոր. օթեակներու (loge) ճակատներն ոսկեզօծած, աթոռները՝ թաւիշ եւ ատլաս (satin) պատած։

Առաստաղը նկարուած են ընտիր պատկերներ, որոնց նիւթ առնուած է Շէքսպիրի եղերերգութիւններէն եւ ոսկի զարդարանքներովն աչքերը կը խտղտէ։ Առաստաղէն կախուած է վիթխարի բրոնզեայ ջահ, որ կը վառի ելեկտրական լուսով։ Բաց ի այս կեդրոնական ջահէն, կան ուրիշ անթիւ փոքրիկ լապտերներ ալ ելեկտրական լուսով։ Շքեղ է նաեւ թէատրոնին բեմը, որու առջեւ խոր ինկած է՝ հանդիսատեսներու աչքէն հեռու՝ երաժշտաց խումբը։ Թէատրոնը կատարելապէս ապահովուած է նաեւ հրդեհի դէմ։ Բաց ի բազմաթիւ մուտք ու ելքերէ (320 դուռ), ջրհաններէ եւ այլ միջոցներէ, յատուկ ուշադրութիւն եղած է բեմին վրայ, ուսկից շատ անգամ կը ծագի եւ կը տարածուի հրդեհը։ Բեմն անջատուած է քովի

շինութիւններէն անայրելի պատերով, իսկ դահլիճէն՝ կրկին երկաթի վարագուրով, որ հրդեհի ժամանակ իսկոյն վար կ՚իջեցուի. եւ ոչ միայն կրակի այլ եւ մուխի դահլիճը տարածուիլը կը խափանէ ։

Ընդ ամէնը 1590 նստելու տեղ կայ ամբողջ թէատրոնին մէջ։

Թէատրոնն արժեր է քաղաքին՝ ելեկտրական լուսավառութեամբ հանդերձ՝ 1,300.000 րուբլի, որ աւել է 3½ միլիոն ֆրանք։

Բաց ի այս մեծ քաղաքական թէատրոնէն՝ երեք ուրիշ թէատրոն ալ ունի Օդէսա ։ — “Ռուսական թէատրոն„, որ իմ պանդոկիս քովն էր, ինչպէս յիշեցի արդէն ։ Այս թէատրոնը նշանաւոր է եղեր երբեմն, քաղաքականը շինուելէն յառաջ։ “Ռուսական թէատրոնին„ մէջ է, որ Օդէսայի հասարակութիւնը ծափահարած է նշանաւոր արուեստագէտներ, ինչպէս Սարա Բեռնար, Սալվինի, Րոսսի, Բառնաեւ եւայլն. այստեղ է խաղացած նաեւ մեր Ադամեանը, որ ամէն տեղ եւ ամէն ատեն առաջիններուն հետ համահաւասար դիրք է ընդունած ։ -- Այժմ այստեղ միայն թեթեւ օպէրէտի (operette) ներկայացումներ կը տրուին ։ — Միւս երկու թէատրոնները՝ “Նոր„ եւ “Հարմոնեա„ կոչուած աննշան են ։

---

Հետեւեալ օրը՝ տեղւոյն հայ հասարակութեան դրից ու վիճակին տեղեկանալու համար գնացինք Հայոց եկեղեցին եւ քահանային ու քանի մի այլ պարոններու քով։

Օդէսայի Հայոց հովիւը սիրալիր ընդունելութիւն արաւ մեզի։ Գր. քահանայ Խօրասանճեան, ինչպէս ինք պատմեց, բնիկ պոլսեցի է եղեր. 1867ին գալով Օդէսա, այստեղի ծեր երիցուն փեսայացեր է եւ նշանակուեր քահանայ անոր ծուխերուն։

Եկեղեցին թէեւ փոքր է, բայց բաւական սիրուն եւ մանաւանդ շատ մաքուր, յատկութիւն մ՚որ առ հասարակ կը պակսի Ռուսահայոց (մանաւորապէս Կաւկասիոյ) եկեղեցիներուն ...: Եկեղեցւոյն կից երկսեռ դպրոց կայ ծխական, որ այն օրերը գոց էր ամառնային արձակուրդին պատճառաւ. բայց ինչպէս Տէր Գրիգոր պատմեց, աշակերտաց բոլորական թիւը 25ը չէր անցներ. աշակերտուհիք թւով աւելի էին քան աշակերտները. որովհետեւ այս վերջինները մեծաւ մասամբ Ռուսաց դպրոցները կը յաճախեն: Դպրոցն ունէր երկու ուսուցիչ եւ մէկ վարժուհի, որոնցմէ զատ երկու համալսարանական ուսանող ալ յանձն են առեր ձրի դաս տալ շարունակաբար: Այստեղի համալսարանին մէջ 17 հայ ուսանող կար, որոնք ամէնն ալ նուիրուած էին իրաւաբանութեան ճիւղին: —

Հայոց ընդհանուր թիւն 150 տուն է, որ ասել է իբր 1000 հոգի միայն: Եւ այս շատ զարմանալի է, որովհետեւ Օդէսայի պէս վաճառաշահ քաղաքին մէջ, պէտք էր Հայոց աւելի մեծ թուին սպասել: Ասոնք ալ գլխաւորաբար տեղափոխուած էին այստեղ՝ Ակկէրմանէն, Գրիգորուպոլսէն եւ Խրիմէն: Կան նաեւ քանի մի պոլսեցի:

Հայերն այստեղ երկու որոշ դասակարգ կը կազմեն, եւ իրենց զբաղման ճիւղովը գրեթէ միակ են եւ նշանաւոր, ամբողջ Օդէսայի մէջ: Առաջինն կամ բարձր դասակարգը՝ ծխախոտի գործարանատէր է, իսկ երկրորդ կամ հասարակ դասը՝ սափրիչ: Այնպէս որ այստեղ ով որ ընտիր ծխախոտ ուզէ ծխել՝ կը դիմէ հայ գործարանը, իսկ ով որ պէտք ունենայ լաւ վարսավիրայի, նոյնպէս կը դիմէ Հայուն: Այս ալ լաւ է գոնէ, որ այս երկու ճիւղը՝ գրեթէ բացառապէս կարողացեր են իրենք գրաւել: Ըստ այսմ, 150 տուն Հայոցմէ՝ չորսը ծխախոտի գործարանատէր գերդաստաններ են, եւ 90ը սափրիչ: Մնացածներէն 30 տուն առօրեայ ապրուստի

կարօտ են, եւ միւսներն առեւտրականք եւ գոր-
ծակատարք։ — Գործարանատէրերն են Պալով
(Պալեան), Ասլանուրով (Աստուածատրեան),
Բաբատաղլի եւ Էտիկով։ Ասոնցմէ՝ Ասլանուրովը՝
եկեղեցւոյ երէցփոխանն էր։

Հայերէն լեզուն, ինչպէս նաեւ բոլոր Խրիմի
եւ Բեսարաբիոյ Հայոց մէջ, կը կաղայ Օդեսայի
մէջ ալ։ Շատեր տեսայ, որոնք իրարու մէջ միայն
ռուսերէն կը խօսէին, ուրիշներ, եւ այն՝ մեծ մասը՝
թաթարերէն. իսկ Արմաւիրցիք՝ չէրքէզերէն։ Եւ
որտեղէն ու ինչպիսի հանգամանաց շնորհիւ այն
անճոռնի լեզուն այնչափ հզօր արմատ է ձգեր Ար-
մաւիրցւոց մէջ, — անհասկանալի է։ Խեղճ հայ-
երէնը՝ մինչեւ անգամ չէրքէզերէնին ալ ստիպուեր
է տեղի տալ։ Բայց ինչպէս նկատեցի առ հասա-
րակ, այս լեզուները, թաթարերէնն ու չէրքէզէ-
րէնը՝ այր մարդիկ են աւելի գործածողները, իսկ
կանայք, եթէ փոքր ինչ ուսում ունին, (եւ մեծ
մասն ունին,) անարժան կը համարին խօսիլ ուրիշ
լեզուաւ, բաց ի ռուսերէնէ։ — Վերջին դէպքե-
րու շնորհիւ միայն, հայ լեզուն սկսած է այս հա-
րուստ հայ գաղթականութեանց մէջ կամաց կա-
մաց աւելի յարգ ունենալ։ Միշտ ստոյգ է, որ
Հայն որչափ աւելի հեռանայ հայրենի հողէն,
նոյնչափ աւելի կը թողու հայրենի աւանդութիւն-
ներն, որոնց մէջ առաջին տուժողը լեզուն է եղած։
Չենք կարող ծածկել, որ Ռուսահայոց այս մասը՝
այսինքն Բեսարաբիոյ եւ Խրիմի հայ գաղթակա-
նութիւններն այն շաւղի մէջ են մտած՝ որ զիրենք
կը տանի ուղղակի յօտարութիւն, որ մասամբ ար-
դէն սկսած է, եւ վաղ թէ ուշ՝ իսպառ կորսուե-
լու վտանգի մէջ են հայութեան համար։ Մէկ
բան միայն կարող էր հզօրապէս առաջքն առնել
այս կորստեան հոսանքին, այն է՝ եթէ հայ ազգին
հայրենի երկրի մէջ, ցեղական, ազգայնական ոյժը
զօրացընող լաւագոյն հանգամանքներ յառաջ

դայլին, եւ այն ժամանակ դաղթական Հայոց մէջ ալ. ազգային ինքնաճանաչութիւնը կրնար մեծ չափ ու կշիռ ստանալ, եւ անոնց եթէ ոչ ընդհանուրը, դէթ մեծագոյն մասը պահել հայութեան համար: — Այս մասին, որչափ տարբերութիւն Հայուն եւ Ցունին մէջ: Ցոյնն եւս փոքր ազգ է, Ցոյնն ալ ցրուած է ամէն կողմ, բայց ամէն տեղ խստիւ կը պահպանէ իր մայրենի լեզուն. բացառութիւններ կան անշուշտ, բայց աննշան: Այն ժամանակ երբ Հայերն առ հասարակ միշտ դէպ ի որեւէ երկրի խորերն են մղուեր, ներս ու ներս եւ միայն վերջերս դէպ ի ծովեզերք կը դառնան, Ցոյներն ի սկզբանէ իրենց բոլոր ոյժը տուեր են ծովեզերքին, իբրեւ ի բնէ ծովեզերեայ ժողովուրդ: Ամբողջ Սեւ ծովու եզերքի թէ ռուսական եւ թէ տաճկական բոլոր քաղաքներուն մէջ կը գտնենք հոծ թուով յոյն գաղթականութիւններ, որոնք տեղւոյն վաճառականութեան մեծ մասն իրենց ձեռքն են անցուցած եւ եռանդեամբ կը շարունակեն պահպանել իրենց լեզուն եւ ցեղական ինքնուրոյնութիւնը:

Այս եւս ունի անշուշտ իր պատմական պատճառները, որով Հայք ստիպուած եղեր են դիմել այնպիսի տեղեր ուր վաստակ եւ յագուրդ կրնան գըտնել. բայց դուրսն ալ դեռ տասնեակ տարիներով թափառեր են այս ու այն կողմ՝ մտնելով աւելի ու աւելի ներսերը, — ընդ հակառակն Ցոյներն որ անհամեմատ լաւագոյն վիճակ ունեցած են ի սկըզբանէ, որոնք երբեմն տէր ալ եղած են Սեւ ծովուն եզերքի մի մասին, ի նկատի են ունեցեր միշտ ոչ թէ նոր բնակավայրեր, ոչ թէ “գլուխը դնելու„ տեղ գտնելու համար, այլ պարզապէս իրենց առեւտրական եւ նիւթական շահերն ընդարձակելու նպատակաւ: Բայց դառնանք մեր ուղեւորական նկարագրութեան:

Կէսօրին Պր. Ա— ճեան զիս տարաւ իր տունն՝ ճաշի: Երկու եղբայրներն ալ՝ թէեւ արդէն բաւ-

ական տարւօք, ամուրի էին մնացեր: Պառաւ խոհարար մ'ունէին, որուն սովորեցուցեր էին եփել այնպիսի կերակուրներ, որոնց վրայ անշուշտ մինչեւ այն ատեն եւ ոչ գաղափար ունէր: Եւ ես քիչ չզարմացայ տեսնելով, որ այն ռուս խոհարարուհին պատրաստեր էր սքանչելի կերպով, պոլսական կերակուրներ եւ յատկապէս Եալանճը տօլմա եւ էնկինար ձէյթով: Նոյն իսկ տապակածն ալ (ֆըրըրըն-մա) պոլսական ձեւով էր. յայտնի կ'երեւար, որ պօլսեցի պարոններն աշխատեր են պահել իրենց ինքնուրոյնութիւնը նաեւ խոհանոցի նկատմամբ: Տանտէրերն կ'ապահովցընէին զիս, որ շատ ռուս բարեկամներ եւս յաճախ առանձին ախորժանօք կու գային ճաշել իրենց քով, պարզապէս իրենց կերակուրները վայելելու համար, բայց կարելի է թէ աւելի՝ համիոխի համար կու գային, որովհետեւ ես ալ կը ճանչնամ բազմաթիւ Ռուսեր, որոնք մեծ յարգանք չեն տածեր յիշեալ կերակուրներու նկատմամբ. վերջապէս ճաշակի խնդիր է այս, որու վրայ վիճելն աւելորդ է: Ճաշէն վերջը՝ սուրճն եւս ալաթուրքա էր պատրաստուած: Փոքր ինչ հանգստանալէ վերջը դուրս ելանք եւ գնացինք Դէրիբասովսկի կոչուած պարտէզը՝ յատկապէս պաղպաղակ ճաշակելու զոր շատ կը գովէր պոլսեցի բարեկամս եւ իրաւունք ալ ունէր իրեն: Անկէ ելանք եւ ահագին պտոյտ մը կատարեցինք ոտօք. գնացինք մինչեւ Մալըյ ֆօնթան (Малый Фонтанъ): Փոքր Աղբիւր, որ քաղաքէն դուրս է եւ զուարճութեան լաւագոյն տեղերէն մէկը կը համարուի: Այս անուամբ կը կոչուի՝ ամարանոցներու մեծ շարք մը, որոնցմէ մէկուն պարտէզը ամփիթէատրոնի ձեւով փռուած է դէպ ի ծովեզերք, ուր շինուած է ճաշարան՝ սրճարան, ծովի մէջ երկընցած բազրիկով մը. ուր նստանք եւ վայելեցինք տեղական գործարանատէր Դուբէանի (անուան վերջաւորութենէն չխաբուիք, Հայ չէ) պաղ գարե-

ջուրը։ Երեկոյ էր արդէն. օրը զովացած. զինուորական երաժշտութիւնը՝ Ռուբինշտէյնի կտորները կը հնչեցնէր, եւ ժողովուրդը պարտիզին մէջ խումբ խումբ ստուար կանաչի դարատափներու (terrasse) եւ ծովեզերքի վրայ խիտ առ խիտ կը ճեմէր։ Խաղաղ ծովուն վրայ՝ զբօսողներու նաւակներ հանդարտ գնացքով զիրար կը կտրէին։ Մինչեւ գիշերուան ժամը 11 մնացինք այնտեղ, ուր ընթրեցինք եւ ապա մեծ բազմութեամբ նստանք վերջին ձիավար երկաթուղին (tramway) եւ մտանք քաղաք։ Փողոցները դեռ լի էին զբօսողներով, որոնք ցորեկուան խիստ տաքութենէն վերջ՝ երկար ատեն զովագին օդ կը շնչէին։ Սրճարանները եւ ճաշարանները առջեւ անթիւ յաճախորդներ նստած էին; ամէն ազգէ եւ դասակարգէ. ամէն լեզու կը խօսուէր, բայց ամէնէն յաճախ լսածս ռուսերէնն, գերմաներէնն ու յունարէնն էր որ կ՚ապացուցանէր թէ շուկան Ռուսաց, Հրէից եւ Յունաց ձեռքն է։ Սովորական, ընտանեկան, շքեղ եւ այլ ամէն ձեւի միաձի եւ երկձի կառքեր անընդհատ անցուդարձ կ՚անէին. ամէն կողմ շարժում կենդանութիւն եւ աղմուկ կը տիրէր։ — Բուն քաղաքին մէջ թէատրոններէ եւ կլուբներէ զատ՝ խմբովին զուարճանալու կը ծառայեն ժողովրդեան, բազմաթիւ café chantantներն որ յաճախ են ամէն տեղ. երգիչներ բայց մանաւանդ երգչուհիներ՝ ռուսական, գաղղիական եւ գերմանական chansonetteներ կը հանդիսացընեն բեմի վրայ եւ այսպիսի տեղերը գրեթէ միշտ լի են։

Երկրորդ օրը կիրակի էր։ Եկեղեցիներու զանգակներն իրենց աղմուկովը լցուցեր էին օդը։ Ծանօթութիւնս կատարեալ անելու համար, պէտք էր եկեղեցեաց եւս այց ելլել որով միանգամայն կարելի էր գաղափար կազմել Օդէսացւոց բարեպաշտութեան եւ մանաւանդ տօնական վիճակին վրայ։ Եւ իրօք այն օրը մէկ եկեղեցիով գոհ չեղայ։ Հայ-

ոց եկեղեցին արդէն տեսած էի, ուստի այցելութիւնս սկսայ կաթողիկեայ եկեղեցիէն։ Այս լատին եկեղեցին դրսէն աննշան կ՚երեւար, բայց ներսը շատ գեղեցիկ է. յատակը մարմարեայ է, պատերն եւ մոյթերը (pilastre) նոյնպէս ճերմակ մարմարի կերպ են յղկուած։ Նշանաւոր է մանաւանդ եկեղեցւոյն երկու կողմէն յառաջացող սեանց շարքը եւ աւագ խորանը իր վերափոխման պատկերովը որ Ռաֆայէլի նկարէն օրինակուած է։ Ուրիշ գեղեցիկ պատկեր մ՚ալ կար Աստուածածնայ, բնագիր ԺԵ. դարու Փիորէնցացի ծանօթ Կարլօ Դոլչէ պատկերահանի։ Ինձ ցոյց տուին նաեւ մարմարեայ մկրտութեան աւազանն, որ ընծայուած է Պիոս Թ.էն։ Եկեղեցւոյ բակին մէջ սեպհական ընդարձակ շինութիւններ կան. որբանոց 60 տղու համար, հիւանդանոց, ծխական ուսումնարան երկսեռ, ուր 500ի չափ մանչ եւ աղջիկ տղաք կ՚ուսանին։ Այնուհետեւ դիմեցի Ռուսաց մայր եկեղեցին, որ իմ բնակարանիս մօտ էր արդէն։ Այս եկեղեցւոյ հիմը դրուած է եղեր միեւնոյն տարին երբ Օդէսա կը հիմնուէր, այսինքն 1794ին. բայց մի եւ նոյն ժամանակ չէ եղած ամբողջ շէնքին կառուցումը. այլ հետզհետէ երեք անգամ յաւելումներ են եղած սկզբնական փոքր շինութեան, եւ այս պատճառաւ եկեղեցւոյս շէնքն այնպիսի դիրք մ՚ունի, որ կարծես մասերն իրարմէ անկախ են։ Բարձր զանգակատուն մ՚ունի, մինչեւ 75 մետր, որու վրայ հանուած ահագին զանգակը (մօտ 20 հազար քիլօ) թրքական թնդանօթներէն ձուլուած է եղեր։ Եկեղեցւոյն առջեւ ընդարձակ հրապարակ մը կայ։ Յոյներն ալ իրենց գեղեցիկ եկեղեցին ունին, որուն կից շքեղ ծխական ուսումնարան մ՚ալ կայ։ Եկեղեցւոյ առջեւ կայ փոքրիկ պարտէզ, ջրբուղխով։ Ասոնցմէ զատ կան նաեւ բազմաթիւ ուրիշ մեծ եւ փոքր ռուսական եկեղեցիներ, քաղաքին ամէն կողմը։ Ունին 2 գեղեցիկ աղօթարան նաեւ բողոքականներն, հիւ-

անդանոցով միասին։ Մեծաշէն տաճարներ ունին Հրեայք ալ. եւ վերջապէս սեպհական ժողովրդանոց (synagogue) ունին Քարաիմներն (որոնց վրայ խօսած եմ գործոյս ընթացքին մէջ,) եւ սեպհական եկեղեցի նաեւ ռուս աղանդաւորները։

Կրօնի տաճարներէն վերջը կը մնայ խօսիլ ուղղակի գիտութեան տաճարներու վրայ, որոնցմով բաւական հարուստ է Օդեսա։ Առաջին տեղը կը բռնէ՝ անշուշտ Համալսարանը, որ պաշտօնապէս "Կայսերական Նոր-ռուսական (Նովռոսսիյսկի)[1] Համալսարան„ կը կոչուի։ Համալսարանը բացուած է այստեղ 1865ին եւ ունի այլեւայլ բաժիններ պատմական-բանասիրական, բնագիտական-ուսողական եւ իրաւաբանական։ Կը պակսի բժշկական ճիւղն, որ մեծապէս զգալի է եւ որու բացման շատ կ'աշխատի քաղաքն, իր կողմանէ եւս դրամական որոշ վճար յատկացնելու պատրաստակամութիւն յայտնելով. եւ յոյս կայ թէ շուտով կը կատարուի Օդեսացւոց այս հասարակաց բաղձանքը։ Գեղեցիկ շէնք ունի Համալսարանն, առանձին շինութիւն ուսանողներու գործնական պարապմանց համար, ճոխ գրատուն, եւ այլ յարակից բաժանմունք գործնական աշխատութեանց եւ ուսման համար, ինչպէս թանգարաններ՝ գեղարուեստից, դրամական ժողովածուներու, կենդանաբանութեան, բուսաբանութեան, հանքաբանութեան, դարձեալ կենդանական անդամահատութեան (zootomie), բնագիտական, քիմիական, առողջաբաշխական եւ վերջապէս օդերեւաբանութեան (météorologie) կայարաններ։

Համալսարանէն վերջը կու գան միջնակարգ վարժարանները՝ 3 գիմնասիոն (gyninase) 2 պրոգիմնասիոն եւ 2 ռէալական կամ իրագիտական

[1] Այսպէս կը կոչուէին Օդեսա եւ շրջակայ գաւառները։

վարժարան։ Ասոնցմէ զատ կան Մասնագիտական դպրոցներ, ինչպէս վաճառականութեան վարժարան, Հոգեւորական կղերանոց, զինուորական վարժարան, պարտիզպանական, երկաթուղեաց յատուկ մեքենական, արուեստական եւ այլ քաղաքային դպրոցներ; որոնց՝ (միայն այս վերջիններուս) թիւը 55 է։ Այս բոլորը մանչ տղոց համար։ Իսկ աղջկանց համար կայ՝ մի ճեմարան (institut), 3 գիմնասիոն, եւ քաղաքական ուսումնարաններ։ Յիշուածներէն զատ կան դարձեալ բազմաթիւ միջնակարգ եւ տարրական ուսումնարաններ, որոնք մասնաւոր անհատներու ձեռքով բացուած են եւ կառավարութեան կամ քաղաքային վարչութեան անընդմիջական իշխանութեան ներքեւ չեն։ Ունին վերջապէս Հրեաներն իրենց սեպհական իբր 30 դպրոց. Յոյներն իրենց յատուկ առեւտրական վարժարանը, եւ աղջկանց դպրոց, Հայերը՝ ինչպէս յիշեցի, մի ծխական ուսումնարան. կաթողիկեայք եւ լուտերականք նոյնպէս, մինչեւ իսկ Քարաիմներն ունին առանձին իրենց հասարակական դպրոցը՝ ժողովրդանոցին կից։ Այս բոլոր դպրոցներու մէջ կ'ուսանին աւելի քան 20 հազար աշակերտ մանչ եւ աղջիկ։ Կրթական եւ արուեստագիտական հաստատութեանց այսչափ մեծ բազմութիւնն է, որ զգալի կերպով կը բարձրացընէ տեղական ժողովրդեան զարգացողական աստիճանն եւ մակերեւոյթը, եւ պատիւ կը բերէ Օդէսայի։

Գանք այժմ կրթութեան միւս մեծ տարածչին՝ որ է Մամուլն։

Օդէսա ունի 5 ամէնօրեայ լրագիր, որոնց 4ը ռուսերէն լեզուով է եւ մէկը գերմաներէն. ամէնէն շատ կարդացուածներն են Новороссійскій Телеграфъ, որ հակահրէական եւ պահպանողական ուղղութիւն ունի եւ Одесскій Листокъ, որ աւելի յառաջդիմական է եւ հրէական լրագիր կը համարուի։ Այս երկուքն անընդհատ վէճի մէջ են.

պաշտպանելով երկու տարբեր ուղղութիւններ եւ ունենալով տարբեր հայեցակէտեր: Իսկապէս բաց ի Новороссійскій Телеграфъէն, միւսները առաւել կամ պակաս հրէական ձեռքերու մէջ են, որոնց ազդեցութիւնը շատ մեծ է այստեղ: Չեմ կարծեր թէ Եւրոպայի մէջ որ եւ է նշանաւոր քաղաք, բաց ի գուցէ Վիեննայէ, այնչափ մեծ հրէական ույժ ունենայ՝ որչափ Օդէսա: Գերմանական լեզուով հրատարակուած թերթը՝ Odessaer Zeitung, նոյնպէս Հրէիցմէ կը խմբագրուի: Կան նաեւ 2 թերթ գաղղիերէն լեզուով, որոնք շաբաթը մի անգամ կը հրատարակուին. La Russie Commerciale եւ Revue Commerciale: Ասոնք՝ ինչպէս անուններն ալ կը ցուցընեն՝ առեւտրական եւ տնտեսական խնդրոց նուիրուած եւ Յոյներու ձեռքն են: Մի շաբաթաթերթ ալ կայ՝ Школьное Обозрѣніе որ մանկավարժական թերթ է: Ասոնցմէ զատ կան՝ ուրիշ 6 թերթ, օրագիր, երկշաբաթաթերթ, ամսաթերթ եւ երկամսաթերթ, բոլորն ալ ռուսերէն, որոնք պաշտօնական հաստատութեանց գործիքը են ինչպէս քաղաքապետութեան, դպրոցական վարչութեան, հոգեւորական կառավարութեան, եւ կը պարապին իրենց որոշ շրջանին վերաբերեալ խնդիրներու: Ինչպէս կը տեսնուի, եւ ոչ մի գրական շաբաթաթերթ կամ ամսագիր կը հրատարակուի Օդէսայի մէջ: Այսպիսիները կը մատակարարեն գրեթէ ամբողջ Ռուսաստանին՝ երկու մայրաքաղաքները, Պետերբուրգ եւ Մոսկուա: Գաւառները չունին որ եւ է լուրջ հրատարակութիւն այս ուղղութեամբ:

Օդէսա հարուստ է նաեւ բարեգործական հաստատութիւններով: Երկու մեծ հիւանդանոց կայ, որոնց մէկը քաղաքային, ընդհանուր, իսկ միւսն առանձնապէս հրէական: Հրէական հիւանդանոցը, թէեւ բացարձակապէս հրէական դրամով շինուած է եւ կը պահպանուի, սակայն քրիստոնեաներ ալ

կ'ընդունի։ Ընդարձակ շէնք եւ հաստատութիւն է նաեւ քաղաքական յիմարանոցը, ամէն կերպ դիւրութիւններով եւ բաժանումներով գիտութեան նոր պահանջմանց համաձայն, որ իբր կէս միլիոն ռուբլի է արժած։ Յիշատակութեան արժանի է նաեւ "Աւետարանական հիւանդանոցը" աւետարանական ընկերութենէն հիմնարկուած։ Ասոնցմէ զատ կան նաեւ ուրիշ բազմաթիւ նոյն կարգի մասնաւոր հաստատութիւններ, եկաւոր հիւանդներու, ծննդականներու, մանկական հիւանդութիւններու համար եւ այլն, որոնք կամ ձրի են կամ շատ քիչ վարձատրութեամբ։ Ուշադրութեան արժանի է նաեւ Օդէսայի Բակտէրիօլոգիական կայարանը (station bactériologique) ուր Պաստէօրեան մէթոդով յաջողաբար կը դարմանուին կատաղութեան բռնուած հիւանդները, եւ կը պատուաստեն նմանապէս սիբիրական վէրքը, եւ բակտէրիախօսական զննութիւններ կը կատարեն ուրիշ տարափոխիկ ախտերու վրայ։

Հիւանդանոցներէն վերջ կու գան որբանոցներն եւ անկելանոցներն, որոնք նոյնպէս բազմաթիւ են։ Ընկեցիկ մանուկներու խնդիրն եւս լուրջ ուշադրութեան առարկայ է դարձած։ Քաղաքը տարեկան 55.000 ռուբլի կը ծախսէ ասոնց վրայ, իր հոգացողութեան ներքեւ առնելով եւ որդեգրելով այս խեղճ մանուկները։ Քաղաքն այժմ 800էն աւելի այսպիսի ընկեցիկ մանուկ որդեգրած ունի եւ կը պահպանէ։ Կան նմանապէս ուրիշ տեսակ բարեգործական հաստատութիւններ եւս, որոնք այս թէ այն կերպով՝ խնամով օգնութեան կը հասնին կարօտ դասակարգին։ Այստեղ կայ՝ "Արտօնացեալներու Ապաստանարան" կոչուած տուն մ'որ հաստատուած է ի յիշատակ Ռուսաց կայսերական գերդաստանի ազատութեան նշանաւոր Բորկիի արկածէն, 1888 Հոկտ. 17ին, (երբ երկաթուղային գնացքը՝ ճանապարհէն դուրս ել-

լելով, բոլոր վագոնները ջարդուեցան, մարդիկ մեռան, իսկ կայսերական գերդաստանին գտնուած վագոնն անվնաս մնաց)։ Այս հաստատութեան մէջ ծրի կ'ապաստանին որոշ թուով, այն արքն ու կանայքը՝ որոնք անյաջող կամ դժբախտ հանգամանաց պատճառաւ կարօտութեան մէջ են ինկած, կամ ինչպէս Թրքերը կ'ըսեն՝ "տէվլէթ տէւշկէւնէւ„ անձինք։ Քաղաքը տարեկան կը ծախսէ 6000 ռուբլի այս նպատակի համար։ Բազմաթիւ հիմնարկութիւններ կան առհասարակ չքաւորներուն օգնելու համար։ "Աղքատանպաստ„ ընկերութիւն մը կայ, որ մեծ առատաձեռնութեամբ կ'օգնէ ամէն կարօտեալներուն։ Ռուսական առածը կ'ըսէ՝ „Съ міру по ниткѣ, голому рубашку“ այսինքն՝ "եթէ ամէնքը մէյ մէկ թել տան՝ աղքատի համար շապիկ մը կը շինուի„. այսպէս ալ այս ընկերութիւնն ամէնէն՝ շատ աննշան՝ նոյն իսկ կոպէկ կոպէկ նպաստներ ընդունելով՝ այսօր կարող եղած է սեպհական աղքատանոցներ ունենալ եւ տարեկան 16 հազար ռուբլի ծախսել՝ մինչեւ 400 չքաւոր պահպանելով։ Անկէ զատ կան ուրիշ բարեգործական ընկերութիւններ դարձեալ չքաւորներու, որբերու, հիւանդ տղոց եւ այլ կարօտեալներուն օգնելու համար։ Բարերարաց միջոցաւ շինուած ընդարձակ տներ կան՝ միջակ դասակարգին՝ շատ ձեռնտու գներով բնակարան եւ շատ աժան կերպով կերակուր հայթայթելու համար։ Օդէսա ունի նաեւ ընդարձակ ճիւղ "Կարմիր Խաչի„ ընկերութեան, 60էն աւելի Ողորմած քոյրերով (Soeurs de la charité).

Այս ընդհանուր բարեգործական հաստատութիւններէն զատ, տեղացի Հրեաներն յատկապէս իրենց համար ունին դարձեալ անկելանոց, ծրի ճաշարան աղքատներու եւ որբանոց։ Այս վերջինը հարուստ Հրեի մը կանգնածն է եւ մի եւ նոյն ժամանակ թէ դպրոց է եւ թէ արուեստանոց։

Այնպէս որ այն որբերն երբ մեծնան, արդէն բաւ-
ական զարգացած կը լինին թէ մտաւորապէս եւ
թէ որեւէ արուեստի մէջ, եւ աղջիկ կամ մանչ՝
այնուհետեւ կրնան իրենց անձնական աշխատու-
թեամբ ապրուստնին հոգալ։ Որբանոցին կից հաս-
տատուած է երկրագործական ագարակ, որ առա-
ջինն է Ռուսաստանի մէջ, ուր որբերը կը կըր-
թուին երկրագործական արուեստին, կաթնային
տնտեսութեան, մետաքսագործութեան մէջ, եւ
այլն։

Օդէսայի մէջ Հրէից ազդեցութիւնն եւ ոյժը
յայտնապէս կ'երեւայ ամէն հաստատութեանց մէջ՝
եւ այս զարմանալի չէ. որովհետեւ քաղաքին ազգա-
բնակութիւնը գրեթէ 35% Հրեայ է։ Օդէսա
ինքն ըստ ինքեան ոչ-ռուսական քաղաք է, որով-
հետեւ Ռուսերն աննշան տարր եւ ոյժ են համե-
մատաբար միւս ցեղերուն։ Օդէսայի հրապարակին
վրայ գլխաւոր իշխողները նախ Հրեաներն են, ապա
Յոյները, Գաղղիացիք, Գերմանացիք եւ Իտալացիք։
Յոյներն եւս զգալի ոյժ կը կազմեն այստեղ՝ շնոր-
հիւ իրենց հոծ բազմութեան եւ մեծ հարստու-
թեան։ Օդէսայի քաղաքային վարչութեան գլուխ
կանգնողը՝ երկար տարիներէ ի վեր յոյն մըն է
Պր. Մարազլի, որ նշանաւոր է ինչպէս իր հարստու-
թեամբն այնպէս եւ իր բարեգործութիւններովը
յօգուտ քաղաքին։ Քաղաքին գեղեցիկ եւ մեծա-
գործ շէնքերուն մէկ կարեւոր մասին տէրերն այն-
պիսի Յոյներ են, որոնք Օդէսայէ դուրս ալ հռչակ
կը վայելեն, ինչպէս Ռալլի, Ռոդոքանաքի, Վա-
լեանօ, Վուչչինօ եւ այլն։ Կը պատմեն թէ այս
Յունաց նախնիքը ծովահէնութեամբ կը պարապին
եղեր այս կողմերը դեռ ասկէ մէկ դարէն ոչ շատ
յառաջ, երբ Օդէսա կամ ճշդագոյն՝ իր նախկին
անուամբ Հաջիպէյը Ռուսաց ձեռքը չէր անցած կամ
նոր կ'անցնէր։ Իսկ այսօր անոնց սերունդն ամենա-
պատուաւոր տեղը կը գրաւէ քաղաքին մէջ։

Օդէսա այժմ 300 հազար բնակիչ ունի, չհաշուելով զօրքն (մօտ 16 հազար) եւ եկւորները: Հարիւր տարի նոր անցաւ իր հիմնարկութենէն ի վեր, եւ արդէն այնպէս ծաղկած եւ հարստացած է, որ քաղաքին տարեկան Բէ-ջէն (budjet) 3¹/₂ միլիոն ռուբլի կը հանի (մօտ 10 միլ. ֆրանք): Այս գումարէն խոշոր մաս մը, այսինքն մէկ միլիոն ռուբլի կը հանուի կրթական եւ բարեգործական հաստատութեանց, որոնց վրայ հարկ համարեցայ մանրամասն խօսիլ, որովհետեւ Ռուսաստանի ամէն քաղաքին մէջ չենք գտներ այսչափ մեծ հոգածութիւն եւ խնամք այս մասին:

Այստեղ եղած ժամանակս ես ամէն օր կ'երթայի գօրօդսկոյէն չիտալնիան, որ նոյնպէս ուշադրութեան արժանի է: Այնտեղ գտայ նաեւ հայերէն թերթեր, "Մշակ" եւ "Նոր Դար", որոնք իրենց հրատարակութեան վեցերորդ օրը կը հասնին հոս. եւ առիթ ունեցայ կարդալ թէ ընդհանրապէս ազգային եւ թէ մասնաւորապէս կովկասեան լուրեր, որոնցմէ զուրկ էի միացած ուղեւորութեանս ընթացքին մէջ:

Երբ առաջին անգամ մտայ ընթերցարանը, դրապահներէն մէկը բերաւ առջեւս դրաւ մեծ գիրք մի, որուն մէջ՝ խնդրեց որ արձանագրեմ իմ անունս, մականունս եւ մշտական բնակատեղիս. այս ձեւակերպութիւնը կատարելէս վերջը հանեց ինձ տուաւ տպուած տոմսակ մ'իմ անուամբս, որով իրաւունք կը ստանայի ազատ մուտք ունենալ ամբողջ մէկ տարի առանց վճարի, ինչպէս ամէնքը: Մեծ սրահի մը մէջ նստած լուռ կը կարդային կամ կը գրէին ամէն տարիքէ եւ ամէն կարգէ մարդիկ. կանանց համար առանձին սենեակ կայ, բայց դարձեալ քանի մի կին նախամեծար կը համարէին մեր սրահին մէջ պարապիլը: Ամէն մարդ իրաւունք ունէր մի անգամէն մինչեւ 2 հեղինակութիւն առնել կարդալու. իսկ տուն տանելու հրաման չկար եւ ոչ

իսկ գրաւականով։ 65 հազար հատոր գիրք կայ այստեղ. կան նաեւ ձեռագիրներ՝ մեծաւ մասամբ ռուս հեղինակներու։ Այստեղ կայ նոյնպէս 4 ուրիշ գրատուն-ընթերցարան, որոնցմէ կարելի է գիրք առնուլ (կամ այնտեղ կարդալ) որոշ վճարով։

Քաղաքային գրատունէն զատ կայ նաեւ քաղաքային ժողովրդական ընթերցարան, որ հիմնուած է 1891ին Մարազլի քաղաքապետին ծախքով, ուր կը յաճախեն գլխաւորաբար արուեստաւորներ եւ առեւտրական գործակատարներ։ Հետաքրքրական այն է՝ որ այս ընթերցարանը յաճախողներուն 80°/o, ինչպէս ինձ ասին, Հրեայ են, որոնք կ՚աշխատին ամէն օգուտ քաղել իրենց ազատ ժամանակն օգտիւ գործածելու. արդէն նոյն թաղի բնակիչներն ալ մեծ մասամբ Հրեայ են։

Գրատունէն գնացի պատմական եւ հնագիտական թանգարանն, զոր նոյնպէս շատ կը գովէին։ Բայց այս թանգարանը դեռ այնչափ հարուստ չէ. այնտեղ ամէնէն աւելի ճոխ են հելլենական հնութիւնները, եւ մանաւանդ առատ են Սեւ ծովու եզերաց հին հելլենական գաղթականութիւններէն մնացած դրամները։ Թէեւ ճոխ չէ, բայց ամէն տեսակէն ունի քիչ շատ, վիմական արձանագրութիւններ, սիւներ, պղնձի արձաններ, առտնին իրեր եւ այլն։ Թանգարանն ութ ճիւղի բաժնուած է. 1. նախապատմական, 2. եգիպտական, 3. հելլենական, 4. հռոմէական, 5. բիւզանդական, 6. ջենովական, 7. մոնղոլական եւ տաճկական, 8. ռուսական։ Աւելի հետաքրքրական է Օդեսայի համալսարանի թանգարանն իր բազմակողմանի հաւաքածոյքովն, եւ այս պատճառաւ ալ աւելի յաճախուած թէ երիտասարդութենէ եւ թէ ժողովրդէն։

Երեկոյին՝ տեղացի ծանօթի մ՚առաջնորդութեամբ գնացի "Առեւտրական ժողովարանը" (club), որ ինչպէս անունը ցոյց կու տայ՝ հիմնուած է յատկապէս վաճառականներու համար, թէեւ

եւ այնտեղ բժիշկներ եւ զինուորականներ ալ շատ տեսայ։ Զարմանալի է, որ ըստ կանոնադրութեան այս ժողովարանին՝ Հրեայք չեն կրնար անդամ գրուիլ մինչ իրօք տեղական վաճառականութիւնը գլխաւորաբար Հրէից ձեռքն է։ Ասոնք ալ՝ փոխարինաբար՝ ուրիշ, սեպհական ժողովարան ունին որ աւելի ազատամիտ գտնուած է եւ չ՚արգիլեր օտարազգի անդամի մուտքը։ Ամենէն նշանաւոր եւ ազնուապետական ժողովարանն է այստեղ՝ "Անգղիական կամ Օդէսայի կլօբ„ կոչուածն, ուր թէ անդամներու եւ թէ հիւրերու ընդունելութեան մէջ աւելի խիստ է ընտրողութիւնը։ Եւ աս հիմնուած է երեր 1831ին, ամենէն յառաջ։ Ասոնցմէ զատ կան "Ազնուականաց ժողովարան„, որ նոյնպէս մեծ յարգ ունի, "Զինուորական ժողովարան„, "Արուեստաւորաց ժողովարան„ եւ այլն։

Օդէսա իբրեւ բուն եւրոպական քաղաք չէր կրնար հեռու մնալ sportի վերաբերեալ հաստատութիւններէն որոնք այնքան տարածուած են ժամանակակից կրթուած հասարակութեան մէջ։ Այս հաստատութիւններն են, 1. Սէն Ժօրժեան Եօթ-կլօբը (yacht-club) որ ունի սեպհական բազմաթիւ առագաստանաւեր, մակոյկներ եւ շինութիւններ եւ Եօթերու մրցումներ կը կազմակերպէ ամառները։ 2. "Ձիարշաւի ընկերութիւն„ որ գարնան եւ աշնան ձիարշաւներ կը կազմէ, որոշ վարձատրութիւններով (prix)։ 3. Որսորդաց ընկերութիւն, որ իր կլօբն ալ ունի, ուր անդամները կը պարապին նետաձգութեան՝ աղաւնիներու վրայ։ 4. "Վելօսիպեդիստներու ընկերութիւն„, որու անդամները կը վարժեցուին վելօսիպեդներու (velocipède) վրայ շրջելու եւ վերջապէս 5. Մարմնամարզութեան կլօբը, որու անդամները գրեթէ միայն Գերմանացիք են եւ կը պարապին մարմնավարժական խաղերու, ֆիզիքական զարգացման համար։ Այստեղ կանայք եւս կան անդամ։

Մեր այս տեսութիւնն ըստ մասին աւելի կատարեալ ընելու համար՝ յիշենք նաեւ Օդէսայի Ռուսա-Յունական ընկերութիւնները: “Կայսերական Ընկերութիւն պատմութեան եւ հնութեանց”՝ Ռուսաց կայսեր հովանաւորութեան ներքեւ, որուն նպատակն է հարաւային Ռուսաստանը, Բեսարաբիան, եւ Սեւ ծովու ռուսական եզերքն ուսումնասիրել պատմական եւ հնագիտական տեսակիտէ. եւ հաւաքած ծանօթութիւններն հաղորդել ուսումնական աշխարհի: “Բնագիտաց Ընկերութիւնը” կ'ուսումնասիրէ նոյն տեղերը՝ կենդանաբանական, բուսաբանական եւ երկրաբանական ուղղութեամբ: “Պատմական-Բանասիրական Ընկերութիւն”, որուն նպատակն է՝ ուսումնական հաւաքածուներով եւ աշխատասիրութիւններով նպաստել երկրին մէջ պատմական եւ բանասիրական ծանօթութեանց տարածման եւ ընդհանրացման: “Կայսերական արուեստագիտական ընկերութեան ճիւղն” ունի այստեղ ութ բաժանմունք, շինուածական, ճարտարապետական, բնալուծական, մեքենական, հանքային, ծովային, զինուորական եւ լուսանկարչական, որոնց իւրաքանչիւրն՝ ըստ իւր ճիւղին կ'ուսումնասիրէ կառավարութենէն եւ հասարակական հիմնարկութենէն ընկերութեան յանձնուած արուեստագիտական խնդիրները, ծրագիրները, եւ այս ուղղութեամբ կու տայ հարկ եղած բոլոր դիտողութիւնները, ծանօթութիւնները, եւ կը ստանձնէ նաեւ քննել ամէն տեսակ արուեստագիտական ձեռնարկութիւններ: “Հարաւային Ռուսիոյ գիւղատնտեսական Ընկերութիւնը” հոգ կը տանի երկրին մէջ գիւղատնտեսութեան ճիւղերու, գինեգործութեան, մետաքսագործութեան, մեղուաբուծութեան, պարտիզպանութեան զարգացման, կենդանեաց տեսակի ազնուացման եւն եւն: “Պարտիզպանական Ընկերութիւն՝” յատկապէս պարտէզներու, այգիներու եւ ասոնց արդեանց բար-

դաւաճման համար, որ ունի նաեւ իւր դպրոցը։ “Խրիմի լեռնային կլուբ„՝ որ հիմնուած է այն նպատակաւ զոր ունին եւրոպական “Ալպեան„ կոչուած կլուբներն եւ ընկերութիւնները, եւ ամէն տարի ուսումնական արշաւանք կը կազմակերպէ դէպ ի Խրիմի լեռները, տեղւոյն լեռնային բնութիւնն ուսումնասիրելու եւ լեռնային արդիւնաբերութեան զարգացման օժանդակելու համար։ Իրաւագիտական Ընկերութիւն„՝ իրաւագիտական խնդիրներ քննելու եւ ժողովրդեան մէջ տարածելու համար։ “Գեղարուեստից Ընկերութիւն„՝ որ գեղարուեստից դպրոց մը կը պահէ։ “Երաժըշտական Ընկերութիւն„ որ ինքնին յայտնի է։ “Բժշկաց Ընկերութիւն„՝ Օդէսան առողջապահական տեսակէտով ուսումնասիրելու համար։ “Բաղնեխօսական (balnéologique) Ընկերութիւն„՝ որուն նպատակն է քննել ու լաւացընել ծովային բաղանիքն· եւ պէտք եղած խորհուրդները տալ այս մասին, եւն։ Կայ վերջապէս այստեղ նմանապէս “Նմանաբուժութեան (homéopathie) հետեւողաց Ընկերութիւն„, որ ունի նաեւ իւր հիւանդանոցը։

Այս ամէնը գերազանցապէս կ'ապացուցանէ որ Օդէսա՝ առատօրէն կուտայ իր բնակիչներուն այն ամէնայն, որ կը պահանջէ ներկայ ժամանակի կրթուած հասարակութիւնն թէ մտաւորապէս եւ թէ նիւթապէս։

Օդէսա առնուած է նոյնպէս Օսմանցիներէն, անցեալ դարուն վերջերը՝ նաւային երկար պատերազմէ մը վերջը Դը Ռիբաս ծովակալին հրամանատարութեան ներքեւ։ Ի յիշատակ այս յաղթութեան՝ Օդէսայի ամէնէն գեղեցիկ փողոցը կը կրէ Դը Ռիբասի անունը։ Օդէսա նախնապէս աննշան բերդ էր Հաջի բէյ կամ Խօջա բէյ կոչուած, ուր կ'ապաստանէին գլխաւորաբար յոյն ծովահէնները։ Երբ անցաւ Ռուսաց ձեռքը՝ իւր դիրքն ու այլ հանգամանքներն այնչափ նպաստաւոր էին

քաղաքային նաւահանգիստ կառուցանելու՝ որ քանի մը տարի ետքը, այսինքն 1794ին իսկոյն հիմ դրուեցաւ քաղաքին: Օդէսա կոչուելու մասին ալ հետեւեալ աւանդութիւնը կը պատմուի: Երբ նոր քաղաքապետ եւ հիմնադիր Ռիշլիէօյին դիտողութիւն կ'ընեն թէ այստեղ բաւական ջուր չկայ, Գաղղիացին կը պատասխանէ՝ assez d'eau՝ եւ այս խօսքերն այնպիսի կարեւորութիւն են առեր որ այս անունը դրուեր է նոր քաղաքին, շրջուն դարձուած՝ Օդէսա. (սաէ դօ = օդէսա): Այս՝ ռամկին մեկնութիւն: Կատարեալն է Բ. քաղաքն Օդէսա կոչել ուզած է ի յիշատակ նոյն կողմերը գտնուող յունական հին գաղթականութեան որ Օդեսսոս կը կոչուէր: Ռիշլիէօ մեծ ջանք է ցուցուցած քաղաքին յառաջացման: 1894ին Օգոստոսի վերջը՝ Օդէսա շքեղ կերպով տօնեց իւր հիմնարկութեան հարիւրամեակը:

---

## Ի.

## ՕԴԷՍԱՅԻ ՆԱՒԱՀԱՆԳԻՍՏՆ ԵՒ ՎԱՃԱՌԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

Օդէսա՝ Ռուսաստանի ամենէն վաճառաշահ եւ գլխաւոր նաւահանգիստն է. իբրեւ վաճառականութեան կէտ եւ կեդրոն հարաւային Ռուսաստանի՝ կ'արժէ այս մասին առանձին խօսիլ:

Օդէսան ծաղկեցընողն* եւ իր ներկայ դիրքի մէջ պահողը՝ հացհատիկներու (ցորեն, հաճար, վարսակ, գարի, սիմինտր եւն) եւ գլխաւորաբար ցորենի վաճառականութիւնն է որ կը հասնի տարեկան 120—130 միլիոն ռուբլիի: Իսկ առեւտրի ելեւմուտքին ընդհանուր տարեկան գումարը կ'անցնի 210 միլիոն ռուբլին. (22 միլ. անգղ. ոսկի:) Ցորեն կ'ուղարկուի այստեղէն ամենէն աւելի Անգղիա, եւ ապա Իտալիա, Հոլլանդա, Բեղգիա, Գաղղիա, Գերմանիա, Աւստրիա եւ այլն: Այս առեւտուրը

գլխաւորաբար Հրէից եւ Ցունաց ձեռքն է. կան նաեւ Եւրոպացիք, իսկ բուն Ռուս հազիւ 2—3 հոգի կան. Հայ եւ ոչ մի։ Ռուսներն առհասարակ, Օդէսայի յառաջացման մէջ շատ քիչ մասն են ունեցած, թէ ի սկզբան եւ թէ այժմ։ Նաեւ տեղացի երկրորդական կարգի վաճառականներուն մէջ ալ իրենց թիւն աննշան է։

Հացհատիկները կը բերուին Օդէսա բովանդակ Հարաւային Ռուսիոյ ընդարձակածաւալ դաշտերէն, մէկ մասը երկաթուղիով եւ միւսը՝ նաւերով։ Դնիեպր գետի աւազանն է, որ ամէնէն աւելի ցորեն կ'ուղարկէ Օդէսա։ Մասնաւոր շոգենաւեր, առագաստանաւեր եւ բարժաներ (баржа) կան այս փոխադրութեան յատուկ, որոնք անդուլ եւ անդադար կը գործեն ծածկելով Օդէսայի նաւահանգիստն եւ նաւամատոյցները, եւ զերար կտրելով ընդարձակ ծովուն եւ Դնիեպր ու Դնիեստր գետերուն վրայ։ Բաց ի հացհատիկներէ՝ նաեւ ալիւր կ'ուղարկուի այստեղէն, որ թէ տեղական ջրաղացներու արդիւնք է եւ թէ կը բերուի ներսերէն։

Նաւահանգիստը կը յաճախեն տարեկան 1200—1300ի չափ հեռաւոր նաւարկութեան ծառայող նաւեր, որոնցմէ առաջին տեղին կը գրաւէ ծովերու թագուհին, Անգղիա՝ իբր 700 նաւով. վերջը կու գան ռուսական նաւերը 170—180, աւստրիական 140, իտալական 70, յունական 60, դանիական 30, գաղղիական 26, եւ ապա գերմանական, բելգիական, շուետական եւ տաճկական։ Ձմեռ ժամանակ, որ եղանակները շատ անգամ անտանելի են նաւարկութեան եւ նաւահանգիստը կը սառի, մեծ թուով նաւեր կը ձմերեն այստեղ. 50էն մինչեւ 100 շոգենաւ, մի երկու հարիւր առագաստանաւ եւ նոյնչափ մ'ալ բարժա։ Եւ այն ժամանակ Օդէսայի նաւահանգիստն սքանչելի եւ միանգամայն ահաւոր նաւարանի դիրք կը ստանայ, ուր նաւերն անշարժ կը հանգչին, եւ աշխարհիս

ամէն կողման դրօշներն իրարու քով հանդարտ կը ծածանին, իսկ նաւական պաշտօնեաները քաղաքին մէջ զուարճութեամբ, եւ ընկերակցութեամբ ազատ կ՚անցընեն իրենց ժամանակը։

Հրէից եւ ապա Յունաց դրամական ոյժը կատարելապէս կ՚երեւայ նաեւ տեղական բանկերու մէջ։ Օդեսա՝ իբրեւ կարեւոր առեւտրական քաղաք, բազմաթիւ դրամատներ ունի, որոնց ամէնուն մէջ ալ Հրեաները կամ իշխող են կամ մասնակից։ Գլխաւոր դրամատունն է բնականաբար Ռուսաց Պետական բանկի տեղական բաժինը եւ ապա կու գան, Տոկոսազեղչ բանկ (comptoir d'escompte) որ հիմնուած է Յոյներէ եւ անոնցմէ ալ կը կառավարուի։ Դրամագլուխն է 2 միլիոն ռուբլի։ Առեւտրական-Արդիւնաբերական բանկ՝ 3 միլիոն դրամագլխով, Հրէից ձեռքն է։ Այս դրամատունն է որ ամէնէն աւելի կ՚օգնէ հացհատիկներու վաճառականներուն ցորենի գրաւականով փոխատուութիւններ ընելով։ Փոխադարձ վարկի ընկերութիւնն անդամներ ունի ամէն ազգէ, իսկ Քաղաքային վարկի ընկերութիւնը գլխաւորաբար Յունաց ձեռքն է։ Կալուածական բանկ Քերսոնեան Նահանգի, որ շատ հաստատուն հիմանց վրայ դրուած է եւ մեծ յարգ ունի բովանդակ Ռուսաստանի մէջ. միայն պահեստի դրամագլուխն արդէն $4 \frac{1}{4}$ միլիոնն անցած է։ Լաւ դիրք ունի նաեւ Բեսարաբեան Կալուածական բանկը։ Այս երկու դրամատանց մէջ ալ Հրեաները մեծ մասնակցութիւն ունին։ Crédit Lyonnaisի տեղական բաժինը նոյնպէս մեծ գործ ունի այստեղ՝ շնորհիւ իր համաշխարհային կապերուն։ Այս ընդհանուր հաստատութիւններէն զատ կան մասնաւոր դրամատներ ալ որոնք դարձեալ գլխաւորաբար Հրէից կը վերաբերին թէեւ կան յունականք եւ եւրոպականք եւս։ Նշանաւոր են ի մէջ այլոց Ալֆրէդ Մաաս եւ ընկ., Փ. Ռոդոքանաքի, Աշքէնազի, Խաքի եւ այլն։

Գանք այժմ նաւահանգստին, որ իսկապէս ամենէն նշանաւոր հաստատութիւնն է Օդեսայի, եւ որու շնորհիւն է՝ որ քաղաքը համեմատաբար կարճ ժամանակի մէջ, այսչափ յառաջացած է։ Քաղաքին հիմնարկութեան հետ միաժամանակ, ճիշդ 100 տարի յառաջ, այսինքն 1794 Օգոստոսի 22ին հիմն է դրուած նաւահանգստին։ Ինչպէս քաղաքին՝ նոյնպէս եւ նաւահանգստին շինութիւնը ծրագրողներն եւ յառաջացընողները Գաղղիացիք եղած են (Դը Ռիբաս, Ռիշլիեօ, Դը Վոլան)։ Շինութիւնները յառաջ փայտեայ էին, եւ 1866ին միայն սկսան քարէ հիմնաւոր շինութիւնները որ տեւեցին մինչեւ 1878։ Նաւահանգստին ծովափը 2600 սաժէն — 1310 մեդր երկայնութիւն ունի, եւ ամբողջապէս ծածկուած է գրանիտ քարով, որ շատ գեղեցիկ երեւոյթ կ'ընծայէ։ Ընդհանուր նաւահանգիստը բաժնուած է բազմաթիւ հանգրուաններու, որոնք առանձին առանձին աւազաններ կամ փոքրիկ նաւահանգիստներ են եւ իրարմէ կը բաժնուին ծովուն մէջ երկնցած նաւամատոյց-ամբարտակներով (môle)։ Այս հանգրըւանները կը կոչուին Գործնական, Ածխային, Նոր, Կարանտինեայի (de quarantaine) եւ Նաւթային։ Այս վերջինն ամենէն նորն է։ Նաւամատոյցներուն մէջ ամենամեծն է Կարանթինայի կոչուածը որ մտած է ծովուն մէջ առ ի շեղ եւ ապա դէպ ի ներս ծռած, ծայրն ունենալով նաւահանգստի հսկայական լապտերը։ Այս նաւամատոյցները ալիքներու բախումներէն պահպանելու համար, նաւահանգըստին մուտքը վրայ ուղղաձիգ գծով շինուած է մեծ ամբարտակ մը (волноломъ, brequin) 570 սաժէն երկայնութեամբ, որու ներսի կողմը մտած կը սպասեն շոգենաւերն՝ որ իրենց տեղ բացուի նաւամատոյցներուն առջեւ։ Թէ ամբարտակը, թէ նաւամատոյցներն եւ թէ առհասարակ նաւահանգստին ամբողջ գիծը ելեկտրական լուսոյ անթիւ լապտեր-

ներով ծածկուած են, որ հնարաւոր կ'անէ գիշեր ժամանակ ալ անվտանգ շարունակել նաւահանգըստի գործողութիւնները, թող աքանչելի տեսարանն որ կ'ընծայէ Օդէսայի բարձունքէն կամ ծովէն նայողին։

Նաւահանգստին վրայ նաւերուն բեռնաւորումը թէ արագ եւ թէ կանոնաւոր կատարելու համար բազմաթիւ դիւրութիւններ են ստեղծուած։ Նաւահանգստին ամբողջ երկայնութեան վրայ՝ 4 քիլոմէտր տարածութեամբ estocade անուանուած փայտեայ ճանապարհ կայ շինուած, երկաթուղույ գծէն երեք սաժէն բարձր, որպէս զի տակը կառքերը կարենան դարձեալ ազատ երթեւեկել։ Այս ճանապարհը կազմուած է քովէքով ձողերու վրայ հաստատուած կայարաններէ, ասոնց վրայ կ'ընթանան մասնաւորապէս պատրաստուած վագոններ, որոնց յատակը կը բացուի, ցորենը կը թափուի վարը յատուկ խողովակներու մէջ եւ անկէ ալ շոգենաւը։ Բայց այս միջոցն ալ դեռ քիչ գալով convoyeur կոչուած ուրիշ մեքենաներ ալ կան, որոնք փոխն ի փոխ կը հաստատուին estocadeին կայարաններուն քով, եւ գործն այնպէս կը դիւրացընեն, որ միայն մէկ կայարանէն կարելի է օրական 5—6 շոգենաւ բեռնաւորել։ Այս convoyeur ասուածը լայն ու երկայն խողովակ մի է, որու մէկ ծայրը կապուած է estocadeին եւ միւսը շոգենաւուին։ Այս խողովակը յատուկ շոգեշարժ մեքենայի ուժով անընդհատ կը դառնայ. հացհատիկներով լի վագոնները կու գան, իրենց բեռը կը թափեն շատ պարզ կերպով այն խողովակին մէջ, որ անդադար շարժման մէջ գտնուելով՝ արագ կը փոխադրէ ցորենն ի շոգենաւ։ Այս կերպով ամէն մէկ convoyeur մի ժամու մէջ 10 վագոն կը պարպէ։ Ասոնցմէ զատ երկաթուղույ գծին երկայնութեան վրայ շինուած են ընդարձակ շտեմարաններ եւ ապա երկու հսկայ վերամ-

բարձ մեքենայ։ Ցորենն այս շտեմարաններէն անցնելով կը մտնէ վերամբարձ մեքենային ստորին մասն, եւ կ'ելլէ վեր՝ մեքենային գագաթը, ուսկի կը թափուի երկաթէ սնտուկի մը մէջ, որ միանգամայն ինքնաշարժ կշիռք է։ Երբ սնտուկին ցորենի քանակութիւնը կը հասնի 10 պուդի (160 քիլօ) սնտուկն այն ծանրութեան տակ ինք իրմէ կը դառնայ եւ ցորենը կը պարպէ, եւ այս չափին իսկոյն ինքնաշարժ կերպով կը նշանակուի յատուկ տեղ մը, որով առանց մարդու օգնութեան կրնայ որոշուիլ թէ քանի՛ սնտուկ պարպուած է վերամբարձ մեքենայով. իսկ սնտուկէն վար թափուած ցորենը կ'իջնայ տեսակ մը մաղի վրայ, ուր կը մաղուի, կը մաքրուի եւ ապա կը հոսէ շտեմարանին այս կամ այն մասը՝ ուր որ հաստատուած է խողովակը։ — Այս շտեմարաններուն մէջն է որ ցորենը կը համբարուի, կը մաքրուի եւ կը պահուի մինչեւ ծախուիլը։ Երբ արդէն ծախուեցաւ՝ շտեմարանին տակէն անցք մը կը բացուի, ուսկից ցորենը կը բարձրանայ դարձեալ վեր, կը կշռուի ինք իրմէ, կը մտնէ estocadeի վագոններուն մէջ, եւ ապա convoyeurին միջոցաւ կ'երթայ վերջապէս կը հանգստանայ շոգենաւին գիրկը։ Կ'ենթադրուի որ այս բոլոր շինութիւններն ահագին դրամ են արժած, միայն երկու վերամբարձները (élévateur) կ'արժեն 500 հազար րուբլի։

Օդէսա ունի երեք նաւարան՝ ուր նաւերը ծովէն հանուած՝ կը մաքրուին, կը ներկուին եւ նաեւ ամբողջապէս կը կառուցուին։ Բայց իբրեւ նաւարան՝ Ռուսական "Շոգենաւային-Ընկերութիւն Սեւաստոպոլի„ հաստատութիւնն աւելի կարեւոր է։ Ընտիր նաւարան կայ նոյնպէս մերձակայ Նիքոլայեւ քաղաքին մէջ։

Օդէսա իբրեւ կեդրոնատեղի առեւտրական նաւատորմղին՝ ամենէն կարեւոր եւ առաջին նաւահանգիստը կը համարուի ամբողջ Ռուսիոյ մէջ։ Այս

տեղ քանի մի ռուսական նաւային ընկերութիւններ կան, որոնք բաց ի Սեւ եւ Ազախու ծովերուն նաւահանգիստները շրջելէն՝ կանոնաւոր գծեր ունին հաստատուած նաեւ դէպ ի Հնդկաստան, Չինաստան, եւ միանգամայն Խաղաղական ովկիանոսի ռուսական եզերքը։ Մինչեւ 1828՝ Սեւ ծովուն վրայ եւ ոչ մի ռուսական, եւ յատկապէս առեւտրական շոգենաւ կար։ Այս թուականին է որ շինուեցաւ առաջին վաճառատար շոգենաւը, որ կը գործածուէր գլխաւորաբար Օդէսայի եւ Վառնայի մէջ՝ պատերազմական մթերք փոխադրելու։ Այս առաջին շոգենաւին անունը՝ Օդէսա էր։ Կը պատմեն թէ այս շոգենաւին մէջ ածխոյ տեղ փայտ կը վառէին, եւ որովհետեւ ոչ ոք կարողացեր էր այն ժամանակ որոշել թէ ինչ քանակութեամբ փայտ հարկաւոր է ամէն մի ճանապարհորդութեան, ուտի եւ շոգենաւը շատ անգամ ճանապարհին կը հատցրնէ եղեր իր վառելիքն եւ կանգ կ՚առնէ եղեր։ Առաջին կանոնաւոր գիծն զոր Ռուսք հաստատած են Սեւ ծովուն վրայ, 1834ինն է, այն ալ Օդէսայի եւ Կ. Պոլսոյ մէջ, աւելի յառաջ չեն կրցած երթալ, բայց այս գծին յատկացուած շոգենաւն ալ որ Բալտիկ ծովէն բերուեր էր՝ ալէկոծութեան բռնուելով խորտակուեր եւ ընկղմեր է, մէջիններուն մեծ մասին հետ։ Քանի մի ուրիշ անյաջող փորձերէն ետեւ, վերջապէս 1857ին հաստատուեր է “Ռուս. Շոգենաւական-Առեւտրական Ընկերութիւնը„ (Русское Общество пароходетва и торговли) որ հիմն է եղած իսկապէս Հարաւային Ռուսիոյ եզերքին վրայ ռուսական նաւագնացութեան։ Իսկ մինչեւ այն ժամանակ ծովային ամէն յարաբերութեանց կը տիրէին այստեղ օտար, մանաւանդ անգղիական ընկերութիւնք, որոնք հիմայ ալ շատ աւելի զօրաւոր են քան ռուսականները։ Ռ. Շ. Ա. Ընկերութիւնը կարողացաւ յաջող քայլերով յառաջանալ, եւ այժմ մեծապէս ծաղ-

կած է, շնորհիւ այն նիւթական եւ բարոյական օժանդակութեան, զոր գտած է եւ կը գտնէ կառավարութենէն, ուսկից դեռ մինչեւ հիմայ ալ տարեկան որոշ նպաստ մը (subside) կ'ընդունի։ Հետզհետէ ընդարձակելով իր գործունէութիւնն՝ այժմ ոչ միայն Սեւ ծովուն վրայ, այլ եւ ամբողջ Ռուսաստանի մեծագոյն ծովային առեւտրական ձեռնարկութիւնն է եղած։ Ընկերութիւնն այս օրս ունի 82 նաւ որոնք կը տիրեն Սեւ, Ազախու եւ Միջերկրական ծովերուն, եւ կանոնաւոր երթեւեկութիւն ունին նաեւ Հնդկաստանի եւ ծայրագոյն Արեւելքին հետ։

Այս ընկերութենէն վերջ կու գայ "Կամաւոր Նաւատորմիղը"։ Ինչպէս որ Ռ. Շ. Ա. ընկերութիւնը ծնունդ առած է Խրիմի պատերազմէն վերջը, այս "Կամաւոր Նաւատորմիղն" ալ ստեղծուած է վերջին ռուս-տաճկական պատերազմին ժամանակ։ 1878ին շատ վախ կար որ Ռուսաստան պատերազմի բռնուի Անգղիոյ հետ, ուստի Ռուսք մտածեցին շոգենաւերու այնպիսի շարք մը կազմակերպել՝ որ պատերազմի ժամանակ զրահաւորներու հետ միասին ծառայէ պատերազմական գործին, իսկ խաղաղութեան միջոցին առեւտրական յարաբերութեանց։ Այս նպատակաւ քանի մի ամսուան կարճ միջոցին մէջ ժողովուրդը 4 միլիոն ռուբլի նուիրեց, որով իսկոյն գնուեցան պատրաստական օտար շոգենաւեր։ Անգղիոյ հետ պատերազմը տեղի չունենալով՝ այս շոգենաւերը, որոնք "Կամաւոր Նաւատորմիղ" անունը կրեցին, գործածուեցան ռուսական բանակին ու մթերքը Սան-Ստեֆանոյէն Օդէսա փոխադրելու։ Այնուհետեւ "Կամաւոր Նաւատորմիղը" յատկացուեցաւ Օդէսայի եւ Վլադիվոստոկի ու Սախալինի մէջ մշտական յարաբերութիւնը պահպանելու, ճանապարհին հանդիպելով Հնդկաստան, Չինաստան եւ Ճափոն։ Թէ ծայրագոյն Արեւելքին եւ թէ Սեւ ծովուն ռուսական

նաւահանգիստներուն մէջ զօրաց եւ ռազմամթերքի փոխադրութիւնն այս շոգենաւերը կը կատարեն: “Կամաւոր Նաւատորմիղը՝„ Ռուսաց ծովային Պաշտօնէութեան վարչութեան տակն է, ունի վեց մեծ շոգենաւ: — Արեւելքէն դառնալուն՝ այս շոգենաւերը կը բեռցընեն թէյ, իսկ Հնդկաստանէն եւ Ճափոնէն՝ պղպեղ, կոկոյի եղ (huile de cocotier) եւ այլ տեղական բերքեր՝ Եւրոպական Ռուսաստանի համար:

Յետոյ կու գայ այստեղ “Սեւ Ծովեան-Դանուբեան„ ընկերութիւնը, որ կը գործէ Օդէսայի եւ Դանուբի ռուսական, բուլղարական, ռումանական եւ սերբիական նաւահանգիստներուն մէջ, տանելով ռուսական արդիւնաբերութիւնները՝ գլխաւորաբար ձկնեղէն, ալիւր, քարիւղ, հանքային իւղ, եւ ոգելից ըմպելի: — Աւստրիական շոգենաւերը հզօր մրցում ունին այս ընկերութեան հետ, որով եւ վնաս կը կրէր անշուշտ՝ եթէ կառավարութիւնը դրամական նպաստով չօգնէր:

Ասոնցմէ զատ այստեղ կը գործեն 8 ռուսական ընկերութիւնք եւ քանի մի մասնաւոր անհատներ, սակայն ասոնք ռուսական սահմաններէն դուրս չեն ելլեր: Իսկ օտար շոգենաւաց ընկերութիւններէն ուշադրութեան արժանի են հետեւեալները, որոնք իրենց սեպհական գործողութիւններն ունին այստեղ եւ կանոնաւոր երթեւեկութիւն կազմած են Օդէսայի եւ օտար ու Բալտիկ ծովուն ռուսական նաւահանգիստներուն մէջ:

Գաղղիոյ Messageries Maritimes հանրածանօթ ընկերութիւնը՝ Օդէսայի եւ Մարսիլիոյ մէջ: Florio-Rubattino՝ նոյնպէս մինչեւ Մարսիլիա: Աւստրիական Lloyd austro-ungarico՝ Օդէսայի եւ Աղեքսանդրիոյ ու Թրիեստի մէջ: Աւստրիական “Դանուբեան ընկերութիւնը՝. Օդէսայի եւ դանուբեան նաւահանգիստներուն մէջ: Դանիական “Միացեալ շոգենաւային ընկերութիւնը՝„

Սեւ եւ Բալտիկ ծովերուն նաւահանգիստներուն մէջ: Այս ընկերութիւնը թէեւ օտար է՝ բայց կը վայելէ այնպիսի արտօնութիւն մը՝ որ յատուկ է միայն ռուս. շոգենաւերուն: Այսպէս Պետերբուրգէն Օդէսա ուղղուած դանիական շոգենաւերը կու գան նախ Բաթում, Կոպէնհակն եւ Անտվերպն հանդիպելէն վերջը, եւ Բաթումէն կ՚անցնին Սեւաստոպոլ, Նովոռոսիսկ, Նիկոլայեվ եւ ապա կը մտնեն Օդէսա: Իսկ միւս օտար շոգենաւերն Օդէսա եկած ժամանակ՝ կարող են հանդիպիլ միայն Սեւաստոպոլ, Նիկոլայեվ եւ ապա Օդէսա: Անգղիական Trident ընկերութիւնը միայն բեռան շոգենաւեր կը գործածէ Օդէսայի, Կ. Պոլսոյ եւ Մարսիլիոյ մէջ: Այս յիշուածները կանոնաւորապէս եւ որոշեալ օրեր կ՚երթեւեկեն: Բայց կան բազմաթիւ ուրիշ օտար շոգենաւեր, որոնք թէեւ շատ յաճախ կու գան՝ բայց ոչ պարտաւորիչ կերպով, այլ այն ժամանակ միայն՝ երբ բեռ ունենան տալու կամ առնելու, կամ յատկապէս վարձուին Օդէսայի համար, որ շատ ատէպ կը պատահի:

Օդէսայի վաճառահանութիւնը մի միայն հացհատիկներու վրայ չ՚ամփոփուիր. այստեղ գործարանական արդիւնաբերութիւնն ալ մեծ տեղ կը գրաւէ, առաջին դիրք տալով անոր նաեւ այս մասին՝ Հարաւային Ռուսիոյ մէջ: Այս արդիւնաբերութիւնը տարեկան 100 միլիոն ֆրանքի կը հանի: — Գործարաններուն թիւն է՝ մեծ ու փոքր՝ մինչեւ 300, որոնց մէջ 9 հազարի չափ բանուոր կը գործածուին: Յիշենք գլխաւորներէն մէկ քանին:

Ամենէն կարեւորն է Բրոդսկի Հրէին շաքարի զտարանը, որուն շաքարն ամէն տեղ ծանօթ է լաւութեամբն: Այս շաքարը կ՚ուղարկուի Կովկաս, Պարսկաստան, եւ. ծայրագոյն Արեւելք: Այժմ 700էն աւելի գործաւոր կը բանեցընէ: Տարեկան արտադրութիւնը 12 միլիոն ռուբլի է:

Յետոյ կու գան ալիւրի աղօրիքն, որ տարեկան 3 միլիոն ռուբլիի ալիւր կը հանեն։ Գլխաւորներն են Վայնշտայն (Հրեայ), Ռոդոքանաքի (Յոյն) եւ Անատրա (Յոյն)։ Մեքենական գլխաւոր գործարան եւ ձուլարանն է՝ ծանօթ Բէլլինօ-Ֆէնտէրիխ, որ բովանդակ Ռուսիոյ մէջ համբաւ ունի։ Այստեղ կը պատրաստուին ամէն տեսակ մեքենաներ, թնդանօթներ, եւ կը շինուին շոգեկառքի վագոններ։ Գործարանին կից՝ հաստատուած է նաւարան, ուր կը նորոգուին եւ կը կառուցուին մեծ ու փոքր նաւեր։ — Ծխախոտի գործարաններ, որոնք ինչպէս ասինք՝ Հայոց ձեռքն են։ Կաշեղէնի, ներկի, չուանի եւ մոմի գործարաններ, եւ դարձեալ գարեջրոյ գործարաններ, որ նոյնպէս մեծ արտադրութիւն ունին։ Այս վերջիններուն մէջ իր շինութեամբն ու կազմակերպութեամբն առաջին տեղը կը գրաւէ Սանցըն-Բախէր։ Գարեջրոյ գործարաններն ունին իրենց պարտէզները. տէրերը գործնական մարդիկ են ինչպէս կ'երեւայ, որովհետեւ ժողովուրդը կու գայ կը լեցուի այնտեղ, ուր կը զբօսնու եւ միանգամայն մեծ քանակութեամբ գարեջուր կը սպառէ։

Շքեղ խանութներ կան այստեղ, թէ՛ եւրոպական, թէ՛ ռուսական եւ թէ՛ ասիական ամէն տեսակ ապրանքներով։ Բայց չմոռնամ ասել, որ այստեղ սաստիկ թանգութիւն կը տիրէ, ամենէն սուղն են բնակարաններն ու խանութները։ Օդեսա այս կողմէն ալ կը գերազանցէ ռուսական մայրաքաղաքները։

---

## ԻԸ.

## ՕԴԷՍԱՅԻ ԼՈԳԱՐԱՆՆԵՐԸ

Բաց ի իւր առեւտրական առաջնակարգ դիրքէն, մաքրութենէն ու գեղեցկութենէն, Օդէսա նշանաւոր է նաեւ իր լոգարաններովը, որոնք

այստեղ ծանօթ են լիման անուամբ. (ЛИМАНЪ — ծովախորշ) եւ հռչակուած են ոչ միայն բովանդակ Ռուսաստանի այլ եւ Եւրոպայի մէջ։ Ամէն տարի Ռուսիոյ բոլոր ծայրերէն հիւանդներ իրենց ցաւերուն բուժումը փնտռելու համար կը վազեն կու գան հոս մեծ բազմութեամբ, եւ ցանցառ չեն կատարեալ առողջանալու դէպքեր։

Լիմանները քաղաքէն դուրս են եւ 3 հատ են Անդրէեվսկի կամ Կուեալնիցկի, Խաջիբէյսկի եւ Սուխօյ (Չոր)։ Առաջին երկու խորշերը զուգահեռաբար ներս են մտած, նեղ եւ մանուածապատ կերպով։ Երկուքին մէջ գտնուած ցամաքը՝ բլրի ձեւով կը բարձրանայ եւ ծովուն մէջ խրելով հրուանդան մը կը ձեւացընէ, բայց եզերքը շատ բարձր չէ, այլ հազիւ 3—5 սաժէն։ Այստեղ ամբողջ ծովեզերքը կազմուած է խոշոր աւազէ, ուլոկնջի (moule, միդիա) յղկուած կտորներէ եւ կաւէ։

Այս լիմանները ոչ խորշ են իսկապէս, ոչ լիճ, որովհետեւ պարզապէս ծովուն մէկ մասը կը կազմեն, բայց ծովէն փոքր հողաշերտով բաժնուած։ Ծովուն ալիքներն ինչպէս կ'երեւայ՝ յառաջ խաղալով շարունակ այս եզերքին մէջ, հետզհետէ աւելի եւ աւելի թափանցեր են անոր ստորին մասերը։ Ալիքները ծովային աւազը բերեր լեցուցեր են ձորերուն երկու կողմն, եւ այս կերպով որոշ խաւեր են կազմեր, որոնք, հիմայ ալ միշտ աւելնալու վրայ են։ Այսպիսի երկու խաւեր մեծնալով՝ երկու կողմանէ իրարու մօտեցեր են եւ թումբ դառնալով, ցամաքի մէջ մտած ջրին առջեւը կտրեր են։ Թումբէն ներս մնացած ջուրը՝ այն տեղ ուր գետինը բարձր է եղեր եւ ջուրը ցած, հետզհետէ շոգիանալով՝ պակսեր եւ վերջապէս անհետացեր է. իսկ ուր որ հողը ցած էր եւ ջուրը խոր՝ այնտեղ ծովային ջուրը լիճ մնացեր է եւ ձեւացուցեր է այժմեան լիմանները։ Ուստի այս պատճառաւ լիման սառւածը թէեւ լիճ կը ձեւացընէ բայց ճշգագոյնս՝ ծովախորշ է միայն,

աւազային եւ կաւային թումբով ծովէն բաժնուած։ Անդրիեվսկի լիմանին մէջ այս ցամաք անջրպետը կամ թումբը 1½ քիլոմէտր տարածութիւն է միայն, իսկ Հաջիբէյի մէջ 4 քիլոմէտրը կ'անցնի։ Բայց ծովային ջուրն այս երկու լիմաններուն մէջ միեւնոյն հանգամանքը չունի։ Անդրիեվսկիի աղային մասն աւելի է քան միւսներունը։ Այս լիմանը՝ իր ջրի յատկութեամբը կը հաւասարեցընեն Եւրոպայի ծանօթ առողջարար ջրերուն, ինչպէս Բադըն-Բադընի, Սոդէնի, Էլմայի, Գալլէի, Կարլսբադի հետ եւն։

Լիմաններու մէջ բաղնիք անելու կերպն եւ աստիճանը բնականաբար պէտք է որ բացարձակապէս բժշկաց խորհրդով կատարուի. բայց աւելորդ չենք համարիր յիշել այստեղ այն հիւանդութիւններն, որոնց դէմ գլխաւորաբար կը գործածուին այս լոգարանները, եւ են՝ խոյլք (scrofules), յօդացաւ (rhumatisme), հնացած գաղղիական ախտ եւ այլն։

Այս լիմաններն ամառ ժամանակ այցելուներով կը լեցուին, մանաւանդ Կուեալնիցկի (Անդրիեվսկի) կոչուածը, ուր երբեմն մինչեւ 3 հազար ընտանիք կը հաւաքուին։ Երկաթուղին կէս ժամու մէջ կը բերէ ախտաւորներն Օդէսայէն այստեղ։ Ամարանոցները շարուած են լճին բոլորտիքը՝ բաւականութեամբ հովանաւորուած, եւ գլխաւորաբար Հրէից կը վերաբերին։ Գներն այստեղ՝ թէ սենեակներունը եւ թէ այլ պիտոյիցը՝ սաստիկ թանկ են, այս պատճառաւ ալ ամէնուն մատչելի չեն։ — Խորշը կամ լիճն՝ ինչպէս յիշեցինք՝ նեղ եւ երկար շերտի կը նմանի եւ խորութիւնն ալ մեծ չէ, 0, 30 մինչեւ 3, 0 մէտր։ Բնակութիւնները հաստատուած են գլխաւորաբար ձախ կողմն, որ աւելի մօտ է քաղաքին. իսկ աջ կողմը կատարեալ աղուհանք է, ուստի տարեկան 1—1½ միլիոն պուդ ծովային աղ կը հանուի։ Քաղաքն այստեղ գեղեցիկ հիւանդանոց մի ունի կառուցած, որու

սենեակներուն մէջ բաղնիքներ հաստատուած են, եւ ուր բերուած են թէ՛ ջուրը եւ թէ՛ ծովային ցեխը կամ կաւը՝ ստորերկրեայ մեծամեծ խողովակներով։ Հիւանդանոցին շուրջը զարդարուած է պարտէզով եւ հովանաւոր քէօշքերով։ Լողալու համար այնտեղի վճարքն է՝ Ա. կարգ 15 կոպէկ, Բ. կարգ 10 կոպէկ եւ աղքատներու համար 2 կոպէկ։ Առանձին բաժիններ կան արանց եւ կանանց համար։ Բաժնուած են իրարմէ նոյնպէս ջրի եւ ցեխի լոգարանները։

Հաջիբէյի լիմանը թէեւ չունի նոյն դիւրութիւնները, բայց նոյնպէս շատ կը յաճախուի. այստեղ շատ սիրուն է զբօսավայր այգին՝ ճոխ բուսականութեամբ եւ հսկայ ծառերով։

Ամենէն փոքր լիմանն է "Կլայն-Լիբէնթալսկի," որ ծովէն շատ նեղ շերտով մը միայն բաժնուած է եւ այս պատճառաւ ու ջրին որպիսութեամբն ալ միւսներէն կը զանազանի. Ջուրն աւելի հանդարտ է, շուտ կը տաքնայ եւ աղիութիւնն ալ պակաս է։

Այս լիմաններուն մէջ յատկապէս հիւանդներն են որ բաղնիք կ'անեն։ Բայց Օդեսայի նաւահանգիստը հրապուրիչ է նաեւ սովորական ծովային բաղնիք առնողներուն համար։ Ծովեզերաց վրայ, թէ՛ քաղաքին մէջ եւ թէ՛ յատկապէս քաղաքէն դուրս՝ մեծ, փոքր եւ միջին կոչուած ֆոնտաններու մէջ յատուկ լոգարաններ կան. որոնք թէ՛ դիրքով եւ թէ՛ երթեւեկութեան համար մեծ դիւրութիւններ կ'ընծայեն։ —

---

## ԻԲ.

## ԴԷՊԻ ՎԻԵՆՆԱ

Օրը կիրակի էր՝ երբ թողի Օդեսան։ Բարեկամիս միջնորդութեան շնորհիւ այն տօնական օրը յաջողեցայ visa առնել՛ տալ իմ անցագիրս Աւստրիական հիւպատոսարանին, եւ դիմեցի երկաթուղւոյ

կայարանը։ Կառքն արագ սահելով Պուշքինսքայա փողոցէն[1], որ քաղաքին ամենասիրուն փողոցներէն մէկն է, բերաւ զիս կայարան, որ նոյնպէս գեղեցիկ եւ շատ ընդարձակ շինութիւն է։ Գրանիտ քարն այստեղ ալ կ'իշխէ. մեծ դրան սանդուղքն ամբողջ գրանիտէ շինուած է։ Գաւիթը մօզայիկէ յատակ ունի եւ ուղեւորաց սրահները շատ սիրուն զարդարուած են։ Մի պակասութիւն միայն ունի, այն է որ իրենց ընդարձակութեան համեմատ բարձր չեն։

Օդէսայէն օրը 4 կառախումբ (train) կ'ելլէ, որոնց ամենէն արագն է ճեպընթացը։ Պէտք չունէի կամաց երթալու, ուստի ընտրեցի ճեպընթացը։ Երեկոյեան ժամը 9, 40ին խլացուցիչ սուլոցին շչիւնը մեր հրաժեշտն Օդէսային տուաւ, եւ կառախումբը շարժեցաւ յառաջ՝ վագոններու երկար շարքով մը բեռնաւորած, որոնց մէջ բազմութիւնը կ'եռար։ Դիպուածի բերմամբ՝ իմ նստած կառքիս մէջ 7 հոգի էինք միայն, եւ ամէնքս զատ զատ ազգութիւն կը ներկայացընէինք՝ Հայ, Յոյն, Գաղղիացի, Ռուս, Լեհ, եւն։ Կարճ ժամանակէն՝ մեր խօսակցութիւնն ընդհանուր եղաւ, եւ Գաղղիացին յաջողեցաւ իր վառվռուն խօսքերովը ամենուս ուշադրութիւնն իր կողմը դարձնել։

Հետզհետէ հեռացան մեզմէ՝ Օդէսա, իր նաւահանգիստը, ծովը, շրջակայքն, որոնց փոխարէն շոգեկառքը բացաւ մեր առջեւ լայնածաւալ արտեր ու դաշտեր, որոնց մէջէն բուռն ուժով յառաջ վազելէն եւ քանի մի երկրորդական կայարաններ հանդիպելէն վերջը, կանգ առինք Ռազդելնայա կայարանը։ Այստեղ մեր շոգեկառքին կենդանի բեռն անդամահատեցին։ Այս կայարանն՝ ինչպէս անունն

[1] Այս փողոցն յառաջագոյն Իտալեանն կը կոչուէր, բայց վերջերս Ռուսաց մեծ բանաստեղծին անունն է առեր, որովհետեւ Պուշկին նոյն փողոցին մէջ ապրեր է 1827ին։ Պուշկինի բնակարանը մինչեւ հիմայ ալ կայ, բայց բաւական հին է բնականաբար։

ալ ցոյց կու տայ (Ռոզդէլնայա = Բաժանողական) կը ծառայէ Կիեվ եւ Վոլոչիսկ դիմող շոգեկառքերն իրարմէ բաժնելու։

Մեր ուղեկիցներուն մէկ մասը իր վագոններով միասին մեզմէ բաժնուելէն վերջը՝ մեր ճեպընթացը թողուց Ռազդելնայան եւ նոր ուժով սկսաւ յառաջ դիմել։ Գիշերւան մնացած ժամանակը նուիրեցի քնոյ՝ եւ երբ հետեւեալ օրն առաւօտուն արթնցայ, մենք դարձեալ կը սրանայինք դաշտերու մէջէն։ Այս՝ Ռուսաստանի հարստութիւնը կազմող ընդարձակ դաշտավայրերը բոլորն ալ խնամքով մշակուած էին։ Յուլիս ամիս էր, եւ երկրագործները խումբ խումբ՝ իրենց ամբողջ աշնան եւ գարնան ցանքի արդիւնքը ձեռք բերելու պատրաստութիւններով էին զբաղած։ Ահագին տարածութեան վրայ ոչ մի բլուր եւ ոչ մի բարձրութիւն կը նշմարուէր, արտեր էին որ կը դիմաւորէին զմեզ շարունակ։ Նոյն օրը ժամը 10 անցած էր՝ երբ հասանք Պոդվոլոչիսկ որ ռուսական սահմանին վրայ փոքր գիւղ է, եւ ապա մտանք աւստրիական հողն եւ կանգ առինք Վոլոչիսկ։ Այստեղ հրաւիրեցին զմեզ թողնել ռուսական շոգեկառքն եւ մենք մեր իրեղէններուն հետ՝ առաջնորդուեցանք աւստրիական մաքսատունը։ Մաքսատան պաշտօնատեարքն ուշադրութեամբ կը քննէին իրեղէնները։ Երբ կարգն ինձ եկաւ, ես շուտ ազատեցայ, որովհետեւ իմ իրեղէններս բոլորովին անմեղ էին։ Աւստրիական պաշտօնատէրն անցագիրս առաւ քննեց, իրենց հիւպատոսի visaն տեսաւ. ապա nach Wien? (դէպ ի Վիե՞ննա)՝ հարցուց, որուն՝ երկար Ja (այո) մը պատասխանելէս վերջը, անցանգիրս գնաց ներսի սենեակն, եւ այնտեղ՝ երեւի արձանագրութեան ենթարկուելէն վերջը կրկին դարձաւ։ — Այս կայարանիս մէջ զանազան հրեայ լումայափոխներ իրենց ծառայութիւնը կ՚առաջարկէին ռուսական դրամն աւստրիականի վերածելու։ Կայարանի դրամարկղն

ալ Վիեննայի կամ այլ տեղերու համար տոմսակներ կու տար։ Ես այն երկու գործն ալ Օդեսա կատարած՝ եւ ոչ մէկուն պէտք ունէի այնտեղ. ամբողջ անցքին համար Օդեսայէն մինչեւ Վիեննա՝ տոմսակի գրքոյկն առած էի Օդեսայի կայարանին մէջ, վճարելով 14 րուբլի 62 կպ. ռուսական եւ 30 գուլտըն 17 կր. աւստրիական փող (երկրորդ կարգի համար)։ Երբ այս բոլոր գործողութեանց վերջն եկաւ, անցանք աւստրիական շոգեկառքն, որ կայարանի առջեւը պատրաստ մեզի կը սպասէր. իրեղէններս տեղաւորելէն վերջն իսկոյն այց ելայ շոգեկառքին ճաշարան-վագոնին (որ կը պակսէր ռուսական ճեպընթացին մէջ)։ Շոգեկառքը սուլեց ուժգին եւ ձեռք առաւ Կրակաւի ճանապարհը։ Մենք արդէն բոլորովին հեռացեր էինք ռուսական սահմանէն։



# ՑԱՆԿ ԳԼԽՈՑ





# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

Ա. Գալէմքեարեան Հ. Գրիգորիս Վ., Ուսումնասիրութիւնք Լեհահայոց դատաստանագրոյն. 1. Պիշոֆ, Լեհահայոց հին իրաւունքը: 2. Գոլէր. Իրաւունք Հայոց: 1890: 8° Երես՝ 85+59: Ֆր. 1.25

Բ. Մէնէվիշեան Հ. Գաբրիէլ, Ազգաբանութիւն ազնուական զարմին Տիւզեանց: 1890: 8° Երես՝ 50 (պատկերազարդ:) Ֆր. 1.—

Գ. Տաշեան Հ. Յակովբոս, Ագաթանգեղոս առ Գէորգայ ասորի եպիսկոպոսին եւ ուսումնասիրութիւն Ագաթանգեղեայ գրոց: 1891: 8° Երես՝ ԺԱ+159: Ֆր. 1.25

Դ. Դեմետրիոս Տաճի, Արեւելեան Հայք ի Պուքովինա: Թրգմ. Հ. Գ. Վ. Գալէմքեարեան: 1891: 8° Երես՝ 79: Ֆր. —.85

Ե. Տաշեան Հ. Յակովբոս Վ., Ուսումնասիրութիւնք Ստոյն-Կալիսթենեայ Վարուց Աղեքսանդրի: 1892: 8' Երես՝ Դ+272: Ֆր. 3.—

Զ. Ալպէր Տըվլէ եւ Գ. Փիսոն, Ուղեւորութիւն ի Փոքր Ասիա: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1892: 8° Երես՝ 82: Ֆր. 1.—

Է. Մառ Նիկ., Ամառնային ուղեւորութիւնից դէպ ի Հայս: Թրգմ. Ոնոփրիոս Անոփեան: 1892: 8° Երես՝ 89: Ֆր. 1.25

Ը. Գարիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ: Հտ. Ա.: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1893: 8° Երես՝ Ժ+51: Ֆր. 1.—

Թ. Գալէմքեարեան Հ. Գրիգորիս Վ., Պատմութիւն հայ լրագրութեան: Հտ. Ա. 1794—1860: 1893: 8° Երես՝ 232 (Լուսանկարով): Ֆր. 2.50

Ժ. Կոնիբիր Փր. Կ., Քննութիւնք գրոց Դաւթի Անյաղթի: Թրգմ. եւ յաւ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1893: 8' Երես՝ Է+92: Ֆր. 1.25

ԺԱ. Գովրիկեան Հ. Գրիգոր Վ., Հայք յՕղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ 1680—1779: 1893: 8 Երես՝ Ժ+533 (1 գրնկատիպ.): Ֆր. 4.50

ԾԲ. Խաչատեան Գր., Զենոբ Գլակ. Համեմատական ուսումնասիրութիւն: 1893: 8° Երես՝ 78: Ֆր. 1.—

ԾԳ. Տէր-Մովսիսեան Փարսադան, Հայ գիւղական տունը: Թրգմ. Հ. Բ. Վ. Պիլէզիկճեան: 1894: 8° Երես՝ 103 (6 տախտակ՝ 55 պատկերով): Ֆր. 2.—

ԾԴ. Գարիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ. Հտ. Բ. կամ Յաւելուած: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1894: 8° Երես՝ ԾԱ+43: Ֆր. 1.—

ԾԵ. Տաշեան Հ. Յ. Վ., Ուսումնասիրութիւնք հայերէն փոխառեալ բառից: Ա. Հ. Հիւպշման, Սեմական փոխառեալ բառեր հին հայերէնի մէջ: Բ. Փրոնքէլման Կ., Յունական փոխառեալ բառեր հայերէնի մէջ: Գ. Հ. Հիւպշման, Հայկական Յատուկ անուանք: 1894: 8° Երես՝ 9+145: Ֆր. 2.—

ԾԶ. Տաշեան Հ. Յակովբոս Վ., Մատենագրական մանր ուսումնասիրութիւնք: Հտ. Ա. Ա—Զ: 1895: 3° Երես՝ ԾԲ+294: Ֆր. 3.60

ԾԷ. Տաշեան Հ. Յակովբոս Վ., Հայկական աշխատասիրութիւնք հայագէտ Պ. Փէթթէրի, ի մի ամփոփուած եւ թարգմանուած հանդերձ ծանօթութեամբք: 1895: 8° Երես՝ 202: Ֆր. 2.50

ԾԸ. Տիւրեան Կ., Սեւ ծովու ռուսական եզերքը: 1895: 8° Երես՝ 192: Ֆր. 2.—



